ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

Galēmk'earean, Grigoris

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Patmut'iwn hay lragrut'ean

# ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ

**Ի ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԸ**

---

*ՀԱՏՈՐ Ա.*

*Ա. Շրջան. ի սկզբանէ հայ լրագրութեան (1794) մինչեւ 1840: Բ. Շրջան. 1840էն մինչեւ 1860:*

---

*(Մէկ լուսատիպ պատկերով:)*

---

ԳՐԵՑ

**Հ. ԳՐԻԳՈՐԻՍ Վ. ԳԱԼԷՄՔԵԱՐԵԱՆ**

**ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ**

**ՎԻԵՆՆԱ**

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ**

**1893.**

ԱՌԹԻՒ

# ՀԱՐԻՒՐԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԻՆԻ

## ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ

ՅԱՄԻՆ 1894 ՀՈԿՏԵՄԲԵՐ 16/28

ՆՈՒԻՐԷ

## ՀԱՅ ԽՄԲԱԳԻՐՆԵՐՈՒՆ

*ՀԵՂԻՆԱԿԸ*

# ԱԶԴ

Գործս Հանդէս Ամսօրեայ լրագրին մէջ սկսաւ հրատարակուիլ 1887—90 տարիներու մէջ: Այնուհետեւ արտաքին զբաղմունքներու պատճառաւ հարկ եղաւ ընդհատել, մանաւանդ որ շատ լրագիրներու տարեկաններ ձեռք բերել չկարենալով՝ կը դժուարանար գործը: Քիչ մ՚ազատ ժամանակ գտնելով՝ այսօր կարող եղայ Ա. եւ Բ. Շրջանները մէկ հատորի մէջ հրատարակել:

Այս պարագաններն անշուշտ կ՚արդարացընեն տպագրական թերութիւնները, որոնց ուղղութեան համար "Ուղղելիք եւ Յաւելլիք„ հարկ համարեցայ դնել. այս մասը ներողամիտ ընթերցողին ուշադրութեան կը յանձնեմ:

Առաջիկայ 1894ին Հոկտ. 16/28ին հայ լրագրութեան 100ամեայ Յոբելեանն ըլլալով՝ գործս նուիրեցի Հայ խմբագիրներուն, իբրեւ մասնագիտաց, որոնց թերեւս չնչին ծառայութիւն մը կարողանայ մատուցանել:

Եթէ այս եւ յաջորդ շրջաններու մէջ յիշուած լրագիրներու ամբողջական տարիներ անձամբ տեսնելու բախտ ունեցայ, զայն կը պարտիմ կրօնակից Վ. Հ. Եղիշէ Գաֆթանեան Վ.ին, որուն երկարատեւ ջանիւն Միաբանութեանս մատենադարանին հայ լրագրաց ժողովածոյքն այսօր՝ որչափ գիտեմ՝ մի միակ հարուստն եւ գրեթէ ամբողջացած է:

Յաջորդ գլխաւոր մասն, որուն ամբողջութեան պէտք եղած ատաղձն ըստ մասին կը պակսի դժբախտաբար, պիտի ջանամ՝ եթէ կարելի ըլլայ, մինչեւ Յոբելեան հասցընել:

Վիեննա, 30/18 Յունիս 1893:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ՑԱՆԿ





# ԱԶԴԱՐԱՐ

ԹԻՐԱՑ ԱՄՍՈՑ

1794

---

Բարեպաշտ Պարոնաց և Մաքրակենցաղ Տիկնաց } Մադրասու Հայոց։



կատարեալ իմն է եթէ զօժանդակութիւն տպարանին՝ և եթէ բարեպէս յառաջ եկեալ ուսումնասիրաց, յարմար վարկայ նոցին իւրեանց առաջի ձեռամբ ազդարարութե, զխոկմունս նաւրդնեսն, մի տպեցմամբ ՚ի լոյս ածել զամսօրեկ մի յամսեան մերքնոց ամսոյ, հանապազ ազդարարօղ յորմէ իմանալի լինելոցէ ընթերցողաց, ծայրաքաղ անցքն նոյնոյ ամսոյ, եթէ ՚ի վաճառական կաղէթեաց, եթէ ՚ի զանազան քաղաքաց, և եթէ այլոց զանազան գրոց, նաև բանք հարկաւորք և քաղցրալուրք, և ՚ի վեր ընթացին ժամանակին, զօրացոյց մի հետևեալ ամսոյ, պարունակեալ ՚ի նմա կամս սրբոց, և զաւուրս ծննդեան նոցին լրման լուսնոյ և այլն։

Ամէ

ԱՆԴՐԱՆԻԿ ԼՐԱԳԻՐ ՀԱՅՈՑ

ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ

Ի ՄԱԴՐԱՍ 1794—6

Ի

Տ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՔՀ. ՇՄԱՒՈՆԵԱՆԷ

(Կիսով չափ պզտիկցուած։)

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Հայ լրագրութեան հիմնական եւ քննական պատմութիւնը գրել այնպէս ժամավաճառ գործ մըն է եւ կապեալ ներքին եւ արտաքին դժուարութեամբք, որ զարմանալի չերեւցաւ մեզի՝ երբ մինչեւ ցայսօր յարգի գրասէր գիտնոց ձեռնարկու մը չտեսանք։ Ապաքէն սկզբնական փորձեր կամ հարեւանցի ցանկեր ազգային լրագրաց չեն պակսած. սակայն՝ ինչպէս պիտի տեսնենք, այն փորձերն ալ այնչափ հին են ժամանակաւ, որ դարուս կէսէն ասդին հրատարակուած լրագրաց՝ — կրնանք ըսել — ոսկեդարեան ժամանակին չեն հասնիր, եւ նոյն իսկ անոնց բովանդակութիւնը չէ բոլորովին անպակաս։ Իսկ ցանկերն ալ այնպէս համառօտ են եւ վերիվերոյ՝ որ բազմատենչիկ մտաց ոչինչ սնունդ կու տան։ Ո՛րչափ ատեն է՝ որ ազգային լրագրաց անգին թերթերը թերեւս գրատանց մութ անկիւնները փոշւոյ տակ թաղեալ կը սպասեն՝ որ արդի գրականութեան սիրովը վառեալ գրիչ մը հանէ զիրենք մոռացութեան անյատակ անդունդէն։ Թերեւս քանի քանի անգամ մեծամեծ յոյսերով սնան՝ երբ կարծեցին թէ Հայոց Մատենագրութեան հետամուտ եղողները կը մօտենան իրենց ալ, եւ կը քննեն հիմնովին. սակայն ի զուր եւ ընդ վայր։ Հայոց Մատենագրութեան այն էջերն ալ՝ որ ուրիշ կողմանէ կրնան կա-

տարեալ կոչուիլ եւ մեծամեծ քրտանց արդիւնք համարուիլ, լրագրութեան մասին չեն այնպէս ամբողջական, եւ հետաքրքիր ընթերցողի մը յագուրդ չեն տար։

Այս երեւոյթն անշուշտ ունի իւր պատճառներն։ — Կարծենք չենք սխալիր՝ եթէ հաստատենք թէ ասիկայ կրկին պատճառէ յառաջ կրնայ գալ։ Նախ՝ այն արհամարհանքէն՝ զոր ունին ոչ սակաւք ի գիտնոց եւ ի ժողովրդականաց ընդդէմ լրագրութեան։ Լրագրութիւնն ընդհանրապէս անա[illegible]՝ եւ աւելորդ դրամածախութեան եւ ժամավաճառութեան աղբիւր կը նկատեն, (թերեւս ի մասնականին՝ իրաւամբ[1],) եւ կը ջղատեն շատ անգամ անձնանուէր գրիչներն՝ որ ճանչնալով հրապարակագրութեան ասպարիզին ընտիր եւ գովելի որսերը, կը նուիրեն իիրենք զիրենք շատ անգամ ցմահ։ Արդ, երբ ընդհանրութիւնն ընդհանրապէս այսպէս կը նկատէ արդի լրագրութիւնն, ո՞վ ինքզինք պիտի որոշէ ծախել ընդ վայր իւր անխոնջ փոյթն՝ հին ու մգլոտած լրագիրներ թերթելու. ո՞վ պիտի յանձն առնու ժամանակախաղաղ աղբիւրներն որոնելու գտնելու այն հեղեղներուն՝ որոնց այսօրուան դիզադէզ ալեաց ցածնուլն ու զնստելը թերեւս հաճութեամբ կ՚ու–

[1] Լրագրաց լաւութեան եւ անպիտանութեան մէջ ընտրութիւն ընելը կարեւոր է եւ օգտակար։ Ընտիր լրագիր մը Արիստոտէլ է Աղեքսանդր ըլլալ ուզողին, անպիտան մը՝ օդ փամփշտի համար։

զեն շատերը տեսնել։ Արդէք նոր լրագիրները՝ եւ ոչ վերիվերոյ կ՚ուզեն ընթեռնուլ, եւ միթէ հինե՞րն ուսման նիւթ պիտի ընեն։ — Ցիմարական խորհուրդ։

Այս երեւոյթին երկրորդ՝ բայց գլխաւոր պատճառն է բովանդակ գործոյն դժուարութիւնը. դժուարութիւն՝ զոր փորձառուն միայն կրնայ ըմբռնել։ Գիտութեան ուրիշ ամէն ճիւղերուն համար ունինք փոքր ի շատէ գոհացուցիչ ազգային աշխատութիւններ, իսկ օտարազգի՝ անթիւ անհամար. որոնք ամէնքն որեւէ ձեռնարկուի կրնան սքանչելի երէ ըլլալ։ Իսկ ազգային լրագրութեան մասին տրուած ցիր ու փայրափայ յիշատակութիւններն՝ ոչ թէ օգնութիւն կը մատուցանեն հայ լրագրութեան պատմագրութեան ձեռնարկողին, այլ մանաւանդ աշխատութիւնը կը յաւելուն. վասն զի հարկ է որոնել ամէն մէկը մինչեւ ցխղըքայս անգամ, թէեւ ոչինչ նոր գտնես։ Ո՞ւր թողունք հայ լրագրութեան պատմութեաննիւթոյն մեծանիստ տարածութիւնն, եւ քրտնաջան վաստակն՝ որ հարկաւոր է նոյն նիւթն սպառելու։ Պէտք է հազարաւոր թերթերը մի առ թերթել, հատորներն իրարու վրայ բարդել. եւ եթէ հարկ չըլլայ բովանդակն ընթեռնուլ, գէթ պէտք է կարեւոր մասունքն աչքէ անցընել, մօտք կշռել բովանդակութիւնը, խմբագրին տուած ծանօթութիւնները լոտեսել, գործակցաց անունը, լրագրին լեզուն՝ որ

մտադրութեան արժանի կէտերէն է, աճն եւ այլն ուշի ուշով դիտել: Եւ երանի՜ թէ կարենայիր ուզած նիւթդ՝ լրագիրդ կամ հատորդ դիւրաւ գտնել. շատ անգամ ամէն աշխատութիւն ալ ի դերեւ կ'ելլէ. շատ անգամ հարկ կ'ըլլայ անձկալի լրագրի մ'այս ինչ կամ այն տարին տեսնելով շատանալ, եւ մնացածը թուաբանական եւ փիլիսոփայական հաշիւներով գտնել: Շատ անգամ ալ ձեռքդ այնպիսի թիւ մը կամ թերթ կ'իյնայ, զոր բիւր անգամ դարձադարձ ընելէն ետեւ՝ կը ստիպուիս յուսահատ դնել ի միակողմն. Իսկ եթէ լրագրի մը միայն անունը գտնես, բայց ոչ զինք տեսնես եւ ոչ տեղէ մը վրան տեղեկութիւն առնուս, վհատութիւն անգամ վրադ կու գայ: Թո՛ղ եւ զայն՝ որ խմբագրին եւ գործակցաց անունը շատ անգամ նշանակուած չես գտներ, եւ կամ այնպիսի կամայական նշաններով՝ զոր առեղծուըն հրաշալիք է: Սակայն սոյն իսկ իւրաքանչիւր հատուածին կամ լրագրոյն հեղինակը ճանչնալ՝ նոյն հատուածին կամ լրագրոյն արժէքը փոքր ի շատէ կ'որոշէ:

Ասոնք են, կը կարծենք, պատճառներն որոնք ցայսօր խափան եղան ազգային լրագրութեան պատմագրութեան: — Սակայն ներուի դիտողութիւն մ'ալ: Ցարգդ ընթերցողս երբ ցայս վայր տողուած տողերն ընթերցաւ՝ անշուշտ ըսաւ մտօք, թերեւս բերնով ալ, որ դժուարութիւնները կը ստուարացուին, որպէս զի գոր-

ծոյն արժէք տրուի։ Մենք աղաւաղէմ անպա-
տրուակ կ՚ըսենք. Ոչ այնպէս. դժուարութիւն-
ներն ակնտեսի կը ցուցընենք, որպէս զի նախ՝
ազգային գիտնականաց յայսմ մասին անփու-
թութիւնն արդարացընենք, երկրորդ՝ մեր եր-
կասիրութեան համարը տանք՝ որ սովորաբար կը
սպասուի որեւէ հեղինակէ, եւ երրորդ՝ կարող
ըլլանք համարձակ անգիտութիւն խոստովանիլ
եւ դիւրաւ ներումն գտնել, երբ մենք զմեզ ալ
երբեմն երբեմն այս դժուարութեանց տակ ընկ-
ճած տեսնենք։ Մենք ալ արդարեւ ի սկզբան
զարհուրեցանք երբ այս խորհուրդը մեր միտքն
ինկաւ. տեսանք եւ զգացինք մենք ալ այդ
դժուարութիւններն՝ որոնք աւելագոյն աճեցան
որչափ յաղթել ճգնեցանք, եւ կը վհատէինք
միշտ եւ քանիցս թէ աչաց առջեւ կը տեսնէինք
գրեթէ միադարեան՝ բայց ըստ բաւականի ընդ-
արձակ շրջան մը, յորում աչուընիս շուրջ ար-
ձակած ամենայնի մտադիր ըլլալով՝ ընթանալ կը
դիտէինք։ Գիտենք մենք ալ թէ որչափ եւ ճգնինք՝
դժուարաւ պիտի կարենանք ամենայն յաջողու-
թեամբ հանիլ այն գաղափարականին՝ զոր մեր
տկար մտաց անձուկ շրջանին մէջ գծած ենք.
սակայն կը մխիթարուինք եթէ կարենանք հասա-
րակութեան մտաց մէջ լրագրութեան եւ ի մաս-
նաւորի՝ ազգային լրագրութեան ըստ կարի գա-
ղափարը նկարել, զարթուցանել սէր եւ յար-
գութիւն առ այն, եւ կամ մեր գիտնոց մտա-

դրութիւնը գրգռել սա Հայրենի ագարակին վրայ, եւ այս ըլլայ մեր տաժանելի վաստակոց Հատուցումը։

---

Եթէ ուզենք Հայ լրագրութեան պատմութեան դռներն յանկարծ բանալ եւ առանց նախնական կարեւոր տեղեկութիւններ տալու՝ առաջնորդել ըստ բաւականի մթին եւ լայնածաւալ աշխարհ մը, կարծենք լաւ առաջնորդ չենք ըլլար։ Անոր համար պատշաճ կ'երեւայ նախ պատրաստողական ճամբէ մը տանիլ, ճառելով հոս՝ 1. ընդհանրապէս լրագրութեան, եւ լրագրութեան պատմութեան վրայ, 2. Հայ լրագրութեան աղբերաց վրայ, եւ 3. Հայ լրագրութեան պատմութեան բաժանման վրայ։ Տեսնենք կարգաւ։

## Ա.

### *Լրագրութիւն եւ պատմութիւն լրագրութեան:*

Լրագրութիւնն ընդհանրապէս իւր բազմոստեան ճիւղերովն՝ իբրեւ մի միակ գործարանի պէսպէս եւ ամբողջացուցիչ կազմածներովն ամէն օր, ամէն շաբաթ, ամէն ամիս մեր առջեւ կ'ելլէ, եւ կը նկարէ ժամանակն հանդերձ իւր բովանդակութեամբը։ Լրագրութիւնն առօրեայ անձնաքննութիւն է՝ որուն կ'ենթարկէ ժամանակն ինքնին իւր բովանդակութիւնը։ Լրագրութիւնն յիշատակագիրք է, որուն մէջ ժամանակն իւր վայրկենական փոփոխումն ալ կը նշանակէ։

Եւ ինչպէս որ անձնական յիշատակարանաց մէջ կը տեսնենք՝ որ ըստ փոփոխել տրամադրութեանց կը փոխուի նաեւ անձնական համոզումը, հակասութիւնք կը բազմանան, եւ ճշմարիտն ու սուտն իրարու կը հիւսուին, նոյնպէս նաեւ լրագրութեան մէջ մարդկային փոփոխականութեան լուսանկար պատկերը կը տեսնուի։ Անոր համար ալ լրագրութեան մէջ՝ նոյն իսկ մեր այս կաղ եւ փոփոխական բնութեան պատճառաւ, իւրաքանչիւր ժամանակին գաղտնի ջղերը, ծածկեալ երակներն, ազգի մը բնաւորութիւնը, ներքին ու արտաքին կեանքը, մտաւոր զարգացման աստիճանն, ուրիշ ազգաց նկատմամբ ունեցած դիրքը տիեզերական ամբողջութեան մէջ, եւ այլն, իբրեւ ի հայելւոջ յայտնապէս կը տեսնուի։

Այո, լրագրութեան մէջ ժամանակը քաղցր կը նիրհէ, եւ եթէ խուզարկու աչք մ'իրեն նայի, ինքն անձամբ կը պատմէ իւր առաւելութիւններն ու թերութիւնները, մոլութիւններն ու առաքինութիւնները, յառաջադիմութիւնն ու յետախաղացութիւնը...։ Լրագրութիւնն իւր բիւրաւոր ձեռօքն հարստին ու աղքատին, գիտնոյն եւ տգիտին, հեռաւորին եւ մերձաւորին մտաւոր բարիք կը բաշխէ։ Լրագրութիւնն յառաջադիմութեան նշան կու տայ, ճամբան կը ցուցընէ, կ'առաջնորդէ, եւ այս՝ կը պահանջուի իրմէ։ Լրագրութիւնն է ընտիր պարտիզպան մը՝ որ պարտական է ժամանակին ընտիր սերմեր ցա-

նել ժողովրդեան սրտին վրայ՝ որ միշտ դիւրազգած է լրագրութեան ձայնին, եւ ի ժամանակի իւրում ընտիր պտուղներ յառաջ բերել։

Այս է ահաւասիկ լրագրութեան գաղափարն ընդհանրապէս։ Սակայն լրագրութիւնը միշտ նոյն գունով մեր առջեւ չ՚ելլեր։ Լրագրութիւնը կը ճանչնայ մարդկային ազգին պիտոյքն, եւ որովհետեւ ինք կոչուած է նոյն պիտոյից դարման տանիլ, կը զանազանէ իւր մէջ մի միակ մեքենայի զատ զատ մասեր՝ այլեւայլ անուանց տակ։ Իբրեւ գիտնական, իբրեւ քաղաքական, իբրեւ արուեստական, իբրեւ ընտանեկան եւ այլ բազմագունեան զգեստուց տակ կը ներկայանայ մեզի։

Լրագրութեան այս պէսպէս տեսակները կրնանք երկուքի վերածել, այն է՝ ուսումնական եւ քաղաքական։ Այս երկուքն ալ օգտակար նաեւ անհրաժեշտ է մարդկային ազգին արդի վիճակին, եւ այս հարկաւորութիւնն իսկ ծնած է զանոնք. եւ եթէ իրարու թեւիթեւ յառաջանան, փոխանակաւ ձեռնտու կ՚ըլլան իրենց յառաջադիր վախճանին հասնելու։ Վասն զի մարդկային ազգն ըստ իմիք երկակենցաղ արարած է։ Ինչպէս որ գլխաւորաբար երկու տարր մեր մթնոլորտը կը կազմէ, նոյնպէս քաղաքականութիւն եւ ուսումնականութիւն, գործնական եւ տեսական կեանք ի միասին, ազգաց կենաց օդն է, եւ կրնայ ըսուիլ թէ ա՛յն ազգերը միայն

կրնան իրապէս իրենց գոյութեան եւ կենդանութեան վրայ պարծիլ, որոնք հաւասարապէս այս երկու մթնոլորտի մէջ կ'ապրին։ Ազգ մը՝ որ քաղաքականութիւն ունի, ունի նաեւ ուսումնականութիւն, նոյնպէս ընդ հակառակն։ Անոր համար ով որ այս երկու տարրներն իրարմէ կ'ուզէ անջատել, ազգային գոյութեան եւ կենդանութեան հիմը խախտելու վտանգի մէջ կը դնէ։ Եւ այս պատճառաւ՝ ինչպէս ազգաց կենաց յայտարարն է ըսինք քաղաքականութիւն եւ ուսումնականութիւն, նոյնպէս լրագրութեան կենաց նշանները են սոյն երկուքը։ Քաղաքական լրագիրը՝ գործնականն է ուսումնականին. ուսումնականը՝ տեսականն է քաղաքականին։

Անոր համար զարմանք չէ՝ երբ կը տեսնենք որ բովանդակ լրագրութեան մէջէն անոնք միայն իրապէս կենդանի են, եւ զիրենք կենդանի պիտի պահէ հասարակաց շահն, որոնք ի մերձուստ կամ ի հեռուստ, յիշատակելով կամ խորհրդածելով, կռուելով կամ հաւանելով՝ արդի ժամանակիս քաղաքական վիճակին վրայ կը խօսին, ամենօրեայ քաղաքական պատահարներ կը ծանուցանեն։ Մնացեալ լրագրութիւնն անկենդան կ'երեւայ, եւ հասարակօրէն կենաց պարէն շատ նուազ կը գտնէ, մանաւանդ այն ազգաց քով՝ որոնց մէջ բարձրագոյն գիտութիւնք տակաւին մուտ չեն գտած, ինչպէս մեր մէջ։ Վասն զի քաղաքականութիւնն այնպէս մարդկային ազգին շահերուն գլուխը

կեցած է, որ Նաեւ Հարեւանցի դիտողին այնպէս կ'երեւայ, թէ պետութեանց բովանդակ կռիւն եւ քաղաքական խնդիրները կարծես ի Հաստատութիւն եւ ի Նպաստ քաղաքական լրագրաց ըլլան։ Անոր Համար քաղաքական իշխանութիւնն ալ ակնածութիւն, կամ ճշդագոյն՝ երկիւղ մ'ունի ամէն՝ բայց մանաւանդ քաղաքական լրագրութենէ, եւ ամենայն արթնութեամբ Հսկելով՝ կը ջանայ յիւր կողմն շաՀել։

Յայտնի է ուրեմն, որ ուսումնական եւ քաղաքական ժողովրդեան մ'աչքն ու յոյսն ալ լրագրութեան վրայ ըլլայ։ Ժողովուրդն զլրագրութիւնն իւր բաղձանաց թարգման ընտրած է, մանաւանդ այն տեղերն ուր բաղձանքներն յայտնել չի ներեր օրէնքը։ Ժողովուրդն զլրագրութիւնն երեսփոխան անուանած է, որ պաշտպան ըլլայ իրեն միշտ թէ ժխտականապէս եւ թէ դրապէս, որ ջանայ իշխանին եւ Հպատակին, մեծամեծաց եւ ռամկին մէջ եղած անջրպետը միաւորելու եւ կապ ըլլալու երկակողմանի օգնութեան, վստաՀութեան եւ միաբանութեան։

Այսպէս պետութիւնք կը դողան լրագրութենէն. այսպէս ժողովուրդք կը յուսան լրագրութենէն. եւ երկուքն ալ երկիւղիւ եւ յուսով կեանք կու տան լրագրութեան եւ ի կենդանութեան կը պաՀեն։

— Մինչեւ ցայս վայր ըսուածներն պտուղ մը կը ծնանին լրագրութեան։ Լրագրութիւնը

պարտական է իւր գոյնն, իւր բովանդակութիւնն, իւր զօրութիւնն, իւր վախճանն ըստ կարի բացատրել, եւ ոմանց յուսոյն այլոց երկիւղին կատարեալ տեղեկութիւն տալ իւր ինքնաճանաչութեան վրայ, եւ միշտ հաւատարիմ մնալ հաստատութեամբ իւր սկզբանցն՝ երբ ուղիղ են։ Լրագրութիւնը պարտական է ժողովրդեան առջեւ դնել որ ինչ օգտակար է անոր մտաւոր եւ նիւթական զարգացման, եւ խորշիլ ու խորշեցընել յամենայնէ որ վնասակար է։ Լրագրութիւնը պարտական է պարարել ժողովրդեան միտքն ու սիրտն՝ որ ամենայն ինչ կը սպասէ լրագրութենէ, գիտնական կամ քաղաքական ստոյգ եւ պատշաճ տեղեկութիւններով, խորշելով միշտ անձնական կռիւներէ, գիշերուան ու ցորեկուան երազներ պատմելէ, կողմնական տեսութիւններէ, կրից թելադրութենէ, եւ այլն։

Անոր համար անհրաժեշտ հարկ է լրագրութեան՝ իւր անցեալ հասակն աչաց առջեւ ունենալ, եւ այն ատեն կրնայ իւր ներկայն ու ապագայն ալ իմանալ։ Վասն զի անցելոյն մէջ բովանդակուած է թէ ներկայի եւ թէ ապագայի բողբոջը։ Լրագրութիւնն եթէ կ'ուզէ ժամանակիս նեղութեանց, բարեկամաց եւ թշնամեաց յարձակմանց դէմ կռուելով՝ իւր ճամբէն անխոտոր գնալ, ինք զինք յապահովի ունել, պէտք է որ իւր անցեալը ներկայացընէ առջեւն, որպէս զի այն ճամբէն զոր ցայն ժամ ընթացաւ, կարե-

նայ որոշել իւր արդի վիճակն, որոշել ինչպէս նաեւ այն ճամբան՝ զոր ապագային մէջ պիտի ընթանայ։ Լրագրութիւնն իւր անցեալ պատմութեան մէջ կը տեսնէ իրեր, որմէ կը հետեւցընէ իրեն օրէնքներ՝ որոնց խմբագիրք եւ գործակիցք պիտի հետեւին։ — Ահաւասիկ հասանք լրագրութեան պատմութեան։

— Երբ որ հին լրագրաց դեղնցած տարեշըրջանները ձեռուընիս կ՚առնունք, կը մտնենք մեռելոց աշխարհ մը, նոր Պոմպէի մը, ուր ի վաղուց անհետացած սերունդ մը յանկարծօրէն՝ իբր թէ ժամանակի անիւն յետս շրջել կրցած ըլլանք, իւր առօրեայ արտաքին եւ առտնին կենաց խորքն ուղղակի կը պարզէ մեր առջեւ։ Եւ ինչպէս հողախաղաղ Պոմպէի քաղքէն սափորներ եւ օծանելեաց անօթներ կը պեղեն կը հանեն, որոնք իրենց բովանդակութեան հոտը ցայժմ պահած են, նոյնպէս հին լրագրութիւնը թերթած ժամանակ կը շնչէ մեր երեսն այն զարմանալի օդիկն՝ որ այս ինչ պատմական գործոյն, այն ինչ նշանաւոր դիպաց կենդանի շունչն է, այն օդիկն՝ առանց որոյ պարզիւ շնչման պատմագրին հորիզոնը շատ անգամ յաւիտեանս ամպամած կը մնայ։ Տարիներու մէջ թաղուած պարագաներ, դէպք եւ պատահմունք՝ որոնց ծանօթութիւնը ցայժմ մեզի վարդապետօրէն կ՚աւանդուէր, հոս մեր առջեւ իբրեւ ի թատեր կը ներկայանայ։ Հին լրագրութիւնը թեր-

թած կամ լրագրութեան ընդարձակ պատմութիւնն ընթերցած ժամանակ՝ անհետացած սերընդոց կենակից կ՚ըլլանք, մօտաւոր մեծամեծ երեւութից փոքրագոյն հեռաւոր սկիզբն, մեծամեծ կողմնակցութեանց սկզբնական փոքր փոքր մաքառումները կը նշմարենք։ Եւ եթէ պատմութիւնը միայն իրական դէպքեր, Մատենագրութեան պատմութիւնը միայն գրքերն իբրեւ լրացեալ արդիւնք մեր առջեւ կը դնէ, լրագրութեան մէջ կը տեսնենք նաեւ այն դիպաց կամ գրոց տակաւ տակաւ ըրած ազդեցութիւնը, ժողովրդեան տրամադրութիւնն՝ որով զանոնք ընդունեցաւ, եւ այլն, եւ այլն։

Հոս կրնանք այսուհետեւ առանց տատամսելու հաստատել՝ որ այս մտադրութեան արժանի եւ աննման վարժարանին պատմութիւնը թէ ընդհանրապէս ազգին անցեալ ժամանակին տեղեկութեան համար, եւ թէ ի մասնաւորի ազգին գրական զարգացման պատմութեան օգտակար պիտի ըլլայ։ Աշխատասիրութիւն մը կը կարծենք, որ մեր արդի լրագրութեան երկշոտ ծագումն, աճեցուն տարածումն, եւ այսօրուան ըստ բաւականի յաճախութիւնն, այն փոփոխմունքն ընդ որ անցաւ, նիւթերն՝ զոր հետզհետէ ընտրեց, արդիւնքներն՝ զոր յառաջ բերաւ, կարգաւ մեր առջեւ պիտի դնէ։ Ոչ իբրեւ լոկ պատմական ցանկ անուանց հայ լրագրաց, այլ իբրեւ քննական պատմութիւն լրագրութեան՝ առանց ակնա-

ծութեան եւ աչառութեան պարտական է փորձել հանել ի վաղուց մինչեւ ցայսօր հրատարակուած հայ լրագրաց առաւելութիւնքն ու թերութիւնքը, քովանդակութիւնն ու արդիւնքն ազգին նկատմամբ։ Գիտենք որ այս վիրահատութիւնն հաճոյական չէ ոչ վիրահատին ոչ հիւանդին, նաեւ ոչ ընթերցողին։ Սակայն քանի՜ բարիք ըրած են մարդկութեան վիրահատք, թէեւ շատ հիւանդներ վիրահատութեան ժամանակ հառաչեն։

Բ.

*Աղբերք պատմութեան հայ լրագրութեան:*

Ընդհանրապէս լրագրութեան եւ լրագրութեան պատմութեան վրայ խօսելէն ետեւ՝ տակաւին ի բաժանումն նիւթոյն չթեւակոխած՝ աւելորդ չէ հայեցուած մ'արձակել նախնի աշխատասիրութեանց՝ որ մեր այս գործոյս ժամանակ աչաց առջեւ էին։ Ինչպէս յառաջագոյն ըսինք, սակաւ ինչ օգուտ տեսանք անոնցմէ, սակայն պարտք մը կայ յիշատակելու թէ վասն վայելչութեան՝ որ կը պահանջուի հետեւորդէ մ'առ նախորդն, եւ թէ վասն զի յընթացս պատմութեան աստ անդ պիտի յիշատակենք զանոնք. եւ որովհետեւ հարկ է պատմութեան ընթացքին մէջ երկրորդական խոտորումներէ ըստ կարի խորշիլ, հարկ է հոս ընթերցողին առջեւ դնել ի միասին աղբիւրներն՝ որոնց թերեւս մէկը պէտք կ'ունենայ մեր ձեռնարկութիւնը քննադատելու ժամա-

նակ. եւ թէ վերջապէս՝ որովհետեւ. կը կարծենք թէ կարելի չէ մեր լրագրութեան պատմութիւնն այնպէս լաւ սկսիլ, եթէ ոչ համառօտ պատմութեամբ մը՝ ի մէջ բերելով աղբերաց բովանդակութիւնն: Բայց ասով չ'ուզուիր ըսել՝ թէ առանց բացառութեան ամէն աղբիւրներն ալ հոս պիտի բովանդակենք. վասն զի կարելի է որ ըլլան այլ եւս աղբերք՝ անծանօթք մեզ:

Նախորդ աշխատասիրութիւններն՝ որ մեզի կրնան աղբիւր ըլլալ, երկուքի կը բաժնուին՝ ընդհանուրն եւ ի մասնաւոր: Առաջիններն են անոնք՝ որ ընդհանրապէս հայ մատենագրութեան պատմութիւնը գրած են, եւ ի մասնաւորի յիշատակած են ընդարձակ կամ համառօտիւ նաեւ հայ լրագրութեան պատմութիւնը: Իսկ վերջիններն են անոնք՝ որ մասնաւորապէս հայ լրագրութեան վրայ միայն կը ճառեն: Յայտնի է թէ ասոնք կարեւորագոյններն են:

Առջիններէն ունինք առջեւնիս՝

1. Պատմութիւն Հայերէն Դպրութեան, Բ. Նոր Մատենագրութիւն, Հ. Գար. Զ. Վենետիկ, 1878: Աոր մէջ (երես 468) ազգային մատենագրութեան հմուտ հեղինակն ընդարձակ (19 թուղթ) կը ճառէ այս դարուս հրատարակուած լրագրաց վրայ, ըստ բաւականի ընդարձակ եւ ճիշտ տեղեկութիւններով: Այս աշխատասիրութենէն մեծապէս օգտեցանք:

2. Հայկական Մատենագիտութիւն, Հ. Գար. Զ

Վիեննա, 1883։ Այս աշխատասիրութիւնն՝ որ Այբուբենական ցուցակ է տպագրութեան գիւտէն մինչեւ առ մեզ եղած հայերէն հրատարակութեանց, կը բովանդակէ նաեւ ցայսօր հրատարակուած հայ լրագրաց անուանքն, առընթեր դնելով խմբագրին անունն, հրատարակութեան տեղը, սկզբան եւ կատարածին տարւոյ թիւն։ Սակայն ի բաց կը թողու նաեւ շատերն անյիշատակ, եւ թուականաց մէջ ալ շատ ճշդութիւն չի ցուցըներ։

3. Պատմութիւն հայ Մատենագրութեան, Եղիշէ Վ. Դուրեան, Կ. Պոլիս, 1885։ Հոս (երես 97) ԺԹ. դարու հայ մատենագրութեան վրայ խօսելով՝ յառաջ կը բերէ Եղ. Վ. Դուրեան հայ լրագրութենէն նշանաւորներն (թուով 18) իբրեւ նպաստիչ եւ տածիչ աշխարհիկ լեզուի կանոնաւորման եւ զարգացման, առանց ուրիշ դիտողութեան մը։

Իսկ վերջիններէն ունինք միայն երկու հատ։

1. Եւրոպա, լրագիր շաբաթական, 1850, Թիւ 28։ Ասոր մէջ Հ. Փիլիպպոս Վ. Ճամճեան՝ Աշխարհին լրագիրներուն ու օրագիրներուն պատմութիւնը վերնագրով պլեւպլ յօդուածներու մէջ յառաջ կը բերէ Դիտակ Բիւզանդեանէն (1812) մինչեւ Բուրաստան Ս. Սահակեան (1851) ամսաթերթն հրատարակուած լրագիրներն ու օրագիրները, իւրաքանչիւր լրագրոյն վրայ երկար ճառելով։

2. Հայերէն Մատենադարան, (Armenische Bi-

bliothek), Աբգար Յօհաննիսեանց եւ Արթուր Լայստ, Լայբցիգ, 1886։ Աբգար Յօհաննիսեան՝ Աբջօչանի խմբագիրն արդի Հայ գրականութիւնն եւրոպացւոց ծանօթացընելու նպատակաւ՝ ազգային բանաստեղծութիւններ, կենսագրութիւն եւ աշխատսիրութիւն արդի նշանաւոր ազգայնոց, ազգային առածներ, թատրներ, եւ այլն հայերէնէ գերմաներէն թարգմանել կու տայ Արթուր Լայստին (Arthur Leist) եւ տեսր տեսր կը հրատարակէ։ Այս գործոյս Բ. Տետրին մէջ (եր. 145) Հայ լրագրութեան ալ փոքրիկ գլուխ (12 երես) մը շնորհուած է։ Ասիկայ Հայ լրագրութեան վրայ համառօտ տեղեկութիւն կու տայ. բայց ինչպէս գործոյն ուրիշ յօդուածներն ընդհանրապէս նոյնպէս Հայ լեզուագրութեան յօդուածն ալ ունի իւր ուղղելի մասերն։

3. Ցարդ, Հայոց մամուլը Ռուսաստանում եւ Կովկասում մէջ, Թիֆլիս, 1878։ Այս աշխատսիրութիւնն՝ որովհետեւ մասնական՝ գաւառական պատմութիւն է Հայ լրագրութեան, մեզի համար շատ յարգի է։ Հեղինակն՝ որ նախ Обзоръ ռուս լրագրին մէջ իւր այս գործը ռուսերէն գրած է եւ յետոյ առանձինն հայերէն տպած, 135 էջի մէջ խօսիլ կը քննադատէ Ռուսահայոց լրագրութիւնն ի սկզբանէ մինչեւ իւր ժամանակը։ Ի մէջ այլոց ընդարձակ կը խօսի Կովկասի, Հիւսիսափայլի վրայ շատ գովութեամբ, Վաղարշապատի վրայ, Մշակի վրայ ոչ այնչափ ի նպաստ, եւ Մեղուի ու Մշակի

մէջ եղած կռիւներն մանրամանր կը նկարէ։ Ինքն հեղինակն ուզած է իւր այս գործին մէջ անաչառ եւ անկողմնակալ երեւալ. բայց ընթերցողը կը տեսնէ՝ որ խիստ, նաեւ կծու խօսքերով կը յարձակի ինչպէս ամենուն, նոյնպէս ի մասնաւորի Մշ՟կի եւ Մեղու-ի վրայ, եւ չափազանց շլացած կ՚երեւայ Հէ-ոխ-ոֆ-ոյւի լուսէն։

Ասոնք են աւասիկ մեր աղբիւրներն՝ որոնք մեր ծարաւը լիովին անցընել կարող չեղան։ Հարկ եղաւ որ մենք մեզի աղբիւր մը բանանք թէեւ մեծաւ վաստակով՝ բայց յագեցուցիչ։ Անձամբ թերթեցինք ազգային լրագիրներն՝ որչափ մեր ձեռքն անցան, եւ անով շատ բան լուսաւոր ըմբռնեցինք, շատ բան նոր տեղեկացանք։ Եթէ շատ տեղեր չկրցանք ստոյգ եւ որոշ տեղեկութիւն տալ այս ինչ կամ այն լրագրոյ վրայ, առ ի չգոյէ աղբեր, կրնանք այժմէն իսկ յոյս տալ մեր ճշտապահանջ ընթերցողին՝ որ ժամանակն որուն միջոց երբեք չէ պակսած, պիտի յաջողի մեր այս թերութիւնն ալ օր մը բուժել։

Գ.

Բաժանում:

Ունինք վերջապէս քանի մը խօսք ալ մեր նիւթոյն բաժանման վրայ։ Ո՞վ չ՚ուզեր երկայնաձիգ ուղւոյ մը վրայ հանգստեան իջեւաններ, ուր խոնջ ուղեւորն հանգիստ առնլէն ետեւ՝ նոր զօրութեամբ յառաջ կը վարէ ճամբան։ Ո՞վ չէ

բաղձար որ կղզյանիստ լաբիւրինթոս մը՝ ունենայ որոշ կենդրոններ, որոնց վրայ միտքը բովանդակ բաւիղները կապելով՝ դիւրաւ առանց արիադնեան դերձանի իւր ճամբան որոշէ։ Ընդարձակ նիւթ մը բաժանում հարկ է ունենալ։

Մեր լրագրութեան պատմութեան մէջ, ինչպէս յընթացս գործոյս պիտի տեսնէ ընթերցողը, կան ժամանակներ՝ որ իրենց անցեալէն ու ապագայէն ըստ բաւականի որոշ կը զանազանին։ Ինչ երեւոյթ որ մեր արդի գրականութեան սկիզբները կը նշմարենք՝ կ՚երեւայ նաեւ մեր լրագրութեան ծննդեան եւ զարգացման վրայ։ Հայ լրագրութեան աճումն չէ եղած միշտ նոյն սաստկութեամբ։ Ի սկզբանէ մինչեւ 1840, ո՛հ, ինչպէս յամրագնաց կ՚ընթանայ, — դեռաբոյս մանկութիւն —։ 1840էն ետքը գրեթէ ամէն տարի, եւ յաճախ՝ իւրաքանչիւր տարին քանի մը հատ նոր կը ծնանի, թէեւ շատերը սակաւակեաց կարճօրեայ, — փոփոխամիտ երիտասարդութիւն —։ Կրնանք ըսել թէ 1860էն ետքը հեղեղ մը հայ լրագրաց կը սկսի հոսել, որոնցմէ ոչ սակաւք կը մնան յարատեւ, — հաստատուն այրութիւն —։ Ծերութիւնը չենք ուզեր տեսնել։

Ուրեմն ունինք որոշ կէտեր, ուր կրնանք պատմութեանս ընթացքին մէջ հանգիստ առնուլ՝ նախընթաց շրջանէ ետեւ։ Այս որոշ կէտերն՝ ինչպէս ըսուածներէն յայտնի է, երեք

են, զոր մենք Շրջան կ'անուանենք, եւ կը բաժնենք մեր նիւթն այսպէս.

Ա. Շրջան: Ի սկզբանէ Հայ լրագրութեան մինչեւ 1840։

Բ. Շրջան: 1840էն մինչեւ 1860։

Գ. Շրջան: 1860էն մինչեւ մեր օրերը։

Ասոնց վրայ կ'ուզենք յաւելուլ 1. Գլուխ մը Հայատառ տաճկաբարբառ լրագրաց վրայ, զորոնք չենք կրնար ազգային լրագիր հաշուել եւ անոնց կարգին մէջ մուծանել. 2. Անդրադարձութիւն մը Հայ լրագրութեան վրայ, եւ 3. Ընդհանուր տեսութիւն արդի Հայ լրագրաց, որով կը փակենք մեր նիւթը։ Բանանք ուրեմն հիմայ։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ

## Ի ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԸ

---

## Ա. ՇՐՋԱՆ

### *Ի ՍԿԶԲԱՆԷ ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԻՆՉԵՒ 1840:*

*Լրագրութեան ընդհանրապէս՝ եւ ի մասնաւորի ազգային լրագրութեան սկիզբը չի կրնար կամայական կամ պատահական համարուիլ: Լրագրութիւնը կարեւոր եւ անհրաժեշտ իր մըն է, զոր մարդկային բանաւոր միտքն ի հարկէ պիտի ծնանէր երբ արգելք մը չէր խափանէր զայն: Վասն զի մարդկային միտքն իւր գիւտերը ծանուցանելու, առօրեայ ուրախական կամ նորանշան դէպքերն իւր ընկերացն՝ նաեւ մինչեւ ի ծագս աշխարհի հռչակելու բնական միտում մ'ունի: Այս միտումը կրնայ յագեցընել միայն լրագրութիւնը:*

*Սակայն լրագրութեան սկսելուն անհրաժեշտ կարեւոր էր տպագրութիւն եւ թղթա-*

տարութիւն։ Տպագրութեան օգտին վրայ խօսիլն աւելորդ գործ է. իւրաքանչիւր տող պտեալ, թէեւ կուլթենպերկի եւ կամ Աբգար Դպրի՝ Հայ տպագրութեան Հօր՝ նախատիպք ու թշնամանք բովանդակէ, միշտ պատիւ է անոր։ Առաջին գրքով որ տպուեցաւ, լրագրութեան սերմը ցանուեցաւ, որ եւ շատ չտեւեց բուսաւ եւ աճեցաւ, մինչեւ կրնայ ըսուիլ այսօր՝ որ տպագրութիւնը լրագրութեան համար էր եւ աւելի լրագրութեան գործածութեան սահմանեալ։ Նոյնպէս թղթատարութիւնն որչափ յընթացս ժամանակաց դիւրացաւ, նոյնչափ լրագիրք բազմացան եւ դիւրաւ կրցան իրենց գոյութիւնը պահել։

Ո՞ւր, ե՞րբ եւ որմէ՞ եղած է սկիզբն ազգային լրագրութեան. խնդիր հետաքրքրական եւ ցանկալի։ Եթէ ցայսօր շատ քաղաքներ կը կռուին իրարու հետ՝ զՀոմերոս իրենց ծոցէն ծնած ցուցընելու, նոյնպէս մեր մէջ ալ քանի մը քաղաք կ՚երեւայ թէ իրարու հետ կը մրցին Հայ լրագրութեան անդրանկութեան իրաւունքը կորզելու։

Եւրոպա՝ անծանօթ բոլորովին Անգլիոյի մը գոյութեան, առաջին Հայ լրագիր կը ճանչնայ Դիտրոյ Բիւզանդեան երկշաբաթաթերթն, որ 1812ին Վենետիկ սկսաւ։ Պատմութեան Հայերէն Դպրութեան՝ (երես 470) "Հայերէն պարբերական գրուածոց մէջ, կ՚ըսէ, առաջին կրնան սեպուիլ ժամանակի կարգաւ Տարեգրութեան կո-

չուած տետրակներն, որք 1799 — 1802 տարիներուն մէջ հրատարակուած են ի Վենետիկ»։ Հնդկական Մատենադարանն առաջին ազգային լրագիր կը ճանչնայ Ազդարարը, թէեւ ծննդեան տեղը կը սխալի։ Եւ արդարեւ ազգիս անդրանիկ լրագիրն[1] է աներկբայ՝

## 1. ԱԶԴԱՐԱՐ

*Ամսաթերթ, Մադրաս, 1794—1796:*

*Խմբ. Տէր Յարութիւն քահանայ Շմաւոնեան Շիրազեցի: Տպ. Տ. Յար. Քահ. Շմաւոնեան:*

Ինչպէս որ յոյն գրականութեան յառաջարձակ լոյսն (Հոմերոս) արեւելեան գաղթականութենէ ծագեցաւ, նոյնպէս Հայ լրագրութեան արշալոյսն Արեւելեան Հնդկաստանի Մադրաս[2] քաղաքէն է։ Իրաւամբ Աբգար Դպիրն Հայ տպագրութեան հեղինակ կը համարուի, եւ յետ Ս. Մեսրոպայ առաջին տածիչ Հայ գրականութեան։ Նոյնպէս պէտք է իրաւամբ զՏ. Յարութիւն Շմաւոնեան ազգային լրագրութեան հեղինակ եւ առաջին անձնանուէր դիւցազն համարիլ։ Թէեւ իւր ձեռնարկութիւնը լրագրութեան

[1] Հոս անցողակի կ'ուզենք մտադիր ընել, որ Հայ տպագրութեան գիւտէն յառաջ անշուշտ լրագրի պաշտօն կը վարէին փարեքչիներ, ժամանակագրութիւններ կամ ջէլափոխաններ, որոնք ի Թիւս ձեռագրաց նախնեաց կը տեսնուին։

[2] Հնդկական Մատենադարան (եր. 145) Ազդարարն ի Կալկութթա հրատարակեալ կը դնէ, չենք գիտեր ինչ պատճառաւ։ Նոյնպէս երկու տարի կեանք կու տայ Ազդարարի, փոխանակ երեք տարւոյ։

մատաղածին մանկութեան տկար հասակին մէջ հազիւ կրցաւ երեք տարի ապրիլ, — անշուշտ իւր գաւառական անձուկ շրջանն՝ ուր կը յածէր, եւ ազգին անընտել եւ անուսումն վիճակը զայն կը պահանջէր, — սակայն եղաւ սկիզբն եւ հիմն հայ լրագրութեան շինուածոյն՝ զոր կրնանք համեմատաբար յաղթ անուանել, եւ ազգային լրագրութեան գաղափարին առաջին անգամ նկարեց հայ մտաց մէջ։ Այս ձեռնարկութիւնն առանց ազդեցութեան չմնաց Հնդկահայ գաղթականութեան յաջորդ տարիներու գրականութեան։

Ազդարար գրաբար ամսաթերթն սկսաւ 1794 Յուլիս (Թերպյ) ամսոյն եւ իւրաքանչիւր ամսոյն վերջը կը հրատարակուէր։ Բովանդակութիւնն էր նոյն ամսոյն մէջ հանդիպած դէպքերն։ Թէեւ չենք տեսած այս ցանկալի թերթը, սակայն որչափ նոյն իսկ Ղմաւոնեանին խօսքերէն[1] կ'իմացուի, այնպիսի ժամանակ եւ այն առաջին անգամ հրատարակուելովն ալ՝ շատ յօրինուածական եւ գիտնական լրագիր մը կ'երեւայ։ Ահաւասիկ խմբագրին խօսքերը.

«Նկատելով եթէ զօժանդակութիւն տպարանին, եւ եթէ բարեպէս յառաջ եկեալն ուսումնասիրաց, յարմար վարկայ նուիրել առաջի ձերումդ ազգասիրութեան զխոկմունս նարդենիս. այսինքն տպեցմամբ ի լոյս ածել զտետրակ մի յամենայնում վերջնոց ամսոյ, անուանեալ Ազդարար. յորմէ իմացումն լինելոց է ընթերցողաց, ծայրաքաղ անցքն նոյնոյ ամսոյ, եթէ ի զանազան կաղէթաց, եթէ ի զանազան քարտիսաց եւ

[1] Հայկական Մատենագիտութիւն ի բառն Ազդարար։

եթէ այլոց զանազան գրոց. նաեւ բանք հարկաւորք եւ քաղցրալուրք, եւ ի վերջնումն տետրակին զօրացոյց մի հետեւեալ ամսոյ, պարունակեալ ի նմա զտօնս սրբոց, եւ զաւուրս ծննդեան եւ լրման լուսնոյ„:

Այս ազդը կամ յայտարարութիւնն ուղղուած է “բարեպաշտ պարոնաց եւ մաքրակենցաղ տիկնանց Մադրասի Հայոց„: Ասիկայ հրատարակեցաւ 1794, Մայիս 20ին[1]: Ազդարարի աշխատակից էին Ռուսաստանէն՝ Յովսէփ Արքեպիսկոպոս Արղութեանց եւ Ստեփանոս Յովհաննէս Գուլամիրեան[2]:

## 2. ՏԱՐԵԳՐՈՒԹԻՒՆ

*Տարեթերթ, Վենետիկ, 1800—1802:*

*Խմբ. Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան[3]: Տպ. Ս. Ղազար:*

Ազդարարին ձայնին լռելէն չորս տարի ետքը Վենետիկի Մեծարգոյ Միաբանութիւնը ձեռնարկեց այս աշխատասիրութեան, զոր կրնանք անյատկապէս լրագիր անուանել: Ինչու որ բովանդակութեան եւ պաշտօնին կողմանէ լրագրոյ պաշտօն կը վարէր եւ նոյն վախճանի կը ծառայէր, սա

[1] Կը սիրենք այժմէն իսկ (թէեւ շատ կանուխ) յորդորել ազգային խմբագիրներն ու գրագէտներն՝ որ 1894 Մայիս 20ին կատարուի՝ Հայ գրականութեան գլխաւոր մէկ կէտին՝ Հայ լրագրութեան հարիւրամեայ փառաւոր Յոբելեանն:

[2] Մանկավարժանոց, Թ. 1, 1887: Մանկավարժանոցէն կը տեղեկանանք՝ որ Կոստ. Պոլիս Արժ. Մկրեան Հօր քով կը գտնուի Ազդարարի երեք ամբողջ տարիներն ի միասին կազմեալ:

[3] Տարեգրութեան երեք հատորներուն վրայ, զոր մեր առջեւ ունինք, ինչպէս նաեւ Հայկական Մատենագիտութեան մէջ չի տեսնուիր յօրինողին անունը. բայց ի “Ցուցակի գրոց տպագրելոց ի Մխիթ. Միաբանութենէ„, Վենետ. 1869, Հ. Ինճիճեան յօրինող կը նշանակուի:

տարբերութեամբ միայն՝ որ փոխանակ կարճ շրջանի մը մէջ հրատարակուելու, իբր տարեգիր տարւոյն վերջը կը հրատարակուէր, եւ նոյն տարւոյն մէջ հանդիպած երեւելի քաղաքական, պատերազմական, եկեղեցական եւ գիտնական դիպաց մանրամասն տեղեկութիւնները կը ծանօթացընէր։ Տարեգրութեան դիրքն է փոքր ութածալ, տպագրութիւնն ու թուղթն ըստ ժամանակին՝ մաքուր, լեզուն աշխարհաբար[1]։ Ա. Հատորիկն՝ որ 1800ին հրատարակեցաւ, 1799ի դէպքերը կը պատմէ, եւ այնպէս կը շարունակուի մինչեւ 1802, եւ որչափ գիտենք՝ ալ 1803ին լոյս չտեսաւ[2]։ Տարեգրութիւնն իւր բովանդակութեան կողմանէ կը շրջէր ընդ բնաւ աշխարհ, եւ ամէն տէրութեանց, գիտնական գիւտերու եւ այլն տեղեկութիւն կու տար։ Կրնայ ըսուիլ՝ որ լրագրութեան մանկութեան հասակին այս պատկերը շատ շատ յառաջադիմութեան բողբոջներ յինքեան կը ցուցընէր։ Բանասիրօրէն նկատելով՝ Տարեգրութիւնը մեր առջեւ կը դնէ ժամանակին աշխարհիկ լեզուն։ Ցառաջ բերենք քանի մը հատուած.

«Գանք հիմա ծեծին վրայ. երբոր Նելսոնը աղէկ մը աւրեց թշնամւոյն նաւերը, խապար խրկեց ցամաքը

[1] Հայկկն. Մատենադարան սխալմամբ կը դնէ՝ Երաբար։

[2] Հայկական Մատենադարան անդ կ'ըսէ՝ թէ Տարեգրութիւնը 17 տարի տեւած է. անշուշտ շփոթելով Դիտակ Բիւզանդեանին հետ, որ նոյնպէս Վենետիկ կը հրատարակուէր եւ տեւեց մինչեւ 1817, եւ կամ Եղանակ Բիւզանդեանին հետ, որ իբր շարունակութիւն Տարեգրութեան՝ տեւեց մինչեւ 1820։

ճէնկէ դադրելու համար. ղէրէմ ինկիլիզին առջի նիէթը մոսկովը զարնել էր, չէր ուզեր որ տանիմառքային հետ դարձեալ ծեծկըռվելով իր նաւերը սախտէ. հերիք սեպեց անդաստար ընել որ Թողու զինքը առաջ երթալու, ասանկով ասնքի զօռով միւթարէքէ ընել տըվավ 8 սահԹըվան համար. երթէսի օրը 24 սահաթ տահա երկնցուցին միւթարէքէնը. եւ այլն։

«Բնաբանութեան միւթալիխ մէկ քանի հրաշալի բան կը պատմըվին, որ հոս դնենք։ Ապրիլի 8ին օսդէնտա ծովեզերեայ քաղաքը (Ֆիլեմէնկի մօտիկ) մէկ կենդանի մը ձիու նման ծովէ դուրս կելլայ ցամաքը. բարձր, 8 ոտք եւ 5 բոյթ. պօչը երկան. մորթը ալաճա փէլէնկ գազանի պէս. երկու պզտիկ Թեւալ ունի. բայց սուր եւ կարծր չէլիկի պէս. Թիւֆէնկ պարպեցին՝ չիմտաւ որկըրդեցաւ վար ընկաւ գնտակը. ասիկայ մտաւ արտերուն մէջ խումբ մը գտաւ ոչխարներու, շատը անոնցմէ կերաւ. 2 սահաթ աստնկ զէն տալէն ու վախցընելէն ետեւ, զարհուրելի ձայն հանելով կէնէ ծով դարձաւ. Ժողովուրդը վախցաւ, ասիկայ կէնէ կը դառնայ կերակուր գտնամ տէի. 30 հոգի կտրիճներէն պահապան դրին. հետեւեալ օրը նորէն ցամաքը ելաւ հոն. շատ աշխատեցան էն ետքը ականջին ետեւը վիրաւորեցին. եւ տուզախի մէջ ձգեցին. որ առաջուցմէ խուռմիշ ըրերէին. ան ատեն գիտունները կանչեցին, տեսնան որ կենդանիներուն սրան դնելու է. զէրէմ գիտցած կենդանիներուն հիչ մէկուն չըլմանիրը։ (Տուրեէր. 1801։)

## 3. ԵՂԱՆԱԿ ԲՈՒԶԱՆԴԵԱՆ, ԲԱԶՄԱՎԷՊ

*Ցարեթերթ, Վենետիկ, 1803—1820:*

*Խմբ. Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան: Տպ. Ս. Ղազար:*

Եղանակ Բիւզանդեան՝ դիրքովն ու տպագրութեամբն ըստ ամենայնի նման Տուրեէրու-Բիեան, 1803ին[1] սկսաւ հրատարակուիլ ամէն տարւոյ սկիզբն, աշխատասիրութեամբ Հ. Ինճիճեան ան-

[1] Պատմութիւն Հայերէն Դպրութեան կը դնէ՝ 1803. իսկ Հայկական Մատենագիտութիւնն՝ 1800։ Արդեօք ուղղուած է, թէ Տուրեէրու-Բիեան հետ միացուած։

խոնջ գրասիրի, եւ տեւեց մինչեւ 1820։ Անիկայ 1815էն ետեւ, ինչպէս նոյն տարւոյն Հատորիկը կը զեկուցանէ, Արշարունեաց ազգասէր ընկերութեան ծախիւքը կը տպուէր։ Այս ընկերութիւնն 1812ին հաստատուած էր ի Կ. Պոլիս, եւ վախճանն էր ազգին մէջ գրականութեան ոգի զարթուցանել՝ ոչ միայն նախնեաց մատենագրութիւնն ի լոյս ընծայելով, այլ եւ ազգին օգտակար գրոց հրատարակման ձեռնտու ըլլալով։

Եղանակ Բիւզանդեանին բովանդակութիւնն էր. Ա. Նոր տարի Նոր գիտելիք, որ յաճախ բարոյական խորհրդածութիւններ կ՚ըներ։ Այս գլուխն երբեմն զանց կ՚առնուէր։ Բ. Գուշակութիւն օդերեւոյթ փոփոխութեանց, յորում ամսոց իւրաքանչիւր օրերու օդն եւ այլ բնական երեւոյթները կը գուշակուէր։ Գ. Պատմութիւն օդերեւութաբանութեան, բժշկական եւ բնական, նոյն ծիւղերու վրայ այլեւայլ տեղեկութիւններ։ Դ. Զբօսարան ուսմանց, գիտնական հատուածներ։ Մերթ ընդ մերթ նաեւ քաղաքական անցքեր ու դէպքեր ժամանակագրական ոճով կը պատմէր։ Ասոնք են Եղանակին բովանդակութիւնն՝ երբեմն առաւել երբեմն նուազ։ Իւր ըստ բաւականի երկայն կեանքը կը վկայէ, թէ որչափ ալ բարերար ընկերութեան մեատղեայ ձեռացը պարտական ըլլայ, սակայն ազգին մէջ ալ համակրութիւն շահած էր։ Եւ ստուգիւ նիւթոց ընտրութիւնն արժանի է գովութեան։

Այս աշխատասիրութիւնն՝ եթէ չկարենանք ըստ ձեւոյն եւ այլ պահանջից Լրագիր անուանել, գէթ բովանդակութեան կողմանէ կրնանք ազգային լրագրաց կարգն ընդունիլ։ Լեզուն ժամանակին աշխարհաբարն է, բայց շատ աւելի ընտիր քան զլեզու Տարեգրութեան, մանաւանդ վերջի տարիներին։ Նաեւ աստ անդ գրաբար հատուածներ ալ կ'երեւան։ Ահաւասիկ քանի մը տող.

«Որչափ աղէկ սեպենք ստանպօլին օդը ու ջուրը, բայց յատուկ ստանպօլցին երկան չապրիր. Հասարակօրէն 60 տարին կը հասնի, քիչ կայ 70ը անցնող, աւելի քիչ 90ը անցնող։ Ձմեռը քէօմիւրի կրակի սաստիկ գործածութիւնը ու եաքը բաց քալելը՝ իրենց շատին կըբերէ նեվազիլի ու իջուածներու զանազան ցաւեր։ Բաղնիքի չափազանց յաճախութիւնը նաեւ միստակար ատէններ երթալը՝ իրենց բերել կուտայ թուլութեան ու տաքութեան զանազան ցաւեր, ու կարծեն ան շահը՝ որ չափաւոր գործածութիւնը բաղնիքի պիտոր բերէր։» (Եղանակ Բիւզանդեան, 1808։)

## 4. ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

Վենետիկ 1807 (՞)։ Տպ. Ս. Ղազար։

Հայկական Մատենադարանի մէջ կը յիշատակուի Յիշատակարան ընկերացած Տարեգրութեան։ Յառաջ բերենք Հայերէն Դպրութեան Պատմութեան (եր. 470) հեղինակին խօսքն՝ որմէ աւելի տեղեկութիւն չունինք աստ վրայ։ «1807ին, կ'ըսէ, Եւրոպայի մէջ տրուած պատերազմաց հետաքրքրական լուրերը հարկաւոր կ'ընեն նաեւ ուրիշ համառօտ պարբերական երկասիրութեան մը հրատարակութիւնը։ Ասիկայ կը կոչուի Յի-

շարժանկարան, որուն միակ նպատակն է, ինչպէս խորագիրն ալ կ'ըսէ, նոյն տարւոյն մէջ Յեւրոպա հանդիպած պատերազմաց ստոյգ պատմութիւնն տարածել յարեւելս:» Բայց ո՞վ էր այս Ցուցա-կութեան քանդակագործը, քանի՞ անգամ շաբաթն ամիսն ի տես կը դրուէր, երբ քանդեցաւ այդ: — —

Եթէ Տուրեւառութեան ճակատը նկատենք, կը գտնենք գրուած՝ «Տուրեւառութիւն, որ է ճշմա-րտասիրական քաղաքական, պատերազմական, եկեղեցական եւ բանասիրական անցից եւ դիպուածոց աշխարհի»: Արդեօք ըստ այսմ հասկընալու է յիշեալ երկասիրութեան խօսքերը:

## 5. ԴԻՏԱԿ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ

*Երկշաբաթաթերթ, վենետիկ[1] 1812—1816: Խմբ. Հ. Գրիգոր վ. Գապարաճեան եւ այլք: Տպ. Ս. Ղազար:*

Վենետկոյ Մխիթարեանց Մեծ. Միաբանութիւնն ի խնդրոյ եւ ձեռնտուութեամբ Արշարունեաց ուսումնասէր ընկերութեան 1812ին Օգոստ. 1ին սկսաւ սոյն այս լրագիրն հրատարակել: Արշարունեաց ընկերութեան անդամներն՝ որ գործունեայ բաղձանք մ'ունէին ազգային յառաջադիմութեան, տեսան սրամտութեամբ՝ որ յառաջադիմութեան էական պահանջմունքներէն մին է ծանօթանալ օտար ազգաց յառաջադիմութեան, գործունէութեան եւ գործոց,

---

[1] Հայկական Մատենագրութեան հոս կը հեռանայ մեզմէ՝ երբ զԴիլիջան Բիւզանդեան Կոստ. Պոլիս հրատարակեալ կը գնէ:

ոչ ամիսներէ եւ տարիներէ ետեւ՝ այլ անմիջապէս։ ընկերութիւնն իւր հաստատութեան առաջին տարին արդէն առաջարկեց յիշեալ Մեծ. Միաբանութեան՝ ընկերութեան ծախիւքն հրատարակել լրագիր մը՝ որ ընկերութեան այս տեսութեան ծառայէ։ Յանձն առաւ ուսումնասէր Միաբանութիւնն, եւ նոյն տարին սկսաւ հրատարակութիւնը։

Դիտող Բիւզանդեան հնգետասանօրեայ էր, ի սկզբանէ մինչեւ 1813 Օգոստ. 16 երկու թուղթ միայն, այնուհետեւ չորս՝ մինչեւ տասը թուղթ, լեզուն՝ աշխարհաբար, տարեկան գինը՝ 40 ղրշ., գիրքը՝ միջակ, գիրը մանր, թուղթն ու տպագրութիւնն (մանաւանդ Ա. Տարին) ստորին քան զՏօրէգէրօ–Րիանի։ Նիւթը գլխաւորաբար ժամանակին նշանաւոր դէպքերն են՝ Մեծին Նաբոլէոնի գործքերն ու անոնց հետեւութիւններն, որ՝ որչափ կ'երեւայ, ժամանակին պարագաներէն ստիպեալ՝ Նաբոլէոնին կողմնակից լրագիրներէն առնուած է։ 1813էն ետքը ժամանակակից խռովութեանց դադրելովն՝ ազատ ընթացք կ'առնու Դիտող Բիւզանդեան, ուսումնական եւ բանասիրական ճիւղերն ալ հետզհետէ մշակելով՝ մանաւանդ վերջին տարին։ Նաեւ գրաբար բարոյական ոտանաւորներ աշխարհաբար թարգմանութեամբ կը դնէ, եւ յամենայնի ազգին մտաւոր զարգացման գործունեայ եւ գովելի ջանք կը ցուցընէ։

Դիտակ Բիւզանդեանի առաջին խմբագիր եղաւ Հ. Գրիգոր Վ. Գապարաճեան տարի մը միայն, 1813ին եւ 14ին խմբագիր էր Հ. Մատթիա Վ. Փիւսկիւլճեան, 1815ին եւ 16ին Հ. Մանուէլ Վ. Ջախջախեան, որոնցմէ երկուքը Գապարաճեան եւ Ջախջախեան՝ ունին արդիւնք մը՝ ազգային գրականութեան մէջ։

Դիտակի գրութեան ոճը պարզ ու ռամկախօս է Կոստ. Պոլսոյ նոյն ժամանակի գրական լեզուաւ՝ իւր նախորդաց պէս ալ տաճկերէնախառն։ Վերջին երկու տարիները Դիտակ Բիւզանդեանն ինչպէս իւր բովանդակութիւնը՝ նոյնպէս լեզուն աւելի կոկել ու թեքել կը ջանայ։ Ահաւասիկ քանի մը տող.

"Եւրոպայ ու Ֆրանսայ բուրդի պակասութիւն ունենալուն համար մէկը մէկ նոր գիւտմը հնարեց՝ որ աս պակասութեան տեղը լեցընէ։ Կովու ու Հորթու կաշիէ տէօշէկ կը ձեւէ որչափ մեծ ու պզտիկ կուզես, ու աղէկ վարպետութեամբ աս կըկարէ. տէօշէկին մէկ դին մուսլուխմը կամ մասուրամը կը դնէ՝ որ գոցվի ու բացվի ուզածին պէս, ատիկայ քէօրիւկովմը, կամ փչելով կուռեցընէ ուզածին չափ, որ կըլլայ մէկէն մէկ պատվական տէօշէկմը, ու կըպառկի վրան. ամառը ասոր վրայ մարդ չէփիր չխաշիր, ընտոր բրթէ տէօշէկին վրայ, անկէ եռեւլուէն ազատ, դնելը վերցընելը դիւրին։ Ճամբորդ մարդ պիլէ, աս իր մեծ ու պատվական տէօշէկը հետը ուր ուզէ կրնայ տանիլ. առվտանց պլօրցընէ՝ կտորմը կաշի ձիուն վրայ կամ առապային մէջ կըդնէ. իրիկունը՝ ուր որ կըլլայ անտառի մէջ, դաշտի մէջ, ուռեցընէ աս՝ կըլլայ թագաւորական տէօշէկմը, որուն վրայ հանգիստ կըպառկի։"

"Յուլիսի 28ին իրիկվան դէմ տուսէտօսֆ քաղաքը, մէկ սարսափելի փոթորիկ մը եղաւ, որ ծերերը չէին յիշէր՝ թէ կենացնուն մէջ, անոր նմանը տեսած ըլլան։ Ետեւէն մէկ սաստիկ անձրեւ մը կարկուտով խառնած.

եկաւ, որ Մէկէն ծով դարձուց բոլոր քաղաքը, բայց առատութով մարդու մը վնաս չեղաւ, ամա ճամբեր կտրտել, աներ փլցընել, էգիներ ապականել, ծառեր արմատէն խլել, ու այլ ատոնց նման վնասներ շատ տըվաւ։» (Դիթրոյ Բի-ղանդիոն, 1812։)

«Պօղոս Մանուցիոս կըգրէ որ՝ Հացի հրաւիրված ըլլալով Ֆիլոքսենոսը, կըսպասէր սեղանին վրա, որ կերակուր բերեն. ամեն բանէն առաջ՝ բերին հաց, տեսնելով որ՝ շատ սեւ էր, բերողին ըսաւ շախայով. Շատ մի բերեր ասկից, որ մութ չընես։» (Դիթրոյ Բի-ղանդիոն, 1816։)

Որո՞նք են Դիթրոյ Բի-ղանդիոնի գովելի եւ պարսաւելի յատկութիւնները։ — Եթէ զԴիթրոյ Բի-ղանդիոն նկատենք համեմատելով իւր նախորդաց հետ՝ պէտք ենք ըսել որ ունի անոնցմէ աւելի առաւելութիւններ։ Իբրեւ անդրանիկ քաղաքական լրագիր Տաճկահայոց՝ թէեւ չըլլայ կատարեալ, բայց կրնար նոյն ժամանակի հայ ընթերցողը գոհացընել իւր արտաքին կերպարանքն ու ձեւովը, քաղաքական լուր առատութեամբն ու ընդարձակութեամբը. վասն զի ոչ միայն եւրոպական տէրութեանց, այլ եւ Ամերիկայի քաղաքական անցքերուն վրայ տեղեկութիւն կու տար։ Առաջին անգամ հոս կը հանդիպինք ազգային յառաջադիմութեան յորդորականներու, Արշարունեաց ընկերութեան անդամներէն խօսուած [1]։ Ազգային լրագիրներէն առաջին անգամ Դիթրոյ Բի-ղանդիոն կը յանդգնի, եւ այն այնպիսի ժամանակ մը, տասնուհինգ օր անգամ մ'երեւալ։ Հոս առաջին անգամ կը հանդիպինք լրագրի սովորական զարդագիր ճակատի,

[1] Դիթրոյ Բի-ղանդիոն, 1818, թիւ 1, 3։

վերջապէս լրագիր գաղափարին (թէեւ անկատար) իրագործմանը։ Եթէ միւս կողմանէ նշմարենք նաեւ տուած քաղաքական լրոց կողմնակալութիւնը, ժամանակակից ազգային խնդրոց եւ դիպաց բոլորովին անյիշատակ թողուիլը, կրթիչ չինիչ յօդուածներու պակասութիւնը, լեզուին ռամկութիւնը, կը ներենք անշուշտ միտ դնելով որ իւր աղբիւրները Մ. Նաբոլէոնի տպագրական ճնշող օրինաց տակ էին, (—Նաբոլէոն արգելած էր օտար երկիրներու լրագիրները մուծանել իւր իշխանութեան երկիրներն, եւ նելքինք ալ միշտ ի գովութիւն եւ ի կողմն Նաբոլէոնի կրնային գրել, —) եւ ազգային ու գրականութեան ոգին ալ դեռ չէր արթնցած։ Վերջապէս լեզուն ալ Հարկ էր այնպէս ըլլալ՝ որպէս զի թերուսում ժողովրդեան իմանալի ըլլար. կարելի՞ ալ էր այլազգ։ — Աւա՜ղ որ Դիտակ Բիւզանդեան 1816ին վերջերը՝ մեզի անծանօթ պատճառաւ մը, շուտով մեկնեցաւ Հինգ տարուան փոքր ի շատէ արդիւնալից ասպարիզէն։

## 6. ԹԱԳՎԻՄԻ ՎԱԳԱՅԻ, ԼՐՈՅ ԳԻՐ

*Շաբաթաթերթ, Կոստ. Պոլիս, 1832—1833:*
*Տպ. "Թագվիմի վագայի" լրագրոյ:*

Տաճկահայք, չի կրնար ուրացուիլ, Ռուսահայերէն շատ աւելի կանուխ արթնցան գրական քունէ։ Իրենց զարթուցիչ եղան աւելի հեռաւոր փոքրիկ գաղթականութիւնք։ Այժմու

արեւմտեան գաղթականութեան առաւել կըրթեալ մասն՝ Կոստ. Պոլսոյ Հայք ունին դարուս կէսէն ետքը գրականութեան հետ փոքր ի շատէ պայծառ լրագրութիւն մ'ալ, եթէ ուզենք յուռեմոլաց եւ լաւատեսաց մէջ եղած անջրպետէն իրերը զննել։ Կոստ. Պոլսոյ Հայք մինչեւ 1832 ունեցան թէեւ տպարաններ, եւ ոչ սակաւ մատեանք գրականութեան սոյն արգանդներէն ի լոյս ընծայուեցան, սակայն տեղական ազգային լրագրոյ մը ձեռնարկու չգտնուեցաւ։ Վասն զի՛ եթէ կար այն ժամանակ քիչ մ'ընդունակ ուղեղ՝ այն ալ ներքին երկպառակութեանց մէջ կը մաշէր կը հալէր։

Հազիւ 1832ին կը զարթնու Կոստ. Պոլսոյ Հայոց մէջ տկար եւ շատ տկար հոգի մը լրագրութեան, աւելի օտար ազդեցութեան ներքեւ։ Աղէքսանդր Պլաք (Blaque) 1831ին Կոստ. Պոլիս **Ազդարար Օսմանեան** (Moniteur ottoman) անուն գաղղիերէն լրագիր մը կը հրատարակէ՝ իբրեւ պաշտօնական լրագիր Բարձրագոյն Դրան։ Յաջորդտարւոյն սկիզբը սոյն լրագիրը **Թագվիմի Վագայի** անունը կ'առնու, լեզուն ալ կ'ըլլայ տաճկերէն՝ տաճկերէն տառիւ։ Նոյն լրագրոյ խմբագրութիւնն անշուշտ՝ կը փորձէ նոյնին հայերէն թարգմանութիւնն ալ հրատարակել՝ ի յագուրդ ոչ սակաւ ընթերցասէր Հայոց. սոյն թարգմանութեան անուն կը կնքուի՝ **Թագվիմի Վագայի, Լրոյ Գիր**։

Որովհետեւ **Թագվիմի Վագայի** տաճկերէն

լրագրոյն հրատարակութեան օրէն մինչեւ 1832 Յունուար՝ տասնումէկ թիւ հրատարակուած էր, նոյն լրագրոյ հայ թարգմանութեան առաջին թիւն սկսաւ տաճկերէնի 12ᵉ թուէն՝ 1832, Յունուար 13ին, եւ փոխանակ Թիւ 1 դնելու՝ դրուեցաւ Թիւ 12, ինչպէս կը զեկուցուի նոյն թուոյն մէջ: Այս հայերէն թարգմանութիւնն հրատարակութեան որոշ ժամանակամիջոց չունէր, այլ մերթ 7 օր անգամ մը եւ մերթ 14—20 օր անգամ մը կը հրատարակուէր: Երկրորդ (որ է 13ᵉ) թուէն սկսեալ անունը կերպարանափոխեցաւ եւ կոչեցաւ Լրոյ գիր Մեծի Տէրութեանն Օսմանեան: Դիրքն էր միշտ ութածալ կէս թերթ (4 թուղթ). թուղթն ու տպագրութիւնը միջակ, գիրը սովորական մեծութեամբ: Խմբագրին կամ թարգմանչին անունն անծանօթ է, թէեւ շատ ցանկալի էր գիտնալ: Վասն զի Կոստ. Պոլսոյ Հայ լրագրութեան շինուածոյն՝ որուն վրայ կրնայ իրաւամբ պարծիլ այսօր ի մէջ այլոց քաղաքաց, սկիզբն ու հիմն եղաւ: Լրոյ Գիրի լեզուն աշխարհաբար էր՝ ռամիկ. բայց որչափ կ՚երեւայ՝ ուզուած էր տաճկերէնախառն հայախօս ժողովրդեան դիւրահաս ընել. վասն զի տեղ տեղ կոկիկ լեզու կը նշմարուի: Տէրութեան պաշտօնատեարց անունը գրեթէ միշտ տաճկերէն էր: Պատմական ոճն ըստ ամենայնի տաճիկ լրագրաց ոճն էր, եւ գրեթէ ամէն նախադասութիւն Ե-ով կը սկսէր, եւ եթէ նիւթը պակսէր՝ վերջին

մէկ կամ մէկուկէս սիւնն դատարկ կը ձգուէր[1]։ Բովանդակութիւնն էր Օսմանեան պետութեան ներքին գործերը։ Գիտնական յօդուած շատ ցանցառ կ՚երեւար։ Այսր լեզուէն դպչն ճաշակ մը կարծենք ցանկալի է բանասիրաց։

«Ըստամպօլու գատը մօլլաճըք զատէ սէրվէթ էֆէնտիին ժամանակաւոր պաշտօնը՝ այս անցեալ զիլ-հիճճէի վերջը լրացաւ. եւ այս մուհարրէմին սկզբէն տիրելով, նոյն պաշտօնը նախկին ըստամպօլու գատը սէլիմ մօլլա զատէ սէյիտ Ապտիւլլահիմ էֆէնտիին երկրորդ անգամ շնորհեցաւ։»

«...Գօլէռա ցաւին հանդիպօղը մերկացընելով նախ խիստ ջեռուցած կամ թէ կրակով լեցուն արթու-կով (իւթիւով) իւթիւլէնմիշ եղած երկու բրդեղէն ծածկոյթի մէջ պառկըցընեն, եւ յետոյ նոյն ծածկոյթով պահպանած մարմնոյն վրայ տաքցուցած իւթիւ, եւ կամ թէ կրակով լեցուն իւթիւ մը ծայրէ ի ծայր կա-մաց պտըտցընեն։ Եւ հիվանդին մարմինը տաքցընող շփե-լու մէհլէմով ուժով եւ շատկեկ շփեն։ Եւ մէհլէմին բաղադրութեան կերպը այս է 150 տրէմ բախի. 75 տրէմ բարկ քացախ, 4 տրէմ ծեծած հառատալ եւ 2 տրէմ քեափուր, եւ 2 տրէմ պիպեռ եւ մէկ գլուխ ծեծած սխտոր....։»  (Լրոյ Բեր, 1832։)

Կարճ եւ շատ կարճ եղաւ ասոր կեանքը։ Մէկ տարուան մէջ տեսաւ ծննդեան հետ մահն ալ[2]։ Այրեցաւ խեղճութեամբ բոլորովին կա-

---

[1] Ըստ ամենայնի նոյն երեւոյթը կը նմանուի գեր-մաներէն հնագոյն լրագրոյ մը վրայ, որ բաւական ատեն է Հայտելպերկի Համալսարանին գրատան մէջ գտնուած է։ Այս լրագիրն՝ որ շաբաթաթերթ է, տպուած է 1609ին եւ յիշեալ գրատան մէջ կը պահուի իբր Թանկագին հնու-թիւն. վասն զի ասկէ հնագոյն լրագիրներն տակաւին չեն գտնուած։

[2] Այսինքն՝ այս անուան տակ. վասն զի, ինչպէս պիտի տեսնենք, քանի մ՚անգամ այլեւայլ նման անուանց տակ յարեաւ եւ թաղեցաւ։ 1840ին Թոքէլէի Վարդոյէ ա-նուամբ՝ հայ տառիւ տաճկերէն լեզուաւ կը հրատարակուէր, 1847ին Ցայտարար գիր լրոյ Ֆէնէ Յերոս—Բեանն Օսմանեան

պետալ իւր բնագրին, օտար տէրութեանց անցքերու եւ ազգային իրաց անծանօթ, ինքն իւր մէջն անոճ, անհամ, ցամաք եւ ղուրկ որեւէ յանկուցիչ յատկութենէ։ Այս պարագայից մէջ բնականաբար չունենալով սնունդ՝ ցամաքեցաւ վաղամեռիկ։ Բաց ի Կոստ. Պոլսոյ Հայ լրագրութեան անդրանիկն եւ ազգային առաջին շաբաթերթն ըլլալու պատահական պատուէն՝ ուրիշ առաւելութիւն մը չի ցուցըներ Թագվիմի Վագայի, Լրոյ Գիրը։

## 7. ՀԱՅԵԼԻ

*Կալկաթա:*

Պատմութիւն Հայերէն Դպրութեան կը յիշէ այս ժամանակներն Հնդկահայ գաղթականութենէ ի Կալկաթա հրատարակեալ լրագիր մը Հայելի անուն՝ որ կարճատեւ կեանք է ունեցեր։ Դժբախտաբար չի յիշեր ուրիշ կարեւոր կէտերը։ Մենք բախտ չունեցանք այդ Հայելին դիտելու, ուրիշ կողմանէ ալ տեղեկութիւն մը չունինք։

## 8. ՇՏԵՄԱՐԱՆ

*Ամսաթերթ, Զմիւռնիա, 1839—1854:*
*Խմբ. Բողոքական Միսիոնարք: Տպ. Հոմաս Հալլոք եւ Գոռն. Կոիֆիթ:*

Ամերիկեան բողոքականութեան ի Հայս մուտքն կեանք տուաւ նոր ազգային լրագրոյ մը։

---

անուամբ՝ Հայերէն, 1843ին Ճերիտէի Հավադիս անուամբ՝ Հայատառ տաճկաբարբառ, 1847ին՝ Ցայտարար լրագիր Ջծէ Ցերտաբիանն Օսմանեան անուամբ՝ Հայերէն լեզուաւ։ Վերջապէս Սուրհանդակ Բիւզանդեան անուամբ ալ երեւցաւ։ — Զարմանալի գետնառիւծ։

Որչափ դժուարին էր ի սկզբան բողոքականութեան մուտքն, նոյնչափ կը ճգնէին Ամերիկեան Միսիոնարք — իրենց սովորական կերպովը — Հարթել դժուարութիւնները՝ ծածկելով ամենայն ինչ գիտութեան՝ արտաքնայարդար անկեղծութեան եւ ծառայամտութեան քողին ներքեւ։ Ի՞նչ աւելի կրնար իրենց սկզբունքները մուծանել տակաւին քնացող ազգի մը մէջ, եթէ ոչ յանկուցիչ՝ միանգամայն դիւրագին լրագիր մը։

Ի Զմիւռնիա՝ որ Հայ բողոքականութեան որորոցն եղած է, ամերիկացի բողոքականաց տպարանին մէջ 1839ին Յունուար 1ին լոյս տեսաւ գիտնական հանդէս մը՝ որոյ անուն էր կնքուած՝ Շտեմարան պիտանի գիտելեաց։ Այս հանդէսն ամսական էր, մեծ ութածալ ամբողջ թերթ մը (8 թուղթ), գիրը միջակ, թուղթն ու տպագրութիւնն ըստ բաւականի մաքուր, պատկերազարդ, տարեկան գինն ալ՝ 18 ղուրուշ։ Առանձին խմբագրի մ'անունը մինչեւ վերջը չերեւցաւ լրագրոյն վրայ[1]։ Ա. Տարին Հոման Հալլաք, իսկ անկէ ետեւ Գուլիելմոս Կոքիֆիթ անգղիացիներուն տպարանը կը տպուէր։ Ի սկզբանէ մինչեւ 1842ի վերջը՝ Դ. Տարին՝ անընդհատ շարունակեցաւ։ 1843ին միամեայ հանգիստ առնլէն ետեւ՝ 1844ին Յուլիս 1ին Ե. Տարին սկսաւ շարունակուիլ եւ

[1] Շտեմարանի 1844, թիւ 57ի մէջ կը յիշատակուի միայն՝ թէ Վաղարշակ Սարգիս Յովհաննէսեան "չորս տարի Շտեմարանի գլխաւոր թարգմանիչ„ եղած է։

տեւեց այսպէս մինչեւ 1846 Յուլիս 1, Զ. Տարին[1]: Այնուհետեւ երկայնժամանակեայ դադար մ'ըրաւ[2] մինչեւ 1854 Յունուար 1, երբ Է. Տարին հրատարակեցաւ փոխադրուած ի Կոստ. Պոլիս Ա. Պ. Չըրչիլլին տպարանը: Հոս յաջորդ տարին Շտեմարանն ինչպէս տեղը՝ նոյնպէս դիրքն ու բովանդակութիւնը փոխեց եւ անուանը վրայ նոր յաւելուած մ'առնլով՝ կոչեցաւ Աւետաբեր եւ Շտեմարան պիտանի գիտելեաց, որուն վրայ յետոյ՝ ըստ ժամանակագրական կարգի[3]: Այսպէսով Շտեմարանն 16 տարւոյ միջոցի մէջ (1839—1854) եօթ տարի միայն հրատարակեցաւ:

Եթէ Շտեմարանի բովանդակութիւնն յընդհանուրն դիտենք՝ կրնանք ըսել թէ յաջող էր նոյնին ընտրութիւնն, առատ էր նիւթն եւ բազմադիմի: Քաղաքական մաս մը չունէր ամենեւին,

---

[1] Զ. Հատորին վերջը հրատարակիչը կը ծանուցանէ թէ “Առ այժմ պիտի դադրի ան պատճառաւ որ վերատեսուչս մօտերս Ամերիկա կ'երթայ, ուր որ մէկ տարի կենալու միտք ունի„:

[2] Է. Հատորին 1 Թուոյն մէջ կը ծանուցուի՝ թէ Շտեմարանը “չէ թէ ձեռնտուութիւն չգտնելուն կամ օգտակար ըլլալուն կողմանէ տարակոյս մը ըլլալուն պատճառաւը ընդմիջեցաւ՝ այլ Հրատարակիչին բացակայութեանը, եւ ուրիշ ստիպողական բաներու պատճառաւ՝ որոնց յիշուիլը աւելորդ է„:

[3] Որչափ ալ հրատարակողաց ձեռքն ըլլայ՝ Աւետաբերն իբր շարունակութիւն Շտեմարանի նկատել եւ վերջինոյս տարիներն ալ առաջինոյն տարեաց վրայ յաւելուլ եւ ունենալ այսօր 42ամեայ Աւետաբեր մը, սակայն մեզի — որ պարտական ենք ամէն լրագրական նոր երեւոյթ զատել նախորդէն, մեզի՝ որ կը տեսնենք Աւետաբերի եւ Շտեմարանի մէջ էական զանազանութիւն մը՝ անուան, գրից, բովանդակութեան, — ներելի է Աւետաբերն իբր զատ լրագիր մը նկատել:

այլ՝ ինչպէս կ՚ըսուի Յայտարարութեան մէջ, “իբրեւ բարի եկած հիւր մը„ կը մտնէր ընտանեաց մէջ, բանալով անոնց առջեւ շտեմարան մը կրօնական, բարոյական եւ բնական գիտութեանց հատուածներու՝ պարզ եւ դիւրըմբռնելի ոճով։ Կրօնական յօդուածներ իւրաքանչիւր ամսաթերթի գլխաւոր բովանդակութիւնն էր եւ թերթին կէսն եւ աւելին կը գրաւէր. աստուածաշնչի եւ բողոքական վարդապետութեանց վրայ երկայն՝ անհամ եւ անլի քարոզներ ամէն թերթի վրայ կ՚երեւային, ինչպէս մինչեւ ցայսօր նոյն երեւոյթը տակաւին գլխաւոր նկարագիրն է հայ-բողոքական լրագրութեան։ Բարոյական յօդուածներն ուրիշ բան չէին՝ եթէ ոչ կարճ առածներ, առաքինութեանց յորդորներ կամ օրինակներ։ Իսկ գիտնական հատուածներն գրեթէ միշտ բնապատմական եւ աշխարհագրական էին։ Իւրաքանչիւր Տարին իբր 30 պատկեր — աւելի բնապատմական եւ աշխարհագրական — կը բովանդակէր։ Պատկերներն՝ որ Բ. եւ յաջորդ Տարիներն աւելի յաջող եղած էին, Է. Տարին բոլորովին անհետ եղան Շտեմարանէն։

Շտեմարանն որչափ եւ կը ջանար իւր ուղղութիւնն ի սկզբան ծածկել, սակայն արդէն Ա. Տարւոյն մէջ գոյնն սկսաւ ցուցընել, ծածուկ եւ անզգալի օրինակաւ բողոքական սկզբունքներ գեղեցիկ գունոց ու պատմութեանց տակ ծածկել, եւ կաղ ի կաղ յառաջ երթալով՝ անուանա-

փոխութեան ժամանակ արդէն բողոքականաց պաշտօնական լրագիրն եղած էր։ Շրէմուրեանն որչափ ալ թերթեւագիրն էր, իւր այս ուղղութեան պատճառաւ ազգին ընդհանրութեան առջեւ ընդունելութիւն չգտաւ։

Շրէմուրեանն իրաւունք ունի պարծելու իբրեւ անդրանիկ ի մէջ հայ լրագրաց Ջմիւռնիոյ՝ որ Տաճկահայոց մէջ Կոստ. Պոլսէն ետքն առաջին հարուստն է հայ լրագրութեամբ։ Սակայն հայ գիտնական հանդիսից հայր ըլլալու նախապատուութիւնն՝ որչափ եւ պահանջուի, չենք կրնար տալ, ցորչափ ունինք իրմէ յառաջ Տօրէկրօ–Նէ–Ն եւ Եղանոյ Բէ–ղանդեան։ Առաջին անգամ Շրէմուրեանն յղացաւ գեղեցիկ խորհուրդ մը՝ պատկերազարդ լրագիր մ'ընծայելու ազգին։ Եւ որ աւելին է՝ մեծ արդիւնք ունեցած է արդի լեզուին զարգացման պատմութեան մէջ։ Մինչեւ իւր օրերն հրատարակուած լրագրաց մէջ ինքն առաջին անգամ կը սկսի խնամք մը ցուցընել Տաճկահայոց լեզուն մաքրելու եւ զտելու, կը ճգնի օտարազգի բառերն լրագրաց հորիզոնէն մերժել եւ հայերէն ընտիր բառեր (տաճկերէնով հանդերձ) դնել,[4] եւ ի հարկաւորութեան՝ նաեւ հնարել։ Բայց շարագրութիւնը միշտ տաճկերէն երանգով մնաց, քերականական մասին ալ ժամանակին վրիպանաց հետեւելով։

Չենք կրնար երբ մէկ կողմանէ Շրէմուրեանի առաւելութիւնները կը տեսնենք միւս կողմանէ

փակել մեր աչքն այնպիսի էական եւ խրատու-
ցիչ թերութեան մ'առջեւ, որ — ոչ, լոկ Չրե-
ժուրանի մէջ չէ, այլ — բովանդակ Հայ-բողոքա-
կան լրագրութեան մէջ մինչեւ ցայսօր կ'երեւայ։
Եւ այս այնպէս՝ որ եթէ ըսենք թէ Հայ-բողո-
քական լրագրութիւնն՝ որ գրեթէ կէս դարէ ի
վեր ի գոյութեան է, ամենեւին յառաջադիմու-
թիւն չէ ըրած, չափազանց խօսած չենք ըլլար։ Եւ
ի՞նչ է այս թերութիւնը։ — Ըսելու պէտք չկայ,
ով որ Չրեժուրան մը եւ անկէ ետեւ Հրատարա-
կեալ Հայ-բողոքական լրագիր մը ձեռք առնու, կը
գտնէ։ Կարծես երկուքն ալ նոյն տարիներու, նոյն
ժամանակի գործեր են, նոյն գրչի, նոյն Հոգւոյ,
երկուքին ալ բովանդակութիւնը նոյն, ոճը նոյն։
Երկուքն ալ ժամանակակից ազգային խնդրոց,
ժամանակին պիտոյից անծանօթ, երկուքն ալ չեն
գրեր ազգին որեւէ մէկ իրին վրայ, եւ կամ եթէ
գրեն, այնպէս ցանցառ եւ Հարեւանցի՝ որ գի-
սաւորի մը պէս Հազիւ տարիներու մէջ անգամ
մը կ'երեւայ։ Երկուքն ալ թարգմանաբար, եւ
գրեթէ նոյն թարգմանաբար կը սպառեն ինչ
որ անգղիական լրագրական շուկայն կը մատա-
կարարէ, եւ չեն ըմբռնած ցայսօր՝ թէ Հայ ըն-
թերցողն ինչ քաղցրութեամբ կ'ընթեռնու յօ-
դուած մը՝ երբ գիտէ թէ ինքնագիր է եւ Հայ
մտաց ծնունդ։ Երկուքն ալ վերջապէս իրենց ըն-
թերցողաց շահուն՝ մտաւորական օգտին եւ բազ-
ձանաց անփոյթ՝ կ'երգեն միաձայն (monotone)

ինչ որ սկսած են մի անգամ երգել, փոյթ չէ՝ թէ ոչ ոք մտիկ կ՚ընէ։ Բայց ի քանի մը գիտնական փոքրիկ հատուածներէ՝ որ լրագրական տիրող օրինաց համեմատ իբրեւ Այլեւայլք կամ Խառն լքեր պէտք էին լրագրին աւելորդ մէկ մասը գրաւել եւ սակայն գլխէն մինչեւ ոտքը հիւսուած ու մանուած կ՚երեւան, չկայ յօդուած մը՝ զոր ընթեռնուլ հետաքրքրութի թերթը ձեռք առնողն եւ կամայ ակամայ քերնէն՝ Ցուցք է մը փախցընելով մէկ դի չդնէ։ Ըսե՛նք ուրեմն միով բանիւ, որ Հայ-բողոքական լրագրութիւնը կ՚ապրի (շնորհիւ ամերիկեան եւ անգղիական ոսկիներու) ոչ թէ ազգին մէջ, այլ հեռու յԱնգղիա, եւ աւելի հեռու յԱմերիկա, կ՚ապրի ոչ յօգուտ ազգին, այլ բողոքականութեան, կ՚ապրի իբր կիսալոյս մոլորակ մը՝ ոչ թէ Հայը լուսաւորելու՝ այլ աւելի բողոքականութիւնը ցոլացընելու համար։

Անցեալն՝ անցեալ է։ De mortuis nil nisi bene. Մենք խոստովեցանք շատ եւ շատ, յորդորենք միայն՝ թողուլ այսուհետեւ ցուրտ եւ անհամ ոճն ու գրութիւնը, եւ ազգին՝ աղէտայքն ուսումն ու կրթութիւն տալ, մշակելով ազգին հետ յարաբերութիւն ունեցող որեւէ ճիւղ մը։ Հրապարակագրաց ձեռքն է որոշել ազգի մը ճակատագիրն՝ երբ ազգը լրագրութենէ զատ հասարակաց բեմ մը չունի խօսելու եւ լսուելու։



## Բ. ՇՐՋԱՆ

### 1840ԷՆ ՄԻՆՉԵՒ 1860:



Գրեթէ կէս դարու շրջան մը հատանք անցանք. Նկատեցինք Հայ լրագրութեան ծնունդն ու սերունդը։ Կրնանք այժմ նոյն ճամբան փորձառու աչօք դիտել։ Տեսանք մեծ շրջանի մէջ փոքր ձեռնարկութիւններ. փորձեր՝ որ տակաւին անուսումն ժողովրդեան մէջ արձագանգ չգտան։ Եւ այլազգ ալ կարելի չէր։ Վասն զի եթէ դարուս սկիզբներն զմեզ տանինք եւ նկատենք Հայ ազգին հոգեկան եւ նիւթական դիրքն ու վիճակը, կը գտնենք որ այն ատեն ազգն լրագրասէր չէր կրնար ըլլալ։ Ուսումնականութիւնն յանձնուած բոլորովին ազգին եկեղեցական դասուն, թէ Տաճկաստան եւ թէ Ռուսաստան ուսումնարանք հազիւ նոր կեանք առած եւ սակաւաւոր թուով, կրօնական խռովութիւնք եւ կռիւք ամէն միտք գրաւած, հաղորդակցութիւնն՝ — լրագրութեան կենսական զօրութեան էական մասն, — զուրկ ամէն դիւրութենէ, այս ամենայն չէր ներեր ազգի մը՝ լրագրութեան զբաղելու։

Ի՞նչ էր անցեալ շրջանին նկարագիրը։ — Թեթեւ մտագրութիւն մը կը տեսնէ որոշ՝ կըրկնուած միեւնոյն երեւոյթն որ կայ մեր հին գրականութեան մէջ։ Եկեղեցական դասն՝ ինչպէս մեր գրականութեան ի սկզբանէն վեր, հոս ալ ինքն է դարձեալ գլուխ եւ առաջնորդ, ինքն է հայ լրագրութեան կեանք տուողն եւ առաջին տկարութեան տարիները սնուցանողն ու աճեցնողը։ Երկրորդ երեւոյթ մը՝ որ յաջորդ շրջաններու ընդդիմապատկերն է, այն է՝ որ կարծես այս հայերէն լրագիրներն Հայոց համար չեն. չես գտներ ընդհանրապէս, որչափ եւ հետազօտես, ազգային ներքին կամ արտաքին կենաց նշմարանք մը, ժամանակակից ազգային պատմութեան գէթ դոյզն արահետ մը, ազգային գրական կամ պատմական յիշատակարանաց փոքր յիշատակութիւն մը։ Երրորդ երեւոյթն այն է՝ որ այս լրագրաց ձեռնարկուք ընդհանրապէս չէին ըմբռնած, ինչպէս ցայսօր սակաւք կ՚ըմբռնեն, լրագրին տալ որոշ ուղղութիւն մը։

Այսպէս մեր լրագրութիւնն իւր առաջին դարուն առաջին կէսը տակաւին մանկութեան տխեղծ հասակին մէջ անցուց, չցուցուց յառաջդիմութեան մեծ ճիգ մը՝ մանաւանդ թէ իւր տկար ընթացքին մէջ շատ անգամ ալ կասեցաւ, եւ մէջ ընդ մէջ նաեւ երկայնժամանակեայ լռութիւն տիրեց հայ լրագրական աշխարհին վրայ։ Սակայն 1840էն ետեւ՝ կարծես մի

անգամ ընդ միշտ արթնցաւ ազգիս լրագրական պիտոյից զգածումն, եւ այնուհետեւ իւրաքանչիւր տասնեկին նոր զօրութեամբ նոր նոր ձեռնարկութիւնք սկսան, մինչեւ կրնայ ըսուիլ՝ որ քիչ ժամանակի մէջ լրագրաց հեղեղ մը սակաւաթիւ ազգն ողողեց: Սակայն աւաղ որ այս հեղեղն թէեւ արագ սկսաւ աճիլ եւ ստուարանալ այլեւայլ մասնական առուակներու միահամուռ գումարմամբ, այլ եւ նոյնին արագութեամբ նուազեցաւ, եւ հազիւ քանի մը ճիւղ կրցաւ այն բազմութեան մէջէն ինք զինք հաստատուն պահել եւ տոկալ ընդ երկար: —

Բ. Շրջանին դուռը կը բանայ՝

## 9. ԱՐՇԱԼՈՅՍ ԱՐԱՐԱՏԵԱՆ

*Երկշաբաթաթերթ, Զմիւռնիա, 1840—1886:*
*Խմբ. Ղուկաս Պ. Պալդազարեան:*
*Տպ. Ստեփանոս Պապօեանց:*

Եկանք հասանք լրագրոյ մը՝ որ իւր 46ամեայ պատկառելի հասակին մէջ ազգին հին եւ նոր կեանքը տեսաւ, գործակից եւ տածիչ եղաւ ազգին արդի կենդանութեան եւ լուսաւորութեան, անսասան այրեցաւ բարեկամ եւ հակառակորդ լրագրաց հետ, քաջալերեց զանոնք եւ քաջալերեցաւ: Սակայն եղծագործ ժամանակն՝ որ ամենայն ինչ ոչնչացընելու անյաղթ զօրութիւն ունի, չխնայեց իրեն ալ. հարկ եղաւ որ Արշալոյս Արարատեանն ալ շատերուն պէս տեսնէ

իւր վերջալոյսն՝ գրեթէ կէս դար Հայ աշխարհը լուսաւորելէն ետեւ։

Զմիւռնիոյ օտարալեզու լրագրութեան օրինակն արդէն 1830էն յառաջ վառած էր ժամանակին Հայ երիտասարդութիւնն՝ յատուկ ազգային լրագրոյ մը կեանք տալու։ Բաղձանքները սաստկացան, յորդորները բազմացան, եւ ահա տեղւոյն երիտասարդներէն մին՝ Ղուկաս Գ. Պալդազարեան "ազգասէր բարեկամներէն բաւական քաջալերութիւն ընդունելով ըստ ամենայն մասին„, ինչպէս կ'ըսէ Արշալոյս Արարատեանի Ցայտարարութիւնն, ձեռք զարկաւ ամենայն հաստատութեամբ Զմիւռնիոյ սեպհական ազգային լրագրոյ՝ որ ստուգիւ յարմար եւ յարատեւ ձեռքի յանձնուած էր։ 1840 Օգոստ. 10ին շաբաթ օրն Ստեփանոս Պապօեանցի տպարանին մէջ ծնաւ վերջապէս Ղ. Գ. Պալդազարեանի մտաց ծնունդն՝ որուն անուն տրուեցաւ Արշալոյս Արարատեան, Օրագիր Քաղաքական, Բանասիրական եւ Առեւտրական։ Ասոր դիրքն էր այժմու սովորական քաղաքական լրագրաց դիրքն՝ եռիջեան լրագրական միածալ թերթ մը (2 թուղթ), գիրը բաւական մեծ եւ խառն այլեւայլ տեսակ գրերէ. եւ այս գիրքը պահեց մինչեւ վերջը։ Գինն էր 120 ղուրուշ, լեզուն՝ աշխարհաբար, թուղթն ու տպագրութիւնը բաւական մաքուր։ Բովանդակութիւնը բնականապէս ի սկզբան անկատար կը համապատասխանէր վերնագրոյն։ Առաջին երկու

տարիներն առանց որոշ կարգի մը՝ այլեւայլ տէ-րութեանց քաղաքական լուրերը զատ զատ գլխոց տակ կ՚աւանդուէին, բայց աւելի Կոստ. Պոլսի եւ Զմիւռնիոյ վրայ կը խօսուէր. առեւտրական լուրեր միշտ կը տրուէր, իսկ բանասիրական յօդուած-ները շատ ցանցառ եւ ցամաք էին։ 1842 Նոյեմ-բերէն եռեւ աւելի կանոնաւոր բաժանումներ դրուեցան, որ եւ 1850էն ետքը դարձեալ ա-ռաջին ձեւին դարձաւ, թէպէտ նոյն նիւթերը կամ բովանդակութիւնը պահելով։

Արշալոյս Արարատեանի այս կանոնաւոր բա-ժանումն էր՝ Ներքին լուրեր, Արտաքին լուրեր եւ Զանազան լուրեր։ Ասոնց վրայ կ՚աւելնար ամէն թուոյ մէջ՝ Առեւտրական լուրեր։ Առաջնոյն տակ գիտէր ճարտար հրապարակագիրն բովանդակել Օսմանեան պետութեան քաղաքական լուրերն, եւ ի մասնաւորի՝ իւրաքանչիւր գլխաւոր քաղաքաց լուրերը կը հաղորդէր։ Երկրորդ գլուխը կը բովան-դակէր Եւրոպայի գլխաւոր տէրութեանց քաղա-քական անցքերն ու լուրերը։ Երրորդ գլուխը կը զբաղէր գլխաւորաբար Զմիւռնիոյ տեղական եւ այլ ազգային լրագիրներէ քաղեալ լուրերով։ Իւրաքանչիւր թերթն ունէր ի սկզբանէ անտի գլուխ մը՝ առաջին երեսին վարի կողմն՝ Բանասիրական վերնագրով, որուն մէջ ուսումնական, բարոյա-կան հատուածներ, վէպեր, պատմութիւններ նաեւ ազգային տեղագրութիւններ, ստանաւոր-ներ եւ ճառեր կը զետեղուէր։ Վերջին գլուխն

իւր վերջալոյսն՝ գրեթէ կէս դար Հայ աշխարհը լուսաւորելէն ետեւ։

Զմիւռնիոյ օտարալեզու լրագրութեան օրինակն արդէն 1830էն յառաջ վառած էր ժամանակին Հայ երիտասարդութիւնն՝ յատուկ ազգային լրագրոյ մը կեանք տալու։ Բաղձանքները սաստկացան, յորդորները բազմացան, եւ ահա տեղւոյն երիտասարդներէն մին՝ Ղուկաս Գ. Պալդազարեան "ազգասէր բարեկամներէն բաւական քաջալերութիւն ընդունելով ըստ ամենայն մասին", ինչպէս կ'ըսէ Արշալոյս Արարատեանի Յայտարարութիւնն, ձեռք զարկաւ ամենայն հաստատութեամբ Զմիւռնիոյ սեպհական ազգային լրագրոյ՝ որ ստուգիւ յարմար եւ յարատեւ ձեռքի յանձնուած էր։ 1840 Օգոստ. 10ին շաբաթ օրն Ստեփանոս Պապօեանցի տպարանին մէջ ծնաւ վերջապէս Ղ. Գ. Պալդազարեանի մտաց ծնունդն՝ որուն անուն տրուեցաւ Արշալոյս Արարատեան, Օրագիր Քաղաքական, Բանասիրական եւ Առեւտրական։ Ասոր դիրքն էր այժմու սովորական քաղաքական լրագրաց դիրքն՝ եռիջեան լրագրական միածալ թերթ մը (2 թուղթ), գիրը բաւական մեծ եւ խառն այլեւայլ տեսակ գրերէ. եւ այս դիրքը պահեց մինչեւ վերջը։ Գինն էր 120 ղուրուշ, լեզուն՝ աշխարհաբար, թուղթն ու տպագրութիւնը բաւական մաքուր։ Բովանդակութիւնը բնականապէս ի սկզբան անկատար կը համապատասխանէր վերնագրոյն։ Առաջին երկու

տարիներն առանց որոշ կարգի մը՝ այլեւայլ տէրութեանց քաղաքական լրերը զատ զատ գլխոց տակ կ՚աւանդուէին, բայց աւելի Կոստ. Պոլսի եւ Զմիւռնիոյ վրայ կը խօսուէր. առեւտրական լրեր միշտ կը տրուէր, իսկ բանասիրական յօդուածները շատ ցանցառ եւ ցամաք էին։ 1842 Նոյեմբերէն ետեւ աւելի կանոնաւոր բաժանումներ դրուեցան, որ եւ 1850էն ետքը դարձեալ առաջին ձեւին դարձաւ, թէպէտ նոյն նիւթերը կամ բովանդակութիւնը պահելով։

Արշալոյս Արարատեանի այս կանոնաւոր բաժանումն էր՝ Ներքին լուրեր, Արտաքին լուրեր եւ Զանազան լուրեր։ Ասոնց վրայ կ՚աւելնար ամէն թուոյ մէջ՝ Առեւտրական լուրեր։ Առաջնոյն տակ գիտէր ճարտար հրապարակագիրն բովանդակել Օսմանեան պետութեան քաղաքական լրերն, եւ ի մասնաւորի՝ իւրաքանչիւր գլխաւոր քաղաքաց լրերը կը հաղորդէր։ Երկրորդ գլուխը կը բովանդակէր Եւրոպայի գլխաւոր տէրութեանց քաղաքական անցքերն ու լրերը։ Երրորդ գլուխը կը զբաղէր գլխաւորաբար Զմիւռնիոյ տեղական եւ այլ ազգային լրագիրներէ քաղեալ լրերով։ Իւրաքանչիւր թերթն ունէր ի սկզբանէ անտի գլուխ մը՝ առաջին երեսին վարի կողմն՝ Բանասիրական վերնագրով, որուն մէջ ուսումնական, բարոյական հատուածներ, վէպեր, պատմութիւններ նաեւ ազգային տեղագրութիւններ, ոտանաւորներ եւ ճառեր կը զետեղուէր։ Վերջին գլուխն

Աւետարանական Լուրեր վերնագրով՝ աւելի միայն Զմիւռնիոյ առեւտրական իրաց գիները կը դնէր։ Այսպէս Արշալոյս Արարատեանն Զմիւռնիոյ Հայոց սեպհական լրագիրն էր եւ ընթերցողաց մեծամասնութեան տենչանաց լիովին կը համապատասխանէր։ Եւ իրօք 1850ին, Օգոստ. 18ին, լրագրոյն ԺԱ. Տարեշրջանին՝ Արշալոյս Արարատեան անուան տակ դրուեցաւ Օրագիր Զմիւռնիոյ, եւ այնուհետեւ սկսաւ նախ Զմիւռնիոյ լրերն հաղորդել։ 1862էն ետեւ ազգային նիւթերն Աշխոյին վերնագրոյն տակ կը զետեղուէր, որոնք ուրիշ բան չէին, եթէ ոչ ժամանակակից ազգային կրօնական եւ քաղաքական խնդիրներ։

Արշալոյս Արարատեանն ի սկզբան երկշաբաթաթերթ էր. բայց խմբագիրն Յայտարարութեան մէջ արդէն խոստացած էր՝ քանի մ'ամսէն շաբաթական ընել իւր թերթն, եւ իրօք նոյն տարին (1840) Նոյեմբեր 20էն ետքը շաբաթաթերթ եղաւ եւ հետզհետէ զարգանալով՝ այնչափ յառաջ գնաց՝ որ 1844 Մայիս 20ին ունեցաւ սեպհական տպարան՝ Տպարան Արշալոյս Արարատեան անուամբ, եւ հոն սկսաւ տպուիլ։ Յաջող էր ամենայն ինչ. սակայն 1845ի (Յունիս 21) Զմիւռնիոյ մեծ հրդեհը չխնայեց Արշալոյս Արարատեանի տպարանին, այրեց մոխիր դարձուց հայ ձեռքին այս մեծ ձեռնարկութիւնը։ Անխոնջ Պալտազարեան ասկէ ալ չյուսահատեցաւ, եւ առանց ընդհատելու՝ նոր տպարան բա-

նալով՝ սկսաւ դարձեալ շարունակել, սակայն յետոյ հետեւ երկու շաբաթն անգամ մը, եւ մնաց այնպէս մինչեւ վերջը։

Այսպէս այս յօրինուածով շարունակեցաւ Արշալոյս Արարատեան անընդհատ՝ — որ ազգային լրագրաց մէջ հազուագիւտ յատկութիւն մըն է, — ժամանակին պահանջմանց յարմարիլ ջանալով։ Իրեն սկզբունք դրած էր՝ Հայրենասիրութիւն, Ուսումնասիրութիւն եւ Եղբայրսիրութիւն, զոր եւ գրեթէ ամէն տարեգլխոյն հրապարակաւ կը դաւանէր։ Գ. Պալդազարեան թէեւ երկայն ժամանակ վարիչ էր Զմիւռնիոյ Մեսրոպեան վարժարանի եւ գահերէց այլեւայլ ազգային ընկերութեանց, անփոյթ չէր եղած երբեք իւր թերթը կատարելագործելու, մինչեւ որ անգութ մահը կորզեց բազմամեայ ծերունւոյն արդիւնաշատ կեանքը։

Իրմէ ետքն Արշալոյս Արարատեան յանձնուեցաւ Ցարութիւն Սըվաճեան գիտնական եւ համարձակագիր երիտասարդին՝ որ ոչինչ նուազ քան զիւր նախորդն ցուցուց իւր հաստատուն նկարագիրը, գրեց ու պաշտպանեց իւր կարծիքներն վերջին ազգային խնդրոց մէջ։ Բայց աւա՜ղ որ միշտ ստուգուած է հին լատին հեղինակի մը խօսքն՝ թէ "Անմտութիւն է քննադատել զայնպիսիս՝ որոց ականջք արագ են ի լսել եւ ձեռք՝ հզօր ի հարկանել։ Հզօրք դժուարաւ առնուն

յանձն թշնամանս կրել [1]»։ — Կառավարու-
թիւնը 1886ին թէ դադրեցուց զԱրշալոյս Արարա-
տեան՝ թերթագրութեամբ հակառակորդաց, եւ թէ
բանտարկեց զխմբագիրն, որուն անմեղութիւնը
թէեւ քիչ մ'ետքը ճանչցուեցաւ եւ արձակուե-
ցաւ բանտէ, բայց Արշալոյս Արարատեան չկրցաւ
վերստին հրատարակուիլ, հիւանդոտ խմբագիրն
ալ 1887 Մարտ 1ին կնքեց իւր մահկանացուն։

Մենք զԱրշալոյս Արարատեան ամենայն իրաւ-
ամբք հիմն դրինք պատմութեանս Բ. Շրջանին.
վասն զի ճշմարիտ արշալոյսն էր հայ լրագրու-
թեան։ Իրմէ յառաջ երեւցած հայ լրագիրներն
իբրեւ աստղ գիշերոյ՝ իրենց տկար լուսովն, կար-
ճատեւ կենօքն լոկ զարդ մըն էին հայ ազգին,
եւ Արշալոյս Արարատեանի ծագման ժամանակ ար-
դէն նսեմացած էին եւ մեկնած լրագրութեան
հորիզոնէն։ Ի ծագել Արշալուսոյ Արարատեան՝ Նոր
կեանք կը սկսի. թէեւ ի սկզբան աղօտ իմն կը
լուսաւորէր հայ աշխարհն, սակայն ի սուղ ժա-
մանակի պայծառացաւ հետզհետէ, եւ շնորհիւ
իւր բազմաթիւ թղթակցաց՝ որ ամենայն համա-
կրանօք կ'ուղղէին իրեն տեղական լրեր, կրցաւ
ի Ճենաստանէ մինչեւ յԱւստրիա ցրուեալ ազ-
գայիններն իրարու հաղորդել։ Ճենաստանի Գան-
դոն քաղաքէն՝ ուր երբեմն հայ վաճառատունք

---

[1] Inconsulta in eos mittitur censura, quorum, ut longae sunt ad audiendum aures, ita graves ad feriendum manus. Potentes aegre se tangi sinunt impune.

կայքին եւ ցարդ կան, Հնդկաստանի, Պարսկաստանի, Ռուսաստանի, Վրաստանի, Հայաստանի, Տաճկաստանի, Եգիպտոսի, Իտալիոյ, Գաղղիոյ եւ Աւստրիոյ քաղաքներէն բազմաթիւ թղթակցութիւնք[1] ցրուած կան Արշալոյս Արարատեանի 45ամեայ կենացը մէջ։ Առաւել քան զամենայն Հնդկահայ գաղթականութեանէն ունեցած բազմաթիւ թղթակցութիւնքն (— միշտ գրաբար —) որ 1855—1872 տարիներու մէջ են, անգին գանձ են Հնդկահայ գաղթականութեան պատմութեան՝ որ ցայսօր մթին է մնացած։ Մարդ այն անյագ ցանկութեամբ՝ բայց ցաւով կը կարդայ հոն Հնդկահայոց մտաւոր եւ նիւթական յառաջադիմութեան հետ, (մինչեւ իւրաքանչիւր հայ վաճառական կ՚ունենայ շատ նաւեր,) նաեւ ներքին անընդհատ երկպառակութիւններն, որ եւ վերջապէս պատճառ եղած են այսօրուան թշուառ անկածութեան։ Արշալոյս Արարատեան եղաւ քաջալեր բազմաթիւ լրագրաց Զմիւռնիոյ, որք չքեղ հրախաղուց պէս մի զմիոյ կնի հայ հորիզոնին վրայ կը բարձրանային եւ վաղ կամ անագան նսեմացած կ՚իջնային, մինչդեռ ինքն նոյնին պայծառութեամբ կը գիտէր անոնց ծագումն ու շիջումն, եւ կը քաջալերէր ինք զինք։ Տարածուած էր ամէն կողմ, Եւրոպացւոց առջեւն իսկ յարգ ունէր, մինչեւ ի Լայբցիկ Պրոֆհաւսի տպարանն

[1] Այս թղթակցութեանց մեծագոյն մասն գիտնական եւ պատմական արժէք ունի։

լոյս տեսած խօսակցութեան-բառգրքին Տասներորդ տպագրութեան մէջ կը կարդանք դեռ 1855ին, որ "Արշալոյս Արարատեան մեծ եւ շատ տարածեալ թերթ մըն է"[1]: Հայ գաղթականութեան ամէն երկիրներէն ունէր բազմաթիւ բաժանորդ, եւ նոյն իսկ Օսմանեան պետութենէն ժամանակ մը նպաստ կ'ընդունէր:

Արշալոյս Արարատեանի բովանդակութեան այն մասերն՝ որ ազգային գիտութեան կը հային, կը դնենք հոս. նոյնը պիտի ընենք նաեւ այլ լրագրաց ըստ կարգին: Վասն զի այսպիսի կարեւոր տեղեկութիւնք կը կորսուին լրագրաց մէջ:

Բանասիրական յորդոր, ու մեր ազգի մայր դպրատուններուն վրայ ծանօթութիւն. Արշալոյս, 1840, Թ. 5:

Հայազգի իշխանազունք Վրաստանու, 1841, Թ. 32:

Համառօտ տեղեկութիւն Հայոց ազգին սկզբնաւորութեան վրայ, 1842, 71:

Ծանօթութիւն Կալկաթայի Հայոց վրայ, 1842, 72:

Տ. Յովլ. Քաբէլլէթթի քահանային Լ'Արմենիա ըսուած աշխատասիրութեանը վրայով, 1842, 107—158:

Միւնեաց երկրին վրայ, 1843, 124, 126, 136, 139:

Դիտողութիւնք Հայոց լեզուին վրայ, 1843, 130, 131:

Պ. Աղէքսանդր Ռաֆայէլ Ղարամեան, 1843, 142:

Յովհ. Տատեան, վառօդապետ, 1844, 174, 175:

Համառօտ նկարագիր վարուց Աստուածապ. Հայրապետին Ներսեսի, 1844, 201:

Հրովարտակք ինչ Ռուսաց կայսեր առ Ներսէս Կաթողիկոս, 1844, 207:

Կանոնք Մարդասիրական ճեմարանին Հայոց որ ի Կալկաթա, 1844, 208—210:

Օրինակ կտակի Բաբաջանի, կամ Մարտիրոսի որդի Մասեհի Համադանցւոյ, 1847, 276, 277:

---

[1] Conversations-Lexikon, Leipzig, F. A. Brockhaus, 1855, ի բառն Zeitungen.

*Հայկական հին դրամ արծաթի՝ արքայի արքայից Արտաւազդայ Ա. Արշակունւոյ*, 1851, 386։

*Ագաթանգեղոս, Բուզանդ, Կորիւն, Եղիշէ, Խորենացի, եւայլն*, 1851, 397, 403—408։

*Աշխարհաբար լեզու*, 1852, 413, 414։

*Թուղթ Աղեքսանդր կաթողիկոսի առ Կղեմէս Պապ*, (*Ձեռագիր Նոր-Ջուղայ*։) 1857, 554։

*Ամստերդամի Հայոց Եկեղեցին*, 1860, 632։

*Կանոնադրութիւնք «Մանուկ եւ Յարութիւնեան Ուսումնարանին» Բաթավիայ*, 1861, 662։

*Դատաստանագիրք* (*Մխիթարայ Գոշի*), 1862, 688։

*Թուղթ Փիլիպպոս կաթողիկոսի առ Իննովկ. Ժ.*, 1862, 690։ — *Ձեռագիրք ինչ Նոր-Ջուղայի*, 1862, 691։

*Վիպագրութիւն եպիսկոպոսաց Ամենափրկչեան վանուց Նոր Ջուղայու*, 1865, 758։

*Վասն յերկուս գիրս առ ի Հեբրայեցւոց պատմութեանն բաժանելոյ*[1], 1867, 811։

*Պատմութիւն վարուց Միքայէլի Նալբանդեանց*, 1887, 819։ — *Ձեռագիրք ինչ*, 1868, 845։

*Դաշանց թղթոյն վրայ*, 1869, 863։

---

[1] *Այս ձեռագիրն մտադրութեան արժանի է։ Աստուածաշնչի Զօհրապեան տպագրութեան* (1805 *Վենետ.*) *Բ. հատորին սկիզբն Թագաւորութեանց Նախադրութեան տակ ծանօթութիւն մը կը դրուի՝ թէ «Ի գրչագիր օրինակս մեր յառաջ քան զայս Նախադրութիւն գտանի եւ այլ՝ մակագրեալ,* [illegible]*, զորմէ ակնարկի յառաջիկայդ լինել որոգինեայդ»։ Արդ, Ա. Մուրատեան անուն անձ մը ի Գահիրէ կը գտնէ քանի մ'երես հին ձեռագիր մագաղաթի վրայ եւ ընդօրինակութիւնը կը յուղարկէ Արշալուսոյ ի հրատարակութիւն։ Այս ձեռագիրն է յիշեալ* [illegible]*, բայց այս վերնագրով՝ Վասն ի յերկուս գիրս, եւայլն։ Այս յառաջաբանն, ինչպէս լեզուն կը վկայէ, Ե. դարու թարգմանութիւն է, զոր Ոսկան չունենալով՝ իւր Աստուածաշնչին յառաջաբանին մէջ կը թարգմանէ լատին բնագրէն իւր աղաւաղ լեզուաւ, եւ կը տպէ դարձեալ Մխիթար Աբբահայր իւր Աստուածաշնչին ետեւն՝ այս վերնագրով. Ջերօնիմոսի* [illegible]*։ Այս ձեռագիրն Վենետիկի ձեռագրաց մէջէն կը գտնէ նաեւ Բազմավէպի մէջ* (1877, *էջ* 202) *Հ. Ա. Սուքրեան՝ համարելով նոյնպէս Որիգենեայ։ Սակայն յայտնի է որ այս յառաջաբանն չէ Որիգենեայ, այլ Ս. Յերոնիմոսի, որուն լատին բնագիրն* Vulgata*ի սկիզբն կը դրուի այս վերնագրով.* In totam Scrip-

Որչափ ալ Արշալոյս Արարատեան ազգիս կրօնական մէկ մասին դրօշին կը զինուորէր եւ անոր դատը կը պաշտպանէր կրօնական խնդրոց մէջ՝ երբեմն նաեւ խծբծելով հակառակորդ կողմը եւ անպատեհ հատուածներու մուտ շնորհելով, սակայն համեմատութեամբ այլ Հայ լրագրաց ժամանակին՝ յայսմ մասին բաւական հանդուրժող էր եւ գիտէր լրագրական քաղաքավարութիւն, եւ ընդհանրապէս անկողմնակալութեամբ ժամանակակից լրագրաց ծնունդը կը ծանուցանէր ուրախութեամբ, եւ մահը՝ ցաւով[1]։

Արշալոյս Արարատեան վերիվայր կը պահանջէ Հայ լրագրաց անդրանիկն ըլլալու իրաւունքն. զոր անշուշտ մեր ընթերցողն չէ շնորհեր իրեն։ Սակայն կան ուրիշ յատկութիւններ՝ զոր պարտական ենք տալ։ Հայ լրագրաց մէջէն Արշալոյս Արարատեան կը սկսի առաջին անգամ ազգային ամենօրեայ դիպաց, Հայ ժողովրդեան կենաց մօտենալ եւ ազգին առտնին եւ արտաքին

---

turam Prologus Galeatus. Արշալոյսի մէջ հրատարակեալ այս ձեռագիրն կը լրացընէ Բողոմոլեցի հրատարակածն եւ փոխադարձաբար կ՚ուղղուի անկէ իւր անուղիղ ընթերցուածքն։ Լատին բնագրին վերջին մասն՝ որ ընթերցողին ուղղեալ խօսք մըն է, որովհետեւ իրին էութեան չի վերաբերիր, կ՚երեւայ թէ հին թարգմանիչն արդէն դիտմամբ զանց առած է։

[1] Յայսմ մասին մենք՝ որ ուզած ենք Հայ լրագրութեան պատմութիւնը փոքր ինչ հետազօտել, շատ՝ եւ շատ մեծ շնորհակալութիւն պարտական ենք իրեն։ Այնպիսի լրագրաց անուանք եւ այլ ամենայն տեղեկութիւնք, որ ուրիշ տեղ հետք մ՚անգամ չեն թողած, հոս Արշալոյս Արարատեանի մէջ կը յիշատակուին բաւական մանրամասնութեամբ։

կենաց ծածկը մերկանալ. իրմով այս կէտն այնպէս զարգացաւ Հայ լրագրաց մէջ, որ հետզհետէ ամէն խմբագրական զօրութիւն յինքն ձգեց: Եւ ստուգիւ Արշալոյս Արարատեան ազգին հին ու նոր կեանքն անընդհատ նկատելու մի միակ հայելին է: Ծանուցմունք (annonces), որ այս օրս եւրոպական լրագրաց մէջ մեծ նշանակութիւն առած են[1] եւ մեր քով տակաւին աննշանակ մնացած, Արշալոյս Արարատեանի էջերուն մէջ նախ կը սկսին երեւալ: Զլռենք նաեւ Արշալոյս Արարատեանի լեզուին պարզութիւնն ու կոկութիւնը:

Մեր լրագրական Արշալոյսն աչքէ կորուսած ժամանակ՝ չենք կրնար անցնիլ առանց ապահովելու զԶմիւռնիացի Հայս՝ որ Արշալոյս Արարատեան իրենց նախնի գրասիրութեան պատկառելի յիշատակ մը պիտի մնայ միշտ: Սակայն երանի՜ թէ նոյն գրասիրութեան ոգին անփոյթ չըլլար այսօր՝ ընդհանրապէս ազգային ուսումնականութեան հետ նաեւ այս լրագրական նախապատիւ առաւելութիւնը կորսնցընելուն: Կը յորդորենք ուրեմն Զմիւռնիոյ գրասէր դասն՝ որ ի բաց թողլով մարդկային որեւէ տեսութիւն՝ ջանայ յարուցանել վերստին զԱրշալոյս Արարատեան իբրեւ փիւնիկ հաւ մը, եւ անոր նոր կենացն ա-

[1] Գաղափար մը տալու համար յիշենք հոս զամերիկացին Պառնում. որ ծանուցում դնելու մէջ այնպէս յառաջացած է, մինչեւ Թագաւոր ծանուցմանց կը կոչուի: Անիկայ ամէն տարի ծանուցմանց համար 200.000 տոլար, որ է 500.000 ֆրանքին ծախք կ'ընէ:

առնել զգոյշ եւ խոհեմ ընթացք մը տալ, (ինչ-պէս կը յանձնէր Գ. Պալդազարեան երբ լրագրոյ մը գաղդարման քօթն կամ ծննդեան աւետիքը կու տար,) եւ չանոււ յանձն որ այլք գրաւեն զպատիւ երիցութեան ի մէջ Հայ լրագրաց։

## 10. ԱԶԴԱՐԱՐ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ

*Շաբաթաթերթ, Կոստ. Պոլիս, 1840—1841: Խմբ. Խաչատուր Ոսկանեան: Տպ. Պղ. Արապեան Այրոուչեխցւոյ:*

Արշալոյս Արարատեանի հրատարակմանէն քանի մ'ամիս ետքն, այսինքն՝ 1840 նոյեմբ. 30ին սկսաւ Խաչատուր Ոսկանեան՝ որ Ամերիկա առած էր իւր կրթութիւնն, աշխարհաբար շաբաթաթերթ մը հրատարակել ի Կոստ.Պոլիս, որուն անուն էր դրած՝ Ազդարար Բիւզանդեան, Կողքին Քաղաքական, Բանասիրական, Առեւտրական եւ Զբօսական[1]։ Այս լրագրոյ վճռաբանն (motto) էր "Ազգի մը լուսաւորութիւնը գիտութենէն ու կրթութենէն առաջ կուգայ"։ Ծաւալն էր միածալ թերթ մը (2 թուղթ)· գիրը միջակ, տպագրութիւնը բաւական լաւ, տարեկան գինը 100 ղուրուշ։ Խմբագիրն թէեւ նոյեմբեր 2ին լրագրոյն Ցայտարարութիւնն հրատարակած էր եւ իւր լրագրոյն ծրագիրը նկարած, սակայն ա-ռաջին թուղյն սկիզբն ալ կը դնէ Ծանօթութիւն

[1] Բաւական հետաքրքրական են նաեւ այժմու (Արաբերա)ները եւ Խմբագրութեան բառերուն տեղ գործածած Կաղենոտները եւ Կողենոտրան բառերն։

մը՝ որուն սկիզբն յառաջ բերենք լեզուին վրայ գաղափար մը տալու համար։

"Սովորութեան նայելով պէտք էր որ մենք ալ առջի կազէթանիս ըլլալուն՝ յառաջաբանութենով մը սկսէինք, այլ գրքերուն մէջը գտնըված յառաջաբանութիւններուն վիճակը տեսնելով՝ (որոնք քիչ մարդիկ կը կարդան) ու ալ նոյ" 2րդ յայտարարութիւն մը հրատարակելով... չենք ուզեր որ սովորութիւն է տէյի՝ պարապ տեղը գլխացաւութիւն տանք ու ուրիշ հարկաւոր ու օգտակար բաներէ ալ աս աղագաւը ետ մնանք։" (Ազդարար Բիւզանդեան, 1840, Թ. 1։)

Ազդարար Բիւզանդեանի բովանդակութիւնն էր աւելի քաղաքական լուր, բայց ունէր նաեւ առեւտրական, բարոյական եւ գիտնական հատուածներ։

Առաջին թիւն ստուգիւ շատ աւելի հարուստ է նիւթով քան Արշալոյս Արարատեանի առաջին թուերն։ Եւ իրօք հազիւ թէ ծնաւ Ազդարար Բիւզանդեան, սկսաւ մրցում մը Արշալոյս Արարատեանի հետ՝ իրարու քաղաքական լուրերն ուղղելով։ Սակայն Ազդարար Բիւզանդեան շատ շուտ տեղի տուաւ. իւր աշխարհաբար լեզուն Կոստ.Պոլսոյ մէջ ամենեւին ընդունելութիւն չգտաւ, եւ արդէն 5ր թուին՝ անունը նոյն պահելով՝ հայերէն լեզուն փոխեց տաճկերէնի, հետեւելով իւր բաժանորդաց մեծագոյն մասին խնդրանաց, որով նաեւ եւրոպացի եւ տաճիկ բաժանորդներ գտաւ, ինչպէս կ'ըսէ ինքն խմբագիրը։ Սակայն կ'երեւայ թէ այս փոփոխութենէն ալ շահ մը չէ տեսած. մէկ տարւոյ ընթացքին մէջ

շաբթէ շաբաթ ինկաւ եւ 1841ին վերջերը տե-սաւ իր վախճանը։

### 11. ՑՈՅՑԱՐԱՐ ԳԻՐ ԼՐՈՅ

*Շաբաթաթերթ, Կոստ. Պոլիս, 1840—:*

Կոստ. Պոլիս 1840ին վերջերը Թագվիմի Վա-գայի Լրոյ Գիրն [1] սկսաւ դարձեալ շարունակուիլ, Թագվիմի Վագայի տաճիկ լրագիրն Հայերէն թարգ-մանելով։ Սակայն այս անգամ անունը քիչ մը փոփոխուած էր եւ կը կոչուէր՝ Ցայտարար գիր լրոյ Դեձէ Տէրօ-Ռէանն Օսմանեան։ Դիրքն էր միածալ, ի սկզբան երկիջեան, բայց քանի մը թիւ ետքն եռիջեան լրագրական թերթ մը (2 թուղթ)։ 1847ին Ցայտարար լրագիր Դեձէ Տէրօ-Ռէանն Օ-սմանեան անուամբ դեռ կը շարունակուէր. բայց թէ երբ դադրեցաւ՝ մեր ունեցած անկատար տաղձն չի ներեր գուշակել։

### 12. ԲԱԶՄԱՎԷՊ

*Երկշաբաթաթերթ..., Վենետիկ, 1843—18...:*
*Խմբ. Մխիթարեան Միաբանութիւն:*
*Տպ. Ս. Ղազարու:*

Ամբողջ քսանուիրեք տարի անցած էր Ե-ղանայ Բէ-ղանդեանի դադարմանէն ետեւ՝ երբ Վենետիկի Մխիթարեան Միաբանութիւնն՝ ինչ-պէս մտադրութիւնն դարձուցած էր նախնեաց մատենագրութեանց հրատարակութեան, նոյն-

---

[1] Տես վերն՝ էջ 34։

պէս պատշաճ տեսաւ վերստին իջնել լրագրական ասպարէզն։ Սիրով ողջունեց ազգն Միաբանութեան 1843ին Մայիսի սկիզբն հրատարակած ուսումնաթերթն, որուն անունը նոյն էր Եղանակ Բիւզանդեանի երկրորդ անուան հետ, այսինքն՝ Բազմավէպ, Օրագիր բնական, գեղարուեստական եւ բանասիրական գիտելեաց։ Բազմավէպն թէեւ իրօք 1843 Մայիսի սկիզբն սկսաւ՝ սակայն նոյն տարւոյ ամէն թուերն իբրեւ Յունուարէն սկսեալ հրատարակեց։

Բազմավէպի դիրքը ծանօթ է ամէնուն, մեծ քառածալ. ծաւալն ի սկզբանէ մինչեւ ցայսօր նոյն է, այսինքն՝ տարին 24 թերթ (384 երես) երկիջեան։ Իսկ հրատարակութեան ժամանակամիջոցը միշտ նոյն չմնաց։ Ի սկզբան երկշաբաթաթերթ էր՝ իւրաքանչիւր ամսոյն 1ին եւ 15ին մէկ թերթ հրատարակուելով. եւ շարունակեցաւ այսպէս 15 տարի՝ մինչեւ 1858, երբ ծաւալը նոյն պահելով՝ ամիսն անգամ մը սկսաւ երեւալ, եւ 15 տարի ալ մնաց այսպէս ամսաթերթ մինչեւ 1873։ Նոյն տարին Բազմավէպն կը սկսի "Նոր Շար", Նոր ընթացք մը, ծաւալէն դարձեալ ոչինչ նուազեցընելով՝ իբր եռամսեայ "Հանդիսարան" երեք ամիսն անգամ մը կը հրատարակուի, եւ կը շարունակուի այսպէս մինչեւ ցայսօր։ —

Մեր լրագրութեան պատմութեան մէջ սակաւաւոր են այն լրագիրներն, որ երկայն եւ

միանգամայն պատուաւոր ապրած ըլլան։ Ամէնքն անշուշտ մեզի իրաւունք կու տան, եթէ ուզենք Բազմավէպն այս սակաւաւորաց գահերէց բազմեցընել։ Սակայն ամէն մարդկային գործ իւր կատարելութեանց հետ կ'ունենայ իւր տկար կողմերն, եւ յայսմ իսկ է յառաջադիմութեան հիմն։ Այս պատճառաւ զարմանալի չերեւայ՝ եթէ սոյն պատուական թերթին վրայ չնշմարենք միշտ այն ամէն յատկութիւններն, որոնց գտնուիլը ցանկալի էր։
— Նկատենք Բազմավէպն ի մերձուստ։

Բազմավէպի Արտաքինն ի սկզբանէ հետէ խմբագրաց մտադրութեան նիւթ եղած է։ Առանձինն խնամք մը կը տեսնուի տպագրական վրիպակներէ ազատ մնալու, թուղթն իւրաքանչիւր ժամանակին պատշաճեցընելու, յօդուածներու չափն փոքր ի շատէ համեմատութեան մէջ պահելու, եւ վերջապէս ամէնայնիւ մաքուր տպագրութիւն ի լոյս հանելու։ Ճաշակագէտ զգածումն եթէ կատարելապէս չի հաճիր բազմաթիւ պատկերներուն՝ գիտութեան ամէն ճիւղերէն, որ կը տեսնուին Բազմավէպի գրեթէ ամէն հատորներուն մէջ, սակայն կրնայ զանոնք լաւ պատկերաց կարգը դասել։ Իսկ ազգային հնութեանց բազմաթիւ պատկերներն, մեծ յարգ ունին ազգային պատմութեան եւ գիտութեան հետամուտ եղողներու առջեւ։ — Այս է Բազմավէպի Արտաքինն։

Իսկ Ներքի՞նը։ — Բազմավէպն ի սկզբան

Հրատարակութեան՝ իրեն ընթերցող ընտրած էր աւելի հասարակ ժողովրդեան "տգէտ"[1] դասն, եւ այն պատճառաւ՝ ինչպէս լեզուն ժողովրդեան աւելի մատչելի ընել ջանացած էր, նոյնպէս նաեւ նիւթերն։ Ընդհանուր ծրագրի մը տակ՝ եւրոպական յառաջադիմութիւնքն, ուսմունքն ու արուեստները, գիւտերն ու աշխարհագրական տեղեկութիւններն, բնական գիտութիւնները, դաստիարակութիւն, տնտեսագիտութիւն, երկրագործութիւն եւ այլն՝ կը մշակէր խնամով, իւրաքանչիւր իրաց վրայ մանրամասն ճառելով, եւ աւելի գործնական կէտերն շօշափելով։ Եթէ այս առաջին շրջանին մէջ կը հանդիպինք նաեւ այնպիսի յօդուածներու՝ որ այնչափ յարմար չերեւան հասարակ ժողովրդեան, գրաբար հատուածներու, բանաստեղծութեանց եւ թարգմանութեանց, այն ամենայն ոչ թէ ծրագրի մը հետեւողութեամբ եղած կ'երեւայ, այլ լոկ պատահական, զոր օրինակ՝ այլեւայլ առթիւ խօսուած ճառեր ու յօդուածներ, եւ նոյն իսկ ամբողջական գրքեր։ Բազմավէպի այս շրջանին ամէն հատորներուն մէջ կը տեսնուին նաեւ բազմաթիւ ազգային ուսումնական յօդուածներ, ի բաց առեալ նոյն շրջանին վերջին տարիները։

Բազմավէպը Նոր Շարն սկսելով 1873ին՝ կը սկսի մեկնիլ հասարակ ժողովրդեան դասէն, եւ "կը փափաքի նոր ժամանակիս լուսամիտ ուսու-

---

[1] Բազմավէպ, 1845, Յառաջաբան։

մնաթերթից ոճոյն ալ հետեւիլ ուխք ուխք, եւ իբրեւ լաւագոյն թանգարան կամ հանդիսարան մ'ընել հին եւ նոր կարեւոր գիտելեաց„[1]։ Այնու հետեւ կը տեսնուին աւելի եւրոպացի դասական հեղինակութեանց թարգմանութիւնք, յաճախ գրաբար, ազգային մշակեալ յօդուածներ՝ գրականութեան վերաբերեալ։ Միով բանիւ՝ Նոր Շարն աւելի զօրութիւն մը տալ ուզած է բովանդակութեանն որպիսութեան եւ ներքին արժողութեան։

Հետեւելով մեր սովորութեան՝ յառաջ կը բերենք հոս Բազմավէպի ազգային ուսումնական յօդուածոց ցանկն։

## 1843

Հայերուն Ռուսաց հետ վաճառականութիւն սկսիլը. 13։ — Տեղեկութիւն Աժտէրխանի Հայոց վրայ. 61։ — Ազգային լեզուն պահելու վրայ. 76։ — Աշխարհաբառ լեզուի վրայ. 108։ — Ռուսի Հայաստանին նշանը. 128։ — Լազարեան ազգատոհմին վրայ համառօտ տեղեկութիւն. 187։ — Հայոց ազգային պարծանքները. 253։ — Ագամայ դրախտին տեղը. 268։ — Եղծ կարծեաց անմիաբանութեան Հայոց. 317, 334։ — Ազգային երգերու եւ ուրիշ աւանդութիւններու վրայ. 332։ Ռուսաց զինուորական ու քաղաքական պաշտօններուն մէջ երեւելի եղած հայազգի իշխաններ. 349։

## 1844

Հայկ. 76։ — Պօղոս Պէյ Եուսուֆեան. 90։ — Արամ. 105։ — Տեղեկութիւն Խրիմու Հայոց վրայ. 173, 300։ — Յառաջադիմութիւն ազգային. 201, 281, 314։ — Տիգրան Ա. 220։ — Հայոց լեզուին հնութիւնը. 332։ — Հանճար եւ բարք Հայաստանեայց. 347, 365։

---

[1] Բազմավէպ, 1873, Յառաջաբան։

## 1845

Հայերէնագէտ Եւրոպացիք. 59։ — Իտալիական երգեր — Կաքաւուկ. 109։ — Հովիւք Շիրակայ Ա. Բ. Գ. Դ. — 140, 172, 238, 301։ — Ողբ անժամ օրհասականի. 251։ — Նորահնար քառերու վրայ. 267։ — Արդար հայրենասիրութիւն Ա. Բ. 330, 343։ — Յաղագս բնիկ հնչման հայկական տառից. 361։

## 1846

Հայոց անուանը վրայ. 19։ — Պ[illegible]անցի Հայոց ուսումնասիրութիւնը. 20։ — Ն[illegible]ամբրոնացի. 21։ — Ե գրին հնչմանը վրայ. 4[illegible]ին եւ նոր անուանց տառադարձութեանը վրայ տեղեկութիւն. 51։ — Վանայ ծովուն վրայ նոր տեղեկութիւն. 72։ — Հայերէն գրաբառ լեզուի յատկութեան վրայ. 196։ — Ազգասիրութեան վրայ յորդոր. 241։ — Մեր Ո գրին հնչմանը վրայ. 262։ — Պետրոս Ամիրայ Եուսուֆեան. 309։ — Անի. 324։ — Ի բարբարոս, ի սատարս եւ ի հետեւողս իմաստութեան ազգիս Հայաստանեայց. 338, 355, 370։ — Հայկական հնութեանց վրայ. 375։

## 1847

Անի քաղաքին աւերակները. 5։ — Լրագիրք՝ Հայաստան. 11։ — Ազգային երգեր. 94, 97։ — Ազգային պատմութիւն ու երգեր ։ Ռոստոմ բէկ. 39։ — Լեւոն Ե. եւ իր հրովարտակը. 92։ — Մովսէս Խորենացի եւ իր Հայոց պատմութիւնը. 150։ — Մեր աշխարհաբառին մէջ մնած քանի մը օտարազգի մանիկներու վրայ, Նոր, Գ. 165։ — Վենետիկոյ Հայոց վրայ տեղեկութիւն. 168։ — Բարոյական հին (ազգային) առածներ. 198։ — Մեր ազգին հին ձեռագրացը վրայ համառօտ տեղեկութիւն. 200։ — Յովհաննէս Սարկաւագ վարդապետ. 214։ — Իտալիական առակաւոր խօսքեր. 259։ — Եւրոպա· Արշալոյս Արարատեան. 311։ — Ներբող յիմաստուն եւ ի սուրբ թարգմանիչս Հայոց. 323, 339։

## 1848

Օրագրաց եւ լրագրաց վրայ. 20։ — Մարաշուվանքին Դատաստանագիրքը. 40։ — Յաղագս իսկագիր եւ նախագաղափար օրինակի գրոցն Դատաստանի Մխիթարայ Գօշի. 117։ — Խրատք պիտանիք. 129։ — Ձեռնագիր Մխիթարայ Գօշի. 154։ — Ազգային ռամկական

երգ. 169։ — Իմաստութիւն Դաւթի Քերթողի. 192։ — Տաղ յելս ի վիրապէն սրբոյն Գրիգորի, Յովհաննէս Ճլուզ վարդապետի ասացեալ. 195։ — Առաջարկութիւն Պ. Մ. Նիկ. ի Զօրայեան. 198։ — Ալի ամիրապետին Հայոց տուած հրովարտակը. 212։ — Հայոց գրերուն վրայ. 247։ — Վասն պարունակական կամ փոքր թուականացն Հայոց. 261։ — Դրամք Բ. Տիգրանայ եւ թագ հայկական. 275։ — Վախճան Ազգասէր Օրագրի. 325։ — Ի տէր Ստեփանոս Նահատակ Սեբաստիոյ. 341։

## 1849

Ազգային յատուկ դաստիարակութիւն. 5։ — Մահուան Առաքել Տատ Ամիրայ Զատայեան, առաջին արքունի վառօդապետ. 7։ — Քանդակագրոշմ պատկերք եւ հայ թագուհի. 19։ — Հայկական ճաշակ. 32, 352։ — Ազգին յատուկ կրթութիւն տուողն պէտք է ազգային ըլլայ. 33։ — Համիրամակերտ ամրոցին վրայ բեւեռաձեւ արձանագիր մը. 38։ — Մովսէս քերթողահայր Հայոց. 51։ — Ազգին պակասութեանց կամ կատարելութեանց վրայ. 65։ — Թիֆլիզ. 91։ — Տօմարական գիտելիք. 96, 128։ — Ազգասիրութիւն. 97, 129։ — Ռամկական լեզուին մէջ գործածուած ‹ը› կամ ‹ն› մասնկին վրայ. 104։ — Թագ Տրդատայ. 152։ — Ազգային պակասութիւն մը որ յառաջադիմութեան միջոցները կ՚արգիլէ. 161։ — Պունեաթ Սեբաստացի բժշկին խրատները. 215։ — Գլխաւոր պակասութիւն Հայոց ազգիս. Յամառութիւն կարծեաց. 225։ — Տաղ Ննջման սուրբ Աստուածածնին։ Այլ տաղ փոխման սուրբ Աստուածածնին. 246, 247։ — Դրամ Զահրատայ թագաւորի Փոքր Հայոց. 248։ — Առած. 255։ — Ազգերնուս մեծ պակասութիւն մ՚ալ. Նախանձ. 337։ — Գեղարդայ վանից նկարագրութիւն. 371։ — Վեհափառ Սուլդան Ապտիւլ Մէճիտին Տիւզեան պերճափայլ տանը մին տուած նորօրինակ պատիւը. 343։

## 1850

Հանդէս Ջրօրհնեաց. 1620 տարւոյն ի Նոր Ջուղայ. 6։ — Անի քաղքին մէջ եղած եկեղեցւոյ մը լուսամուտին վրայի գրերուն մեկնութիւնը. 21։ — Ազգային կամ հայախօս առածք. 32, 96, 128, 160, 192, 224, 288, 352. 1851, 112, 160, 223, 370։ — Հայոց մէջ մօրուաց եւ մազի սովորութիւն. 38։ — Տաղ ի գլխատումն Յովհաննու Մկրտչի. 52։ — Տիւզեան մեծ. Կա—

րապետ Չելէպւոյն Օսմ. Վեհ. Թագաւորէն ընդունած նոր պատիւը. 69։ — Ազգին օգտակար, կատարեալ գիտուն ըլլալու համար հարկաւոր եղածը. 81։ — Տիգրան Արսեր եւ Երատոյ. 152։ — Պատմութիւնք ի լեզու Խրբեւանցւոց. 190։ — Լուր եւ տես Հայաստանի. Ա. Հայաստան. 195։ Բ. Բարձր Հայք. Եկեղեաց. 263։ Գ. Երզնկա. 296։ Դ. Յովհաննէս Երզնկացի. 1851, 213։ — Ռամկական երգ ի Պատիկ Հով անուն բանաստեղծէ ասացեալ. 212։ — Ցաղագս Թարգմանութեան աստուածաշունչ տառից ի հայ լեզու. 212. 1851, 230։ — Վանեցւոց երգ կաքաւու. 230։ — Ազգային տպագրութեան սկզբնաւորութեանը եւ յառաջանալուն պատմութիւնը. 230, 344. 1851, 40, 182։ — Պարթամասիր կամ Վարդանասար Թգւր. 295։ — Ազգային վիպասանութիւն. 340. 1851, 6։ — Ստորագրութիւն Կովկասեան գաւառաց. 341. 1851, 56, 120, 281, 314։

## 1851

Երկհազարեակն Արշակունեաց. 3։ — Բ. Արշակունիք. 51։ — Ցաղագս Մովսիսի Խորենացւոյ Չորրորդ անուանեալ գրոցն պատմութեան. 69։ — Ողբ ի վերայ վաղամեռիկ որդւոյ. 152։ — Գ. Վաղարշակ. 167։ — Նոր ածխահանք ի Մեծ Հայս. 208։ — Հնդետասաներորդ տարեդարձ Նահատակութեան Սրբոց Վարդանանց. 225։ — Տաղ Յովհաննու Կարապետին. 343։

## 1852

Տեսութիւն ի գանձ լեզուին Հայոց կամ ի Ստեփանեան Բառարան. 86։ — Օշին սպարապետ ու իրեն գրած ոտանաւոր մէկ Թուղթը. 182։

## 1853

Անանիայի Շիրակունւոյ յաղագս կատարման համարողութեան եւ կերպից հարցմանց. 48, 144. 1854, 160. 1855, 304։ — Ի Թաղումն Տեառն ի մեծի շաբաթու ի Ներսիսէ Լամբրոնացւոյ. 132։ — Ազգային ռամկական երգ մը. 212։ — Սեքստոսի պիւթագորեան իմաստասիրի բարոյական առածք. 336։

## 1854

Անի եւ Կամախ ամրոց. 22։ — Տաղ ի մանկունս Բեթղեհեմի. 181։

## 1856

Սրբոյն Եպիփանու ասացեալ զանուանս վասն ականց պատուականաց. 46։ — Թովմայի Արծրունւոյ յաղագս շինութեան Աղթամարայ, եւ թէ ո՞յք ոմանք յառաջ քան զձեռնարկելն Արքայի (Գագկայ) սուղ եւ ոչ արժանի ինչ յիշատակի ի նմա գործս գործեցին. 91։ — Թովմայի Արծրունւոյ յաղագս գերապայծառ եւ պանծալի սբ. Եկեղեցւոյն որ յԱղթամար քաղաքի. 123։ — Երիտասարդն Մակարայ վանաց. 142։ — Հայք եւ Հայաստան. 280։ — Ազգային հնախօսութիւն. Էր կամ Արայ Հայկազն. 341, 366։

## 1857

Տէրմանուկեան Յովհաննէս եպիսկոպոսին ճանապարհորդութիւնը. 42։ — Պատմութիւն անօրինականացն Քրիստոսի. 177։ — Թուղթ Պիղատոսի դատաւորի առ Տիբեր կայսրն, զոր գրեաց յետ խաչելութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. 279։

## 1858

Արտաշատ. 46։ — Գառնի. 174։ — Ազգային ռամկական երգ մը, Երգ արագլի. 305։

## 1859

Ազգային պատմութիւն, Արտաշէս Ա. 8։

## 1860

Հայկն, Հայկայ շրջանն եւ տօնն. 3։

## 1861

Դպրութիւն Հայոց. 5։ — Պատկեր Հայկական դպրութեան. 31, 64, 96, 159, 191, 224, 293, 325, 357. 1862, 32, 64, 96, 128, 160, 192, 224, 256, 288, 320։ — Փաւստոս Բուզանդացի. 53։ — Ոսկեփորիկի մը մէջ եղած քանի մը ազգային երգեր. 145։ — Ազգային երգ. 268։ — Անուանց եւ մականուանց վրայ. 281։ — Բնախօսութիւն Հայաստանի. 311, 347։

## 1862

Ազգախնամ տեսչութիւն. 3։ — Հին քնար, Ա–որս, 9։ — Ազգային պատմութեան մանր պարագայք. 15։ — Հայադիր. 18, 33, 65, 97, 129, 161, 193, 225, 257, 289, 323, 361։ — Մանրիկք գրոց վաստակոց. 31, 93։ — Թէոդորոս երգիչ ի խորհուրդ աւագ երկուշա–

բաթին. 86։ — Լըվայեան որ Ֆլորիվալ. 95։ — Քարոզ (Գանձ) Սրբոց Վարդանանց. 174։ — Նկարագրութիւն քաղաքին Կարնոյ եւ մեծ գետնաշարժին որ եղաւ յամին 1859. 146, 206։

## 1863

Տեղագրութիւն ի փոքր եւ ի մեծ Հայս. 6, 42, 92, 104, 161, 193, 225, 261, 291, 318, 337, 395. 1864, 9, 56, 90, 152, 187, 219, 249, 280, 315, 377. 1865, 26, 58, 119։ — Ցանկ հայերէն տպագրութեանց 1862 տարւոյն ազգային հեղինակաց. 29։ — Ազգային արդի վիճակը պատմութեան առջեւ. 33։ — Ընիցլերի տեսութիւն ի վերայ Հայոց. 65։ — Բան խրատական եւ պիտանի յՈսկիփորիկ գրոց. 97։ — Արդի Եւրոպացի հայերէնագիտաց երկասիրութիւնքը. 123։ — Աշոտ Ա. Հայաստան հազար տարի յառաջ. 145, 177, 209, 241, 273, 305։ — Լեւոն վերջին. 369։

## 1864

Ի ծնունդ Փրկչին. 8։ — Յաղագս 12 ամսոց տարւոյն (Գիրք վստկց.) 27, 55, 86, 106, 146, 173, 213, 240, 276, 306, 348։ — Զապէլ. 33, 65։ — Տաղ սրբոց Վարդանանց փոխ. 42։ — Ի Տեառնընդառաջ. 44։ — Մեղեդի ապաշխարութեան. 74։ — Լազարեան ազգատոհմ. 87։ — Նէարքոս եւ Պօլիքտոս. 97, 129։ — Մեղեդի յարութեան Տեառն. 107։ — Ի Համբարձումն Տեառն. 139։ — Առաջին ասպատակ նետողաց ի Հայս. 161, 193, 225։ — Տաղ Համբարձման Տեառն. 169։ — Ի Սուրբ Հոգին. 200։ — Տաղ Վարդավառին. 234։ — Խուլ խաչիկ. 257, 289։ — Մեղեդի խաչին. 293։ — Ատտիկեան մեղու ի ձիւնեղէն լերինս Հայոց. 321, 353։ — Տաղ ի սուրբն Յովհան Ոսկեբերան. 344։ Կիրակոս պատմիչ. 349։ — Տաղ ծննդեան Տեառն. 370։

## 1865

Խօսնակն Եկեղեցւոյ յանապատս Հայոց. 33, 65, 97, 149, 181։ — Յակոբայ Թօխաթեցւոյ ասացեալ տաղ վասն կենաց մարդկան. 208։ — Չորրորդ Դարամուտ տպագրութեան Հայոց, Աբգար դպիր Թոխաթցի. 213։ — Սեպագիր արձանք յԱյրարատեան աշխարհի. 232։ — Վահան Գողթնացի. 245, 277, 309։ — Երգ ի Ս. Աստուածածին եւ ի Գաբրիէլ հրեշտակապետն, օրինակեալ ի վարդն եւ ի պլպուլն. 266։ —

Գիւղն Արծաթի որ ի Հայաստան. 326։ — Ս. Ցիզիտրուզիտ. 341։ — Ֆիմի. 372։

## 1866

Դկ. Շարական առասպան, ասացեալ է սրբումնէ բանասիրէ ազնիւ եւ ուրախ. 20։ — Ապտուլլահեան Եղբարք ի Կ.Պոլիս. 55. 1867, 319։ — Կոստանդին Եզնկացի. 80։ — Ազգային Նկարչութիւն. 150։ — Երազ Վարդան Կայսեր. Ա. 161, Բ. 193։ — Բանք յաղագս արեգական. 206։ — Բանք յաղագս անցաւոր մեծութեան. 233։ — Ցաղագս անգիտաց. 368։

## 1867

Մեր ներկայն. 3։ — Ճանապարհագրութիւն Ջուար Ճիյէրճի Օղլու քահանայի. 129, 180, 202, 301, 328, 370. 1868, 114, 145, 246, 320. 1869, 177։ — Անկիւրիոյ Հայերը. 257։ — Ներսէս Պատրիկ հայկազն. 297։ — Հանդէս հարսանեաց Մուշ գաւառին մէջ. 307. — Մեր Նախնեացմէ ձեռուընիս հասած ձիաբուծութեան երկու գրուածքներ. 353։

## 1868

Տաղք Ցարութեան. 123։ — Համբարձման տօնին հանդէսը Մուշ գաւառին մէջ. 129։ — Բաժինք Հայոց Մեծաց. 261, 293, 336։

## 1869

Նշմարք եւ Նշխարք ի Հայաստան աշխարհի. 65, 97, 129, 161, 193, 225, 257, 289, 321, 353։ — Ցովհաննէս Պէյ Տատեան. 160։

## 1870

Խիկարայ՝ Զգինին հէնց խմեցէք որ զաւիւծն սպաննէք. 263։ — Հայք Հարաւային Ռուսիոյ. Դիտողութիւն Ատել Հոմէր տը Հէլ Գաղղիացի Տիկնոջ. 266։ — Երգ առ Ցիսուս. 311։ — Պինկէօլ լերանց այցելութիւն մը. 314։ — Վանայ ծով. 316։

## 1871

Առակք ազգայինք ի գրոց Նախնեաց. 223։

## 1872

Երկու դարադարձ ազգային յիշատակք դալի տարւոյ. 155։ — Շնորհալի եւ պարագայ իւր. 161, 193, 225, 257, 289, 321, 353։

## 1873

Հուշակ Ս. Գրիգորի Լուսաւորչի. 45։ — Տուբխա ի գագաթն լերին Արարատայ. 50։ — Տիրացու Համբարձում. 52։ — Աղահանք Կողբայ ի Մեծ Հայս. 54։ — Թորոս Բ. 56։ — Տաղ ի ծաղկազարդն. 66։ — Հայկական տաղաչափութիւն. 97։ — Ազգային ուսանողք ի Զուիցցերի. 106։ — Le seigneur de Sarvantikar et les chevaliers de l'Ordre teutonique, document arménien de l'an 1271, 108։ — Սուրբ Բարսեղ եւ իւր երկասիրութիւնքն. 112։ — Օրինակ խոստագրի խնամախօսութեան Հայոց Դրանսիլվանիոյ. 126։ — Այժմեան վիճակ հայերէն դպրութեան. 254։ — Վարդանայ հայկազնի Տաղ գերեզմանական վասն փոխման երանեալ եւ սուրբ կաթողիկոսին Հայոց Գրիգորի Վկայասէրի. 264։ — Երգ ազգային. 271։ — Թարգմանութեան վրայ. 321։ — Տաղ գարնան 333։

## 1874

Տաղ ի ծնունդ Քրիստոսի. 6։ — Նոր ուղեւորութիւն ի բարձրաւանդակս Հայոց. 7, 251։ — Հայ եւ պարսկանուն սուրբք եւ երանեալք արտաքոյ տօնացուցին մերոյ եւ աւուրք յիշատակի նոցա. 13։ — Հին տպագրապետ բանաւէր մի. 15։ — Յոբայ Գիրք եւ հայերէն թարգմանութիւնք. 29։ — Ներսէս Լամբրոնացի. 241։ — Ողբք ի Տէր Ներսէս Արհիեպիսկոպոս Տարսոնի. 242։ — S. Grégoire de Narek et ses oeuvres, 244։ — Գիրք վաստակոց. 321։ — Տաղ ի ծնունդ Քրիստոսի (կենկապ). 329։ — Յովհաննէս Այվազովսքի հայկազն նկարիչ. 330։ — Առածք ազգային. 336. 1875, 40, 125, 246։

## 1875

Մեսրոպեան Դար հայկական լեզուի. 7։ — Ուղեգնացութիւն ի Հայս. 17, 97։ — Արա գեղեցիկ, պատմութիւն վիպասանական. 25, 107, 230, 342. 1876, 120, 206։ — Տաղ մեծի Զատկին. 33։ — Արդի Շիրակացիք Ռուսաց Հայաստանի. 34, 102, 209, 337. 1876, 140։ — Երգք ազգայինք. 106, 215։ — Հելլենաբանութիւն եւ հելլենաբան թարգմանիչք հայկական լեզուի (Դար Զ — Ժ). 118։ — Հայ վանորէից ուսմունքն ու ջանքն. — Յոյն եւ արաբացի թարգմանութիւնք եւ լեզու ԺԱ. եւ ԺԲ. դարերու. 218։ — Տեղագրութիւն Խոտըրջրոյ. 225, 333. 1876, 193։ — Ընդ-

Հանուր տեսութիւն մը Նախնեաց թարգմանութեանց վրայ դատաստան ընելու. 352: — Մեղեդի Ծննդեան, մարտիրոսաց. 354: — Համառօտ յերաժշտական արուեստէ ի յարաբ գրոց. 359:

## 1876

Բնագրութիւն Կովկասու եւ Ռուսական Հայաստանի. 113: — Բեւեռաձեւ արձանագրութիւնք Հայաստանի. 132, 199, 328: — Անսիզն Անտիոքայ եւ Սմբատ Գունդստապլ (գաղղիերէն). 289, հայերէն. 307:

## 1877

Հոմերական բառգիրք եւ հոմերական տողք. 15: — Գերմանացի Կուդշմիտ գիտնականին Խորենացւոյ վրայ ըրած դատաստանը. 45, 110, 213, 289: — Les chants liturgiques de l'église arménienne, 51. — Առակ ագռաւու (ի Նախնեաց). 61: — Սկիզբն հայկական լեզուի եւ Դիոնեսիոսի Թրակացւոյ քերականութիւն. 97: — Գիրք վաստակոց. 193: — Աստուածաշունչք. թարգմանութիւն Եօթանասնից եւ Հայկականն. եւ ամբողջութիւն Նոր Կտակարանին. 200: — Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն Եկեղեցւոյ. 263: — Արտաւազդայ շղթայից առասպելք. 276: — Մեծն Ներսէս Պարթեւ. 319:

## 1878

Երեսնամեայ պատերազմ ի Հայս եւ կատարած Արշակայ արքային. 7: — Դատաստան ի վերայ Խորենացւոյն եւ Դատաւոր նորա. 32: — Պատմութիւն քաղաքին Բիւզանդիոնի (ի Նախնեաց). 58: — Ելք ի Մասիս Յակոբ Պրայս Անգղիացւոյ. 116: — Աշխարհիկ կամ Նոր լեզու. 213: — Ագաթանգեղոս ըստ Ալփրէտ Կուդշմիտի Գերմանացւոյ. 229, 297. 1879, 10, 97, 237: — Եփրատայ գետահովտին վաճառականութիւնն. 233: — Ընդհանուր տեսութիւն արեւմտեան Ասիոյ կամ Ասիական Տաճկաստանի ժողովրդոց վրայ. 241: — Հայկական տարի. 259: — Ընդհանուր տեսութիւն հայ նոր մատենագրութեան վրայ. 305: — Խօսք Ս. Արիստիդեայ իմաստասիրի Աթենացւոյ (Նորատիպ հրատարակութիւն). 320:

## 1879

Բանք Պտղոմեայ եւ Ստրաբոնի աշխարհագրաց վասն Հայաստանի. 3: — Գաղթականութիւն Հայոց

ի Ջավա․ 185։ — Ս․ Արիստիդեայ Աթենացւոյ Ջատագովութենէն գտնուած հատուած մը․ 231։

## 1880

Զօրավարն կոմս Լորիս Մելիքով․ 68։ — Աբաս Միրզա․ Պարսկահայք, Ռուսաց Էջմիածնի տիրելը․ 72։ — Կարապետ Վ․ի տաղ աշխարհացոյց գեղեցիկ․ 97։ — Ախլցխայի պատերազմներն․ 101։ — Հայք ի Հընդիկս Անգղիացւոց եւ Հօլանտացւոց․ 240, 253։ — Նեմեսիոսի մարդակազմութեան գրոց եւ անոր հայ թարգմանութեան ճաշակ մը․ 326։ — Յաղագս եկեղեցական արարողութեանց Հայոց․ 340։ — Յաղագս կենցաղավարութեան Հայոց․ 343։

## 1881

Հայ ազգն եւ իւր առ մարդկութիւնն ըրած օգուտներն․ 3, 97, 199․ 1882, 3, 116, 202, 299․ 1883, 30։ — Martyre de St. Athénogène Evêque, 28, 126. — Պատմութիւն Հայ բժշկութեան․ 33։ — Անդրէաս վարժապետ Ղրիմցի․ 37։ — Յաղագս հացկերուտի եւ ընտանի իրաց Հայոց․ 120։ — Բանք վասն խաբող աղուեսուն․ 193։ — Ցեղաբանութիւն Կիպրոսի թագաւորաց Լուսինեան ազգատոհմին․ 231․ 1882, 26, 97, 200։ — Աշխարհագիտութիւն հայկական, յարաբերութեամբ Վենետկահայ աշխարհագրութեան հանդիսին․ 318, 330։ — Շիրակ, տեղագրութիւն պատկերացոյց․ 323։ — Աշխարհագրութիւն Մ․ Խորենացւոյն բաղդատեալ ընդ Պտղոմեայ․ 341։

## 1882

Վասն վանորէից՝ որ ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ, յԱգաթանգեղեայ պատմութենէն որ էր դպրապետ սուրբ Լուսաւորչին Գրիգորի․ 23։ — Յովհ․ Այվազովսքի պատկերահան․ 38։ — Ռուբինեանց վերջին ժամանակի նորագիւտ պատմութիւն․ Ժամանակագրութիւն Հայոց (Յովհաննու Տարտելլի, Տորտիպօլսոյ եպիսկ․) 104։ — Տնօրինական սուրբ տեղիք Երուսաղեմի (ի Նախնեաց)․ 198։ — Ճանապարհորդութիւն Տէր Եղիշէի Սարբանկացւոյ (թարգմ․ հայերէն)․ 212։ — Նոյնն իտալերէն բնագիր․ 217։ — Հայաստանի գաւառաց վրայ տեսութիւն (Կ․ Սոլանելլի)․ 289։ — Տեղեկութիւնք զհայկական իրաց (Դեզա)․ 305։ — Աշխարհագրական տեղեկութիւնք ըստ ԺԻ․ դարու հայկական ձեռագրաց

(գաղղ)․ 311։ — Նոյնն, հայերէն բնագիր․ 315։ — Շարական հանդերձ օրհնելոյ հարսանեաց․ 319։

## 1883

Ճանապարհորդութիւն յՆրղէրում Փուշքին Ռուսքանաստեղծի, յամի 1829, — 4։ — Ազգային յիշատակք Նոր ժամանակաց, 23։ Ա․ Հեղեղ ի Կ․ Պօլիս, յամի 1789, — 23։ — Բ․ Սով Տիգրանակերտի, յամի 1759, — 25։ — Գ․ Արկածք Յովհաննու վարդապետի․ յամի 1762, — 341։ — Մրրիկք եւ հեղեղք ի Թորթում, 28։ — Երեք ամիս ի Կախէթ, ուղեւորութիւն Գարլա Սերենա տիկնոջ․ 37, 142, 319։ — Փղենիք եւ Փենունա՝ երկու ծաղկունք ի Շիրակ․ 47։ — Պատմութիւն Վրաց (Մատենագրութիւն նախնեաց)․ 50, 155, 209․ 1884, 18, 110, 240, 312․ 1885, 114, 207։ — Տեսութիւն Մարիբասեան աւանդութեան ըստ Մ․ Խորենացւոյ․ 54, 111, 224, 308․ 1884, 35, 123, 220, 315․ 1885, 11, 108։ — Ղունկիանոս երգիչ Կարնեցի․ 97, 238, 332․ 1884, 50, 137, 212, 322․ 1885, 38, 123, 217։ — Ի գերեզման Քրիստոսի․ 129։ — Պղնձէ գլուխ մը ի Հայաստան գտնուած․ 130։ — Մարմաշինու եկեղեցւոյ կործանումն․ 151։ — Առածք․ 154։ — Առ արեգակն․ 164։ — Ցիշատակարան տպագրութեանց ճանապարհին յԱյրարատ․ Դ․ Լ․ Մարդովցեվի․ 193, 289․ 1884, 97, 193, 305․ 1885, 17։ — Պատմութիւն աւերման Տփխիսի․ 220։ — Հրդեհ Մխիթարեան վանաց․ 272, 375։ — Վասն լուսնի եւ աստեղաց․ 307։ — Առածք․ 318։ — Առակ․ 345։

## 1884

Ս․ Սիմէոն ճգնաւոր եւ սարկաւագ հայկազն․ 5։ — Տաղ գարնան․ 17։ — Խօսք իմաստասիրաց․ 29։ — Նորագիւտ պատառիկ ի Գրոց տարերացն երկրաչափութեան Եւկլիդեայ Աղեքսանդրացւոյ, հին թարգմանութեամբ նախնեաց․ 30։ — Առածք․ 49։ — Սահմանավէմք կամ խաչարձանք․ 94։ — Ս․ Գրիգոր հայկազն յարեւմուտս, 107։ — Ազգային յիշատակք Նոր ժամանակաց, Դ․ Թուղթ ազգային ճանապարհորդի մը․ 116։ — Ե․ Պատմութիւն սովուն Կարնոյ․ 118։ — Բարոյական առածք․ 122։ — Հեթում պատմիչ․ 202։ — Վիճակագրութիւն Նուիրապետական թեմի ազգայնոց որ ի Լէոպօլիս Աւստրիոյ ներկայ տարւոյս․ 217։ — Ուղղագրութիւն «Ամէն» բառին․ 238։ — Հին բժշկարան

Գագկայ Թագաւորի. 239։ — Ճանապարհորդական նկատողութիւններ, Աղեքսանդրապօլից մինչեւ ի Մրէն եւ Վերադարձ. 291. 1885, 3։ — Մարտիրոսութիւն Սըրբոյն Հռիփսիմէի. (յօրինեալ յամի 1668 ի Լեհահայոց։) 328, 1885, 33, 118, 211. 1886, 35։

## 1885

Տաղ գարնան. 9։ — Ուխտագնացութիւն առ Տիրամայրն Հայոց ի Կամենից Փոտոլեան. 24, 97, 192. 1886, 15։ — Զատիկն եկաւ (երգ Վանեցւոց). 131։ — Պատմութիւն Յովսեփայ եւ կնոջ նորա Ասանեթի՝ դըստերն Պետափրէ քրմի Արեգ քաղաքի. 200. 1886, 25։ — Սղագրութիւն հայկական, 229. 1886, 34, 103։ — Համառօտ բովանդակութիւն տեսութեանս զմարիբասեան աւանդութենէ ըստ Մ. Խորենացւոյ. 237։ — Ստեփաննոս Ռոշքա. 247։ — Համառօտ տեսութիւն եւ խորհրդածութիւնք ի Սիսուան. 297։ — Համառօտութիւն Սիսուանայ, եւ յառաջաբան հեղինակին. 310։

## 1886

Ա. Կուդշմիթ ի համապատումն Բրիտանական եւ եղծ կարծեաց նորա. 1։ — Հայ վաճառականք ի Մէրվ. 44։ — Ղրիմու մէջ Սուտաղի հովիտը եւ նորոգ օծեալ Հայոց-Կաթոլիկաց Աստուածամօր պաշտպանութեան Եկեղեցին. 81։ — Դրուագ ի սուրբն եւ ի սիրելի Ներսէս Լամբրոնացի. 87։ — Յոբելեան հանդէս ի պատիւ հայկազն գիտնականի Պր. Մկրտչի Էմին. 179։ — Կաթոլիկ Հայոց վարժարանք ի Կ. Պօլիս. 182։ — Ցուցակ Պեռլինի արքայական մատենադարանի հայ ձեռագրաց. 183։ — Բացայայտութիւն մի՝ հայկական տառերու հնչման եւ գրութեան մասին առ Մեծ. Խըմբագիրն Մշակ լրագրի. 192։ — Étude sur la vallée de l'Araxe et ses trois villes anciennes, 200. — Հին արձանագրութիւն մի. 273։ — Արուեստ գունագոյն եւ ոսկեխառն Թանաքի վասն խորանաց աւետարանի. 278։ — Ճանապարհորդութիւն ի Թէոդոսիոյ դէպ ի Նոր-Նախիջեւան. 281. 1887, 5, 116, 193, 298։ — Բան յազգս եւ յազինս ասացեալ ի Բամբարակէն՝ որ էր ընկեր Ամիրտոլվաթին. 287։ — Պետրոս Ադամեան, հայ հռչակաւոր դերասան. 289։ — Պատմութիւն արեւելեան վաճառականութեան ի միջին դարս. 292։

## 1887

Հրատարակութիւնք ազգային տպարանաց յընթացս 1886 ամին. 12։ — Երգ Վանեցւոց. 16։ — Քննադատութիւն Թղթոյն Մ. Խորենացւոյ առ Սահակ Արծրունի եւ Պատկերի Տիրամօրն ի Հոգեաց վանս. 97։ — Առակ. 133։ — Վարդանայ Վարդապետի աշխարհացոյց ամենայն տիեզերաց. 134։ — Առակ. 196։ — Պատառիկ մի ի գրոց մեծի վարժապետին Վարդանայ Վանգիւտի պատուից մերոց ի ձեռն Ս. Մեսրոպայ. 197։ — Երանելւոյն Յովհաննու Ոսկեբերանի մեկնութիւն Եսայեայ մարգարէին թարգմանեալ լատիներէն. 291։ — Քննադատութիւն Ատոլփ Բաումգարտների Մովսիսի Խորենացւոյ Պիտոյից գրոց վրայ. 306։ — Նշանք հայկական երաժշտութեան. 315։ — Նեմեսիոս եւ Նորա յաղագս բնութեան մարդոյ գրոց հայկական հին թարգմանութիւնն. 318։

Կը վերջացընենք Բողմօլէնի վրայ յօդուածս, մեր անձնական կարծիքն համառօտելով։ Բողմօլէն մեծ արդիւնք ունի վաստըկած իւր 45ամեայ կենաց պատկառելի հասակին մէջ։ Արդիւնք մը Եւրոպացւոց առջեւ, որոնք ազգային շատ բաներու ծանօթացած են Բողմօլէնի հայ՝ բայց մանաւանդ երբեմն երբեմն տեսնուած գաղղիերէն կամ իտալերէն ծանրակշիռ յօդուածներով։ Եւ իրօք ամէն եւրոպացի՝ երբ Հայոց վրայ կը գրէ, կը յիշատակէ ի մասնաւորի Բողմօլէնը։ Բողմօլէն ունի նաեւ իրական արդիւնք մ'ազգին ինչպէս հասարակ ժողովրդեան՝ նոյնպէս գիտնոց առջեւ։ Ի սկզբան, երբ իւր նմաններն շատ քիչ կային ազգին մէջ, գիտութիւններն պարզ եւ հասարակ ոճով ծանօթացուց ժողովրդեան, ազգային յօդուածներով՝ որոնցմէ թէեւ ոմանք այսօր նշանակութիւն չունին, ազգին ինքնաճա-

նաչութեան արթննալուն ձեռնտու եղաւ, եւ տուաւ նաեւ գիտնոց՝ ազգային հնութեանց եւ գրականութեան վրայ բազմաթիւ յօդուածներ, որոնցմէ շատերն այսօր օգտակարապէս կ՚ընթերցուին։ Բաց ասկէ՝ եւրոպացի եւ յոյն դասական մատենագրութիւնք ըստ մասին, բազմաթիւ թատրներ ու վէպեր ի հայ թարգմանութեամբ ազգային ստացուածք եղած են այսօր Բօղմօվէօղի միջոցաւ։ Ո՞ւր թողունք ազգային թանկագին ձեռագրաց կամ հատակոտորներու հրատարակութիւնքն ալ, որոնք անբաւ արժէք ունին ոչ միայն ազգային գիտնոց, այլ եւ Եւրոպացւոց առջեւ։

. Ասոնք են, ըստ մեզ, Բօղմօվէօղին առաւելութիւններն։ Սակայն մեր տկար աչքը չի տեսներ հոն ուրիշ քանի մը յատկութիւններ ալ, որոնք որեւէ թերթի անհրաժեշտ են։ Թերթ մը, ըլլայ ուսումնական, ըլլայ ընտանեկան, արուեստագիտական եւ այլն, ցորչափ Գնօ-Րէ-ՆՆ իրեն բացարձակ ասպարէզ չէ ընտրած, պէտք է անհրաժեշտ աւելի է-ր Ճօմօնօլէն մէջ ապրիլ, մերձենալ ժամանակակից դիպաց այնչափ՝ որչափ իւր ուղղութիւնն իրեն կը ներէ։ Այս կէտն, կարծենք, Բօղմօվէօղի մեծարգոյ խմբագրութեան մտադրութեանը կարօտ է։

Ուսումնական թերթի մ՚էական է քննադատական ոգի, եւ այս միայն կրնայ թերթին ներքին արժէքն որոշել։ Բօղմօվէօղի ինքնագիր ազգային յօդուածոց մէջ ընդհանրապէս կը

բաղձացուէր տեսնել աւելազոյն քննադատական ոգի, ժամանակին հմտական քննութեանց եւ ասոնց իրական արդեանց ծանրակշռութիւն տալ, թողուլ ի հնոց ինչ որ թողլի է, միով բանիւ քալել միշտ ժամանակին յառաջադիմութեան հետ։ Գիտութեան լծակն է կասկածն, եւ այս կասկածն է որ գիտութիւնները յառաջադիմութեան այժմու հսկայ հասակին հասուցած է։ Անտարակուսելի է որ նաեւ մեր ազգային գիտութիւնն ալ ասով միայն կրնայ գէրմա—նի—ն անուան արժանի ըլլալ։

Մեր անկողմնակալութեան պարտքն համարեցանք յիշատակել հոս նաեւ այս հանգամանքներն՝ որոնք ըստ մեր տեսութեան կրնային մեծցընել նոյն առաւելութիւնքն։ Սակայն այս վերջնոց այնպէս լիով չտեսնուիլը՝ ոչինչ իւիք կը նուազեցընէ առաջնոց բազմութիւնը, եւ ոչ ալ կը նսեմացընէ անոնց պայծառութիւնը։ Բողոքողն ինչպէս որ է՝ ոչ միայն եղած է մին ի գլխաւոր միջնորդաց՝ այլ եւ սկզբնաւորութիւն ազգային այժմու յառաջադիմութեան։

Եթէ Վենետիկի Մեծ. Միաբանութեան պարտական է ազգս մեծ երախտագիտութիւն, ասոր ոչ փոքր մասն պէտք է հայիլ այս հրատարակութեան, որ եւ պիտի մնայ միշտ անմահ յիշատակ Մեծարգոյ Միաբանութեան գրաւոր գործունէութեան։

## 13. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ

*Շաբաթաթերթ, Զմիւռնիա 1843—1846: Խմբ. Խ. Յ. Մելիքսեթլումեանց: Տպ. Արապածոնեանց Ընկերութեան:*

Արշալոյս Արարատեանն իւր գովելի ընթացքովն լրագրութիւնն Զմիւռնիոյ Հայոց սիրելի ըրաւ, այնպէս որ իրմէ քիչ մ'ետքը նոյն քաղաքն հետզհետէ նոր լրագիրներ ծնաւ: 1843ին քանի մ'ուսումնասէր Զմիւռնիացիք Արփածոնեանց Ընկերութիւնն հաստատեցին, եւ նոր տպարան մը բացին ազգին օգտակար գրքեր հասցընելու նպատակաւ: Այս ընկերութեան երախայրիքն եղաւ *Հայրենասէր*, Օրագիր քաղաքական, բանասիրական եւ առեւտրական անուն աշխարհաբար շաբաթաթերթն, որ 1843 Մայիս 28ին Խաչատուր Յ. Մելիքսեթլումեանցի խմբագրութեամբ սկսաւ հրատարակուիլ շաբաթն անգամ մը: Վեց ամիս ետքն՝ նոյն տարւոյ Հոկտ. 15ին խափանուեցաւ, որչափ կ'երեւայ՝ հակառակորդաց հնարիւքն: 1844 Ապրիլ 10ին սկսաւ վերստին հրատարակուիլ. սակայն Զմիւռնիոյ 1845 Յունիս 21ի զարհուրելի հրդեհն Հայրենասէրի տպարանին ալ վնասեց, եւ խմբագիրն ստիպուեցաւ նոյն տարին Յուլիս 27ին ծանուցանել՝ որ Հայրենասէրն առ ժամանակ մի 15 օրն անգամ մը պիտի հրատարակուի: Այսպէս երկշաբաթաթերթ մնաց մինչեւ 1846 Մայիս 10, երբ նիւթական կա-

բօտութիւնն ստիպեց զինք ընդ միշտ մեկնիլ ասպարիզէն:

Հայրենասէրը ինչպէս դիրքն ըստ ամենայնի նման էր Արշալոյս Արարատեանի, նոյնպէս բովանդակութիւնն եւ ուղղութիւնը: Տէրութեան եւ կրօնի խնդիրներէ ու վէճերէ բոլորովին զգոյշ՝ կու տար իւր ընթերցողաց քաղաքական լրեր, առեւտրական ծանօթութիւններ, աշխարհագրական տեղեկութիւններ, մանրավէպեր եւ այլ ուսումնական յօդուածոց թարգմանութիւններ: Յիշատակութեան արժանի ազգային ուսումնական յօդուածներն են հետեւեալք.

Ազգային հնութիւն մը (Եկեղեցւոյ անկեան քար ի Ջապէլ Թագուհիէ, ի թուին Հայոց ՍՂ:) Հայրենասէր, 1843, Թ. 1:

Նորագիւտ նշանք Հայաստանի նախկին բարեբերութեան, 1843, 5:

Հայոց լեզուին վրայ, 1843, 8:

Համառօտութիւն ազգասիրական սխրագործութեանց Տ. Ներսէս Հայրապետի, 1843, 17, 18:

Հմտութիւն զԷջմիածնէ (Պր. Բրոսսէի, թրգմ.) 1844, 31:

Երկու յիշատակարանք հնութեան, 1844, 41:

Հաստատութիւն Մենաստանին Էջմիածնի եւ Ուսումնարանի Նորին, 1845, 77, 79:

Պատմութիւն կղզւոյն Սեւանայ, 1846, 103—105:

Հայրենասէրն իւր ինքնուրոյն եւ մասնական արդիւնքը կրնանք թերեւս նկատել սա պարագայն՝ որ իբրեւ գործիք Առաջադիմանեաց Ընկերութեան՝ նոյն ընկերութեան անդամոցն ուսումնական աշխատութեանց գրդիչ եղած է: Այն

ընկերութեան բարձմամբն՝ վերջացաւ ինքն ալ, եւ կը մնայ այսօր իբր յիշատակարան մը Զմիւռնիոյ Հայոց մէջ 1840էն ետեւ տեսնուած ուսումնական շարժման։

## 14. ԱԶԳԱՍԷՐ

*Շաբաթաթերթ, կալկաթա, 1845—1852: Խմբ. Մ. Դ. Թաղիադեանց: Տպ. Արարատեան Ընկերութեան:*

Հնդկահայք, որ հայ լրագրութեան հայրն էին եղած, դարուս գրեթէ մինչեւ կէսն ուսումնական շարժում մը չցուցին, կարծես յուսահատած Ազգասէրի եւ այլ հրատարակութեանց անյաջող փորձէն։ Դարուս առաջին կիսոյն վերջերն շարժումն՝ որ սկսած էր հայ գաղթականութեանց մէջ՝ Հնդկահայոց վրայ ալ առանց ազդեցութեան չմնաց, մանաւանդ Արշալոյս Արարատեանի սերտ յարաբերութեամբն, զոր ունէր անոնց հետ։ 1845ին սկիզբը Կալկաթայի մէջ, ուր էր Հնդկահայ գաղթականութեան կըրթեալ եւ հարուստ մեծ խումբն, Արարատեան Ընկերութիւն անուամբ հիմնարկութիւն մը հաստատեցին տեղացի ուսումնատենչք, որուն մի միակ վախճանն էր տեղաբնակ Հայոց ազգայնութեան պահպանման եւ ուսումնական յառաջադիմութեան ձեռնտու ըլլալ՝ դպրոցներ հաստատելով, եւ գլխաւորաբար օգտակար գրքեր հրատարակելով։ Գործքն եռանդուն եւ գործունեայ անձանց

ձեռօք շատ շուտ յառաջ գնաց. Նոյն տարին ընկերութիւնն սեպհական տպարան մը բացաւ, որուն անդրանիկ ծնունդն եղաւ Օգոստոս 16 ին՝ Ազգասէր, Օրագիր Արարատեան Ընկերութեան, քաղաքական, վաճառական, բնական եւ բարոյական գիտելեաց անուամբ շաբաթաթերթ մը, որուն վճռաբանն՝ "Ուսումն առնէ զմարդ երջանիկ", Մասեաց փոքրիկ պատկերին ստորոտն կը հանգչէր:

Ազգասէրի դիրքն էր կէս քառածալ թերթ (4 թուղթ), տպագրութիւնն ու այնչափ մաքուր, տարեկան բաժանորդագինն՝ 24 ռուփի (գրեթէ 50 ֆր.): Խմբագիրն էր Մեսրոպ Դաւիթեան Թաղիադեանց, սարկաւագ Էջմիածնի, որ իբրեւ հայրենասէր գրագէտ եւ բանաստեղծ Հնդկահայոց մէջ ամենանշանաւոր անձն է[1], եւ նոյն ժամանակ Կալկաթայի Նորահաստատ Ս. Սանդխտոյ դպրոցին վարիչն էր:

Ազգասէրի լեզուն ի սկզբան աշխարհաբար էր: Սակայն աշխարհաբարն հաճոյ չեղաւ Հնդկահայոց, որոնց չափ գրաբարի սէր չէ ունեցած եւ ոչ մի հայ ժողովուրդ, եւ կրնանք ըսել թէ նաեւ գրաբար գրութեան մեծ յաջողութիւն տեսնուած է միշտ իրենց մէջ: Հասարակաց թա-

[1] Մ. Թաղիադեանց ունի բազմաթիւ ընտիր երկասիրութիւններ՝ գլխաւորաբար բանաստեղծական, որոնց մէջ նշանաւոր են մանաւանդ՝ Սօս եւ Սօնդիպի, Կալկաթա, 1847, եւ Ճանապարհորդութիւն ի Հայս, Կալկաթա, 1847: Տես՝ Կենսագրութիւն Մեսրովբայ Դաւթեան Թաղիադեանց Երեւանցւոյ, հաւաքեց եւ խմբագրեց Տ. Յովհ. Կ. Մկրեան, Թիֆլիզ, Յովհաննէս Մարտիրոսեանցի տպարան, 1886:

խանձանքն ստիպեց զխմբագիրն՝ որ հրատարակ-
մանէն քանի մ՚ամիս ետքն՝ 1846ին սկիզբն լե-
զուն փոխէ գրաբարի։ Այսպէս գրաբար լեզուա-
ամենայն յաջողութեամբ շարունակուեցաւ մին-
չեւ 1848 Յունիս 24, երբ Ազգասէրն իւր 141
թուովն գուժեց թէ Արարատեան Ընկերութիւնն
լուծուած է, վասն զի հետզհետէ տպուած գրը-
քերն կը մնային ընկերութեան քով, եւ ընկե-
րութեան լուծմամբն կը դադրի նաեւ Ազգասէրն։
Եւ այսպէս Ազգասէրն իւր առաջին շրջանն հինգ
հատորով փակեց, իւրաքանչիւր վեցամսեայն մէկ
հատոր հաշուելով։

Ոչ այնչափ ընկերութեան լուծումն, որ-
չափ Ազգասէրի դադարումն մեծ ազդեցութիւն
ըրաւ Հնդկաբնակ Հայոց վրայ. — Նշան՝ գտած
մեծ համակրութեանն։ Ամէն կողմանէ ցաւա-
կցութեան թղթեր եւ յորդորներ տեղացին, եւ
կարկառեցան նաեւ զուարթառատ ձեռքեր։ Շատ
չանցաւ՝ Կալկաթայի եւ այլ քաղաքաց հայազգիք
գումար մը ժողովեցին, գնեցին հայերէն տպա-
րանի մը կարեւորներն եւ ընծայեցին Մ. Դ. Թա-
ղիադեանցին՝ պայմանաւ որ շարունակէ Ազգասէրի
հրատարակութիւնն։ Արշալոյս Արարատեան (1848)
իւր 324 թուովն հրաւէր մը կարդաց ազգին
լռութեան, որով նաեւ Եւրոպայէն բաժանորդ-
ներ ձեռք կարկառեցին։ Ազգասէրն նոյն տարին՝
1848 Սեպտեմբ. 16ին վերստին լոյս տեսաւ ի
տպարանի Ազգասէրի Արարատեան, դարձեալ գրա-

բար։ Թաղիադեանց լրագրոյն հոգն բոլորովին վրան առաւ, եւ ի յիշատակ դադարեալ ընկերութեան՝ անուանեց զայն Ազգասէր Արարատեան, Հանրագիտարան տասնօրագիր, եւ այս Բ. Շրջանին վճռաբան դրաւ՝ "Մաքուր խղճմտանքն առնէ զմարդ երջանիկ", որ խօսքն կը շրջապատէր թերթին ճակատն տեսնուած Մասիս լեռն, որուն ստորոտն բաց գիրք մը կը հանգչէր։ 1849 Սեպտ. 15ին տասնօրեայն փոխեց երկշաբաթաթերթի՝ անուանելով Հանրագիտարան կիսամսագիր, եւ վճռաբան առաւ՝ "Աստուած եւ աշխատութիւն"։ Ապրեցաւ այսպէս իբր երկշաբաթաթերթ մինչեւ 1851 փետրուար 15, երբ Թաղիադեանց հարկ համարեցաւ Ազգասէր Արարատեանի 66րդ թուոյն նոր ցնցում մը տալ թուլացեալ սրտերու։ Նոյն թուով խմբագիրն խմբագրութեան դրամական նեղութիւններն ու տառապանքները սրտաշարժ գրչով նկարագրելէն ետեւ՝ սա խօսքերով վերջ տուաւ իւր թերթին։ "... Եղեն այո՛ լրագիրք ազգին մերոյ ի Հնդիկս, որպիսի են Ազդարար եւ Բանասէրն Մադրասայ, Օտանաֆոխեան լրագիրն Բումբայոյ, Շտեմարանն Կալկաթայ եւ Ազգասէրն[1], այլ ոչ ոք ի նոցանէ հաս ի հասակ

---

[1] Ինչպէս Սինկափորի Ուսումնասէր լրագրէն (1851, Թ. 43) կ՚իմանանք՝ առոնցմէ Ազդարար, Օտանաֆոխեան եւ Շտեմարան լրագիրներն Ազգասէրէն 40—50 տարի յառաջ հրատարակուած էին։ Ազդարարն իբրեւ անդրանիկ հայ լրագիր՝ ծանօթ է արդէն մեր ընթերցողաց։ Բանասէրն հրատարակուած է 1848ին, որուն վրայ քիչ մ՚ետքը։ Իսկ Օտանաֆոխեան եւ Շտեմարան պէտք էին պատմութեանս սկիզբները

մանկութեան, ուստի եթէ յամենուստէք կուսէ լքեալ եւ բարձի թողի եղեալս Աղեքսանդր Արարատեան երկեմնից եւ կիսոյ մեռանիցի՝ չիք զարմանք։ Եթէ քան զմեզ քաջեան այսքաննեաւ գէթ զայսչափս առնել ազգասիրիցեն, առաջին մեք լիցուք, որ համբուրեմք զձեռն։ — Գնա Աղեքսանդր, մեռիր որպէս եւ ամենայն Նախորդք քո, եթէ միայն քո պարծանաց աշխատիս եւ ոչ ընդհանուր ազգիդ։ Զի զոր ազգդ ոչ ունիցի, կամ ունել ոչ կամիցի, եւ քեզ ինքեան աւելորդ այն եւ անպիտան է։ Մեռիր. այլ երանի՜ էր քեզ, եթէ զմահ ծերունւոյն Սիմէօնի մեռանէիր՝ ասելով. Արդ արձակեա զծառայս քո ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ գերեզմանն քո, զոր պատրաստեցեր ժողովրդեան քում Իսրայէլի։„

Ո՞ր սիրտ չի խոցիր այս թախծալից հրաժեշտէն։ Այո՛, ամիս մ'անցաւ, եւ Հնդկաստանի անուանի հայ բանաստեղծն ու հրապարակագիրն հասցուց դիպեցուց իւր սլաքն զգայուն սրտերուն։ Թաղխադեանց նոյն տարին Արշալոյս Արարատեանի (1851) 398 Թուոյն մէջ "Աղեքսանդր Արարատեան այս երրորդ անգամ„ վերնագրով՝ ծանոյց Մադրասէ, Դանդունէ, Բաթաւիայէ ընդունած նամակներն, որոնց մէջ յիշատակութեան արժանի է ի մէջ այլոց Թուղթ Մարիա-

---

դրուիլ. բայց որովհետեւ ժամանակագրական կարգն անցաւ, եւ չենք ուզեր հոս կարգը տակնուվրայ ընել, կը դնենք ի վերջոյ Ցաւելուածի մէջ, ուրիշ ուղղելեաց եւ յաւելլեաց հետ։

մայ Յ. Յարութիւնեան եւ Օրիորդ Թագուհւոյ Մանուկեան՝ Մարց արդի գրագիտութեան Ազգիս ի Բաթաւիայ, որոնք 400 ռուփի (գրեթէ 1000 Ֆր.) ուղարկելով Թաղիադեանցին՝ կը յաւելուն. “Եթէ հնար իցէ այսու դուզն գումարիւ ձեզ քաջալերս առնել, զի կրկին սկսանելով ի լոյս ածչիք զԱզգասէր ձեր՝ մեք հոգւով ուրախ լիցուք. քանզի կարի ցաւ է մեզ ընդ կորուստ այսպիսի պատուական լրագրի յաղագս մեր ի Հնդիկս[1]:„

Գործունեայն Թաղիադեանց չյապաղեց. 1851 Սեպտ. 15ին վերստին կեանք տուաւ Ազգասէր Արարատեանի, դարձեալ իբր երկշաբաթաթերթ: Սակայն այս երրորդ անգամն ալ տարիէ մ'աւելի չկրցաւ ապրիլ. 1852ի սկիզբները տպարանն փոխադրուեցաւ ի Չիչրա գիւղաքաղաք, որ Կալկաթայէն գրեթէ 30 մղոն հեռի է: Այս օդափոխութիւնն ալ չօգտեց. 1852 Յուլիս 15ին ի սպառ դադրեցաւ բաժանորդաց

[1] Աւելորդ չէ հոս յառաջ բերել Սինկափորի Ուսումնասէր լրագրոյ (1851, Թ. 43) այս առթիւ գրածն. “Այս ողբամք սակս մահուան Ազգասէրի, եւ ոչ ընդունայն ողբամք քանզի նովաւ կորուսաք զարձանագրութիւնս ազգային գործողութեան ի Հնդիկս եւ ի տար յաշխարհս, նովաւ կորուսաք զպիտանի խթանս ազգային ուսումնասիրութեան, եւ նովաւ կորուսաք զվայելչագրութիւնս հմուտ քերթողի եւ վերատեսչի. նովաւ կորուսաք զհոգին ազատագրութեան, եւ նովաւ կորուսաք զջատագովս ազգիս՝ եւ զխրատիչս եղեռնագործից եւ անիրաւաց, եւ ի վախճանի նովաւ կորուսաք զամենայն, եւ զամենայն զորս պիտանի էր հասարակութեան, ուստի ցաւիմք եւ հեծեծանօք ցաւիմք զկորուստ սիրելւոյն Ազգասէրի՝„

պակասութեան պատճառաւ։ — Ասիկայ Հայ լրագրութեան Հին, սովորական, Համաճարակ եւ մահացու ախտն է։

Ազգասէրի բովանդակութեան վրայ այսպէս կը խօսի ժամանակակիցն Եւրոպա (1850, Թ. 34.). “Իւր նիւթը քննելով՝ կը տեսնենք որ քաղաքական մասին կատարելութեան ու շարունակեալ ամբողջ պատմութեանն այնչափ միտ չի դներ, այլ աւելի կը ջանայ բարոյական, բանասիրական, տնտեսական ու զուարճալի Հատուածներ Հրատարակել, եւ գլխաւորաբար իրեն պարտք կը սեպէ Հնդկաստանի Հայոց ազգային տեղական խնդիրներուն վրայ խօսիլ, ազգային դէպքերն, ազգային որոշումներն ու դպրոցներուն վիճակը ծանուցանել, Հնտեղացի Հայոց ազգային Հոգին պաՀել ու վառել...։ Ազգասէրի դատաստանները բաւական ազատ են, արձակ ու սուր թէ գովելու եւ թէ յանդիմանելու մէջ..։ Իսկ իր լեզուին ոճը կենդանի ու խաղացկուն է, եւ տեղացւոց բնութեանը Համաձայն նմանութիւններով ու առակներով զարդարուած. մէջը բանասէր մարդու մը մտածութեան արժանի զանազան խօսքի կամ բառի գիւտեր կը գտնուին. նոյնպէս նոր շինած կամ բարդած բառերուն մեծ մասին վրայ լեզուագիտական աշխոյժ կամ յաջողակութիւն մը կ՚երեւայ։„

Ազգասէրի աշխարՀաբարն վառվռուն է եւ բնական, եւ որչափ կ՚երեւայ՝ գրաբարի Հետեւ-

ողուԹեամբ գրուած է։ Ահաւասիկ պատառիկ մը վասն բանասիրաց։

«Այս տարւոյս յորդուԹիւնն Գանգէսի համարեա Թէ երեք մասն Բանգալու ծածկել այ ջրով. երկրամիջի շատ քաղաք եւ գիւղօրէք, եւ վաճառականաց շատ նաւեր այ կործանել. շատ մարդք իւրեանց կաԹնակեր որդեկանին իւրեանց գրկին երկու եւ երեք օրերով ծառերի վերայ են մնացել. որոց օգնուԹիւն այ հասել՝ փրկուել ան, եւ որոց ոչ՝ քնահատ եւ սովամահ վէր ան ընկել, եւ յուծական գերեզմանում ան Թաղուել. մայրն իւր սիրական զաւակի խտուր։ Աղիողորմ պատահարք. ով կարէ առանց արտասուաց նայիլ այնքան ողորմելի համարարածոց նեղուԹեան։ Մեր աշխատանաց ընկեր՝ պիտանի եւ օգտակար անասնոց չարաչար պատահարն Թողում ամէն ընԹերցողի ինքնին ի միտ առնուլ եւ ցաւակից լինել։ ԵԹէ տէրուԹիւնն հոգ չտանի իւր տառապեալ հպատակաց վերայ՝ կկարծվի որ սովու կը հանդիպի այս ամէնառատ եւ բարեբեր երկիրս։ Հարաւային կողմերից այն փափկասուն երկրական խաԹունանին, ան ողորմելի կերպ Թափառական դարձել, որոց երբեմն լոկ տեսնրվելն զարմանք էր համարելի, եւ ժողովուրդք սկսել ան խուռն ընԹանալ ի մեր մայրաքաղաքն եւ իւրեանց անասունքն հողումոխիր գնով վաճառել վասն իւրեանց ապրստի։» (Ազգասէր, 1845, Թ. 4։)

Ազգասէրն Հնդկահայոց ամենանշանաւոր Թերթն էր, չունեցաւ իւր նմանն՝ ոչ յառաջ եւ ոչ յետոյ։ Իւր անաչառուԹեամբն եւ տեղական լրոց առատուԹեամբն շատ սիրելի էր եղած իւր ընԹերցողաց։ Սակայն իւր կենաց օրերն ալ շատ մ'ուրիշներու պէս երկար չեղան. գրեԹէ ութ տարի ապրելէն ետեւ մեռաւ, Հնդկահայոց պատմուԹեան նշխարաց բաւական հարուստ Թանգարան մը, եւ հայ լրագրուԹեան պատմուԹեան մէջ բարի յիշատակ ու պատուաւոր դիրք մը ժառանդուԹիւն Թողլով։

## 15. ԿՈՎԿԱՍ

*Շաբաթաթերթ, Տփղիս, 1846—1848:*
*Խմբ. Գ. Սարքեսեանց եւ Մ. Պատկանեան:*
*Տպ. "Կովկաս" լրագրի:*

*"Հայոց Նոր գրականութեան, լրագրութեան, մտաւոր շարժման, քաղաքական զարգացման "ինիցիատիւը" անկասկած Տաճկաստանի Հայերին է պատկանում: Նրանք էին, որ առաջին անգամ հիմնեցին լրագիրներ ու ամսագիրներ, հրատարակեցին գրքեր ու գրքոյկներ, սկսեցին խօսել Հայերի քաղաքական դրութեան վրայ՝ մի խօսքով առաջին զարկը տուին Հայոց մտաւոր շարժմանը, որի հակահարուածը* (contre-coup) *զգացուեցաւ եւ ռուսահպատակ Հայերի մէջ*[1]*:"*

*Եւ իրօք մինչեւ դարուս կէսն Ռուսահայոց ուսումնական հայերէն գրոց եւ դասագրոց պիտոյքն միայն Արեւմուտք կը հայթայթէր: Գրեթէ կէս դարէ ի վեր Ռուսաց հետ՝ Ռուսիոյ Հայք եւս սկսան ուսումնական կեանք. եւ գլխաւորաբար ի Գերմանիա ուսումն առած երիտասարդք գրականութիւնը ձեռք առած՝ քիչ ժամանակի մէջ կրցան Արեւմտից դիմաց՝ Արեւելից Նոր հայգրականութիւն մը կանգնել:*

*Այս Նոր գրականութեան ներկայացուցիչներէն միոյն՝ լրագրութեան հիմնադիրն ալ Ա-*

---

[1] Ցարոյ, Հայոց Մամուլը Ռուսաստանում եւ Կովկասի մէջ, Թիֆլիս, 1878, էջ 17:

րեւմուտքէն եկաւ։ Յակոբ Վարժապետ Կարենեանց, կարնեցի գաղթականն ի Տփղիս[1], իրեն օգնական առնլով զՄ. Պատկանեան՝ փորձեց առաջին անգամ Ռուսահայոց մէջ լրագրութիւն հաստատել։ Այն ժամանակ, ինչպէս ցայսօր, կը հրատարակուէր "Կովկաս" (Кавказъ) ռուս կիսապաշտօնական լրագիրն։ Կարենեանց այս առաջին սկզբնաւորութիւնն պատշաճ տեսաւ սկսիլ թարգմանութեամբ նոյն լրագրոյ, նոյն անուամբ Կովկաս լրագիրը քաղաքական եւ բանասիրական անուանելով իւր շաբաթաթերթն։ Ասով բնականապէս իւր բովանդակութեան մեծագոյն մասը կը կազմէին այն լրերն, զոր կու տար ռուս "Կովկաս"։

Կովկասու առաջին թիւն ելաւ 1846ին Յունուարի 12ին[2]։ Դիրքն էր սովորական քաղաքական լրագրաց նման երկու մեծադիր թուղթ. "գիրը մեծկակ, տարեկան գինն էր 7 մանէդ (գրեթէ 120 ղր.) եւ շաբաթը մի անգամ կը տպուէր։ Լեզուն գրաբար էր, որուն մէջ բաւական յաջող ձեռք ու վարժ գրիչ մը կ'երեւ-

---

[1] Այսր խնամոցն ու առատաձեռնութեանը պարտական ենք Էջմիածնի ձեռագրաց Մայր Ցուցակը, տպ. ի Տփղիս 1863։ Նոյնպէս Բաղդասարեանին Գասպարեանին Մովսէսի Խորենացւոյ տպագրելոյն ի Վենետ. ընդ երկուց ձեռագրաց, ի Տփղիս, 1858։

[2] Բաւական շփոթութիւն կը տիրէ Կովկասու Հրատարակման տարին ծանուցողաց մէջ։ Ցարդ, անդ, էջ 18, Ա. Երիցեան, Փորձ, 1879, Թ. 9. էջ 45, եւ Հայկական Մատենագիտութիւն, ի բառն Կովկաս, կը դնեն 1847։ Ուղիղն է Եւրոպայինը, 1850 Թ. 35, ինչպէս մենք ալ դրած ենք։ Համմ. Արշալոյս Արարատեան, 1846 Մարտ 8, Թ. 254, եւ 266, 267 եւայլն թուերը։

ար․ Նոր յարմարցուած բառերուն մեծ մասը լեզուագէտ մարդու մտադրութեամբ եւ ախորժակաւ շինուած կրնանք համարիլ․ բայց կը գործածէր նաեւ Եւրոպացւոց եւ Ռուսաց այնպիսի զինուորական եւ քաղաքական բառերը, որոնց Հայերէնն ինք դեռ չէր գիտեր կամ չէր կրցեր ճշդիւ յարմարցընել[1] ։ . . . Իր պատմական ոճը ծանր, հանդարտ ու չափաւոր կ'երեւար։ Իսկ պարունակած նիւթն էր գլխաւորաբար Ռուսաստանի դէպքերն ու կարգադրութիւնները կայսեր հրամանները գովեստով, դրսի տէրութեանց գործողութիւններն այնչափ՝ որչափ որ Ռուսիայի լրագիրները կը պատմեն, բայց չափաւոր աղէկ կարգաւորութեամբ ու շարունակեալ ընթացքով։ Աս կողմանէ կրնանք ըսել որ Ռուսաստանի լրագիրներուն կը նմանէր, իսկ իրեն յատուկ եղածն աս էր որ ան կողմերու Հայոց ընդունած պատիւները, մասնաւոր դէպքերն ու հանդէսները կը դնէր, եւ պարագաներուն թոյլ տուածին չափ կը ջանար որ ազգայնութեան սէրը պահելու գործակից ըլլայ։ . . . Վերը յիշուած նիւթերէն զատ ունէր նաեւ տեղ տեղ բանասիրական ու պատմական կտորներ, վէպեր, ոտանաւորներ ու առեւտրական լրեր[2]։»

---

[1] Ոչ այնչափ Հայերէն բառերը չգտնել կամ յարմարցընել չկարենալ է պատճառն, որչափ որոշ սկզբունք մը, որ այսօր այնչափ յառաջացած է ոմանց քով, որ քիչ ժամանակէն պիտի ունենանք Հայատառ ռուսաբարբառ թերթեր։

[2] Եւրոպա, 1850, էջ 139։

Կովկասն իբրեւ անդրանիկ լրագիր Ռուսահայոց, աւելի դժուարին դրից մէջ քան այսօրուան հայ լրագիրք, եւ միանգամայն չկարենալով ունենալ այն ընդհանուր ծանօթութիւնն ազգին եւ ազգային իրաց վրայ, չէր կրնար բնականապէս կատարեալ ըլլալ ամէն կողմանէ եւ յատկապէս ազգային լրագրի մը նկարագիրն ու ոգին ունենալ։ Ազգային կարեւոր յօդուածներ, թղթակցութիւններ պակսելով՝ կը շատանար ազգային լոկ լրեր տալով, եւ ուրիշ յօդուածներն ու պատմութիւնները թարգմանելով։ Եւ որչափ ալ ուզեն ստգտանել գրաբարատեացք ոմանք իւր գրաբար լեզուն, մենք կը կարծենք թէ այն ատեն յարմար կրնային տեսնել գրաբարն իբրեւ լրագրի լեզու, քանի որ ռուսահայ ժողովրդենէ ընթերցող չկար՝ այլ միայն ուսումնական դասերէ, եւ աշխարհաբարն առ Ռուսահայս դեռ կը սպասէր Աբովեաններու եւ Նազարեաններու՝ գրաւորի ելլելու եւ գլխաւորաբար հրապարակագրական լեզու ըլլալու համար։ Եւ սակայն աշխարհաբարն ալ ի սպառ մերժուած չէր Կովկասու էջերէն։

Այսպէս շարունակեցաւ Կովկաս մինչեւ 1848 Սեպտ., երբ ծախուց՝ մուտքէն առաւելութիւնը[1], եւ աւելի՝ ժամանակին եւրոպական յեղափոխութեանց ծագմամբն՝ գրաքննութեան

---

[1] Հայաստան, 1850, Թ. 45։

խստութիւնը փակեցին ապարէզն կօշկաւոր. առջեւ: Սակայն Կօշկաւոր Ռուսահայոց մէջ լրագրութեան գաղափարը ծնաւ եւ սէրը վառեց, այնպէս որ մահուանէն երկու տարի ետքն Արարատ մը բարձրացաւ իբր շարունակութիւն Կօշկաւորի:

## 16. ՀԱՅԱՍՏԱՆ

*Շաբաթաթերթ, Կոստ. Պոլիս, 1846—1852: Խմբ. Յ. Չամուռճեանց, եւ այլք: Տպ. "Հայաստան" լրագրի:*

Տեսանք որ Կոստանդնուպոլիս, կեդրոնն արեւմտեան Հայ գաղթականութեան, ունեցաւ իւր սեպհական լրագիրներն. (Լրոյ Գիր, Ազդարար Բիւզանդեան, Ցոյցարար.) սակայն ամէնն ալ սակաւակեաց, ամէնն ալ թերի եւ անկենդան: Միւս կողմանէ թէեւ Արշալոյսն, Բազմավէպն, Հայրենասէրն գլխաւորաբար Կոստանդնուպոլսոյ համար էին, բայց տեղական քաղաքական եւ ազգային լուրերն չէին կրնար ժամանակին տալ: Կը զգար Կոստանդնուպոլսոյ Հայ գաղթականութիւնն սեպհական թերթի մ'անհրաժեշտ կարեւորութիւնն. սակայն Յովհաննէս Չամուռճեանցի ամէն ճիգն այս կարօտութիւնը լեցընելու՝ քաղաքական իշխանութեան կողմանէ դժուարութեանց կը հանդիպէր: Վերջապէս որոշեց Հայոց Պատրիարքարանն որ Սուրբհանդամ Կոստանդնուպոլսոյ անուն լրագիր մը հրատարակուի[1] եւ յաջողե-

[1] Արշալոյս Արարատեան, 1846, Թ. 258:

ցաւ թղթտուութիւն առնուլ։ Առաջին թիւն, որ 1846ին Յուլիսի 1ին հրատարակեցաւ, նոր անուամբ՝ Հայաստան, Լրագիր քաղաքական, ազգային, բանասիրական եւ առեւտրական կոչուեցաւ։

Հայաստանի դիրքն էր մեծադիր միածալ թերթ մը՝ երկու թուղթ, եռիջեան, թուղթն ու տպագրութիւնը լաւ, իսկ տարեկանն՝ 100 ղր.։ Կը հրատարակուէր ամէն շաբաթ։ Խմբագիր դրուեցան Պատուելի-Յովհաննէս-Պրուսացի-Տէր Կարապետեան-Զամուռճեանց-Տէրոյենց, որուն լեզուագիտութիւնն եւ բազմահմուտ գրագիտութիւնը ծանօթ էր, եւ Մկրտիչ Աղաթոն։

Հայաստան քաղաքական լրոց կողմանէ չէր այնչափ հարուստ եւ ստուգապատում, մանաւանդ եւրոպական տէրութեանց մասին։ Իւր առաւելութիւնն էր տեղական քաղաքական եւ ազգային լրերն, ազգային Պատրիարքարանի կարգադրութիւններն եւ այլն ընդարձակ ու ճիշդ հրատարակել։ Բաց ասկէ՝ նաեւ գաւառական թղթակցութիւնք աւելի կ'երեւային Հայաստանի մէջ, քան իւր ժամանակին ուրիշ լրագրաց։ Գիտնական եւ բանասիրական հատուածներ, ազգային հնութեանց վրայ տեղեկութիւններ, հայ ձեռագրաց ցանկեր եւ այլ նոյնպիսի կարեւոր նիւթեր կրնայ գտնել հետաքրքիր մը։ Եւ որովհետեւ նոյն ժամանակ բողոքականք սկսած էին Հայոց քով մուտ գտնել, կրօնասէրն Զամուռճեանց այլեւայլ հատուածներով կը կռուէր ա-

նոնց դէմ։ Եւ այս վախճանաւ նաեւ Հայաստանի “Վեցամսեայ կրօնական յաւելուած[1]„ կը հանէր։

Հայաստանի լեզուն պարզ եւ անզարդ աշխարհաբար է ինչպէս սովոր էր ընդհանրապէս գրել Չամուռճեանց. սակայն գրաբար ոտանաւորներ ալ կրնային Հայաստանի մէջ տեղ գտնել։

Հայաստանի ազգային կարեւոր նիւթերն են հետեւեալք։

Ազգային ուսանողք ի Փարիզ, Հայաստան, 1846, թ. 2։

Ողբական բանաստեղծութեան վրայ, 1846, 6։

Ապրօյեան դերդաստանին ազգաբանութիւնը, 1846, 14։

Ազգային պատմութիւն մատենական (Մխիթար Աբբահօր Բառագրոց վրայ՝ նամակ մը), 1846, 21։

Ազգային մատենագրութիւն, 1847, 33, 34։

Տեղեկութիւն ի վերայ Ռումէլիի եւ Վալաքիայի հայաբնակ քաղաքացն, 1847, 41։

Տեղեկութիւն ի վերայ Անի եւ Կարս քաղաքաց, 1847, 41, 44։

Վիճակագրութիւն Ակնայ քաղաքին, 1847, 43։

Վիճակագրութիւն Ընկիւրիւյի, 1847, 46։

Վիճակագր. Զմիւռնիոյ վիճակացն, 1847, 48։

Արտաշէնի հնութիւնները, 1847, 49 (տես նաեւ 53, ուր կ՚ուղղուին ստութիւնք)։

Վիճակագր. քաղաքին Տրապիզոնի, 1847, 8—61։

Քանի մի ձեռագրաց վրայ տեղեկութիւն, 1847, 13—66, 27—80. 1848, 49—102, 50—130, 2—107։

Ընտանեկան կեանքէն, 1847, 17—70։

Դուռնըֆօռի ճանապարհորդութիւն յԱրեւելս, 1847, 25—78, 26—79։

Ազգային սովորութիւն, կիկոներ, 1848, 43—96։

Հին ազգային տապանագիր մ՚ի Կիպրոս, 1848, 49—102. 1851, 13—65։

Ցուցակ ձեռագրաց Եղբարց Ինֆիաճեանց ի Տփղիս, 1848, 6—111, 7—112, 15—120։

---

[1] Հայաստան, 1846, թ. 27։

*Հնութիւնք Անւոյ*, 1848, 18—123, 22—127, 37—142, 41—146, 42—147, 44—149, 46—151. 1849, 6—163, 10—167, 14—171, 15—172, 16—173, 174, 175, 179:

*Ուղեւոր Հայ ոմն յԱդրիանուպօլիս*, 1849, 33—138, 34—139:

*Ազգային Հնութիւնք*, 1850, 23:

*Բացատրութիւն ծածկագիր յիշատակարանի Հոռոմոսի վանից*, 1851, 50:

*Հին Յիշատակարանք*, (*ձեռագրաց*), 1851, 51, 3—55, 5—57, 8—60, 22—74, 34—86, 41—93. 1852, 46—98, 48—100, 49—101:

*Աշխարհագրութիւն Կիլիկիոյ*, 1851, 12—64:

*Քլէանոր յունի Հայոց Պատմութիւն*, 1851, 17—69, 20—72, 31—83, 32—84, 45—97:

*Աշխարհագրական (Հայաստանի վրայ)*, 1851, 18—70, 20—72, 26—78, 37—89, 40—92, 44—96:

*Պիսուգունի սեպագիրք*, 1851, 13—83:

*Հայկական դրամագիտութիւն*, 1851, 33—85:

*Հնութիւնք Հայաստանի եւ Վրաց աշխարհին*, 1851, 39—91:

*Զննութիւնք բառից Պ. Պօղոսի Սեբաստեան*, 1852, 47—99:

*Մինչեւ* 1849 *տարւոյ սկիզբն Հայաստան անընդհատ շարունակուելէն ետեւ՝ Յ. Զամուռճեանց հրաժարեցաւ խմբագրութենէն, տեսնելով դրամական վնասներն: «Ազգային Գերագոյն ժողովը . . . զՀայաստան իւր պաշտպանութեան ներքեւ առնլով՝ . . . Հայաստան ալ անկէ ետեւ ոչ Պօղոսին է եւ ոչ Ապողոսին, այլ Ազգին է, եւ ազգային Մնտուկին հաշուին համար պիտի հրատարակուի Նոր տարւոյս սկիզբէն*[1]:»

*Մ. Աղաթոն Ազգային Գերագոյն ժողովէն խմբագիր կարգեցաւ, եւ տասն ուսումնասէր*

---

[1] *Հայաստան*, 1849, *Յունուար* 1:

անձինք Հայաստանի պայծառութեան ձեռնտուութիւն խոստացան հրապարակաւ, Հայաստանի նոյն տարւոյ առաջին թերթին մէջ։ Թէեւ այսչափ անձինք՝ սակայն Հայաստան իւր նախընթաց տարիներէն ետ էր։ Երկայն չտեւեց, այլ նոյն տարւոյ նոյեմբ. 12 թուոյն վրայ Մ. Աղաթոնի անունն՝ իբր խմբագիր՝ չտեսնուեցաւ։ Դեկտ. 17ին վերջին թիւ մը հրատարակեցաւ, եւ կարճատեւ հանգիստ մ'առաւ Հայաստան։

Յաջորդ տարւոյն սկիզբն՝ 1850 փետր. 6, վերստին լոյս կը տեսնէ Հայաստան. եւ Մ. Աղաթոն խմբագրութիւնը բոլորովին թողած ըլլալով, Ազգ. Գեր. Ժողովն զՀայաստան կը յանձնէ դարձեալ Յ. Չամուռճեանցի ձեռքը, որ եւ լրագրոյն վրայ՝ իբրեւ նոր կեանք առած, կը դնէ "Առաջին տարի, թիւ 1„։ Նոյն ուղղութեամբ շարունակեցաւ Հայաստան մինչեւ 1852։ Ազգ. Գեր. Ժողովոյ դրամական նպաստը պակսելով եւ խըմբագրին գրչին բռնութիւն ըլլալով՝ նոյն տարւոյ Յունուար 21 թիւն Հայաստանի վերջին թիւը կ'ըլլայ[1]։ Ազգային հզօր ձեռաց նիւթական օգնութեամբն՝ անմիջապէս նոյն տարին փետր. 2ին Հայաստանի աւերակաց վրայ կը բարձրանայ Մասիս։

Հայաստանն ալ մեր լրագրաց շարքին մէջ

---

[1] Ցերցյենց Հայաստանէն զատ թողած է մեզի Երեւակ եւ Ջօհար կէսկրօնական թերթերն, եւ գրեթէ փոքրիկ մատենադարան մը թարգմանեալ եւ հեղինակեալ գործերու։ Իւր գրագիտական արժանաւորութիւնը չճանչցուեցաւ, եւ ալեւոր ծերունին 1888ին իջաւ ի հող, մոռցուած ամէնէն։

պատուաւոր տեղ մը կը գրաւէ, թէ արտաքին եւ թէ ներքին արժանաւորութեանը կողմանէ։ Գլխաւորաբար կրնայ յիշատակուիլ Զամուռճեանցի ծանր գրուածներն եւ անկողմնակալ տեսութիւններն։

## 17. ԱԶԴԱՐԱՐ

*Երկշաբաթաթերթ, Մատրաս, 1846—:*

Ասոր վրայ Արշալոյս Արարատեանի[1] մէջ այսպէս կը կարդանք. “Մատրաս (ի Հնդկաստան) Աղդարար անուամբ նոր լրաթուղթ մը հաստատուեր է, որ ամիսը երկու անգամ պիտի հրատարակուի, եւ տնտեսական ու բանասիրական գիտելեաց վրայօք պիտի խօսի։ Յիշեալ քաղաքը դեռ հայերէն տպագրատուն չըլլալուն համար, առ այժմ ձեռագիր պիտի ըլլայ այս օրագիրը„:

Աղդարարին՝ առաջին հայ լրագրոյն վրայ խօսելով Պտմ. Հայ. Դպրութեան՝ կ՚ըսէ. “Այս վերջինն 'ի 1846 նորէն սկսաւ հրատարակուիլ, ու կրկին խափանուեցաւ„:

Մենք Արշալուսոյ յաջորդ թուերուն մէջ հետաքրքրութեամբ փնտռեցինք Աղդարարի հրատարակումը կամ գէթ փոքր ինչ յիշատակութիւն մը, եւ չգտանք։ Ուրիշ կողմանէ ծանօթութիւնք կը պակսին։

---

[1] 1846. Նոյ. 15 թիւ 272։

## 18. ԵՒՐՈՊԱ

*Շաբաթաթերթ, Վիեննա, 1847—1863:*
*Խմբ. Մխիթարեան Միաբանութիւն:*
*Տպ. Մխիթարեան:*

«Որչափ ալ Հայաստան իր աշխոյժ գործունէութեամբն՝ լրագրական կարեւոր ծառայութիւն մը կը մատուցանէր, բայց բուն եւրոպական ոճով եւ Հմտութեամբ գրուած լրագրի մը դեռ կարօտ կրնար սեպուիլ ազգը։ Խոհական եւ Հեռատես անձինք՝ Վիեննայի Մխիթարեան Հարց ծանօթ աշխատասիրութենէն կը սպասէին այնպիսի անձնանուիրութեան մը։ Ոչ լոկ իրենց ուսումնասէր փոյթն, այլ բնակած քաղաքին մատուցած մեծամեծ դիւրութիւններն՝ առՀաւատչեայ կը սեպուէին գործոյն ընտրութեանը եւ ազգայնոց դիտած վախճանին։ Շոգեշարժ գործիք՝ անմիջական յարաբերութեան մը մէջ դրած էին զարեւելս՝ Աւստրիոյ մայրաքաղաքին Հետ։ Այսպիսի փափաքի մը՝ կատարման՝ յօժարափոյթ օժանդակեցին Մխիթարեանք, ու 1847 տարւոյն մէջ սկսան շաբաթական թերթ մը Հրատարակել Եւրոպա կոչելով։ Անունն իսկ կը յայտնէր Հրատարակողաց վախճանը[1]։»

Եւրոպա իւր ծնունդն պարտական էր վերոյիշեալ անձանց թախանձանաց, որոնց գլուխն

[1] Պատմ. Հայ. Դպրութեան, Վենետ. 1878. Բ. 478։

էր ժամանակին ամենամեծ Հայ քաղաքագէտն Վսեմ. Յակոբ Չէլէպի Տիւզեանց, որ 1843էն ի վեր կը յորդորէր Վիեննայի Մխիթարեանքն՝ Հրատարակել շաբաթաթերթ մը, որ «Եւրոպայի տէրութեանց կարգերուն եւ սահմանադրութիւններուն, խորհրդարանաց մէջ եղած խնդիրներուն եւ տնտեսաբանութիւններուն, դեսպանական խօսակցութիւններուն եւ ուրիշ քաղաքական դէպքերուն վրայ կարելի եղածին չափ՝ ամբողջ ու խիտ տեսութիւն մը տայ, վստահելի աղբիւրներէ քաղելով. ասկից զատ՝ նաեւ ունենայ իր բանասիրական եւ ուսումնական մասը պահանջեալ կատարելութիւններով, եւ աս ամէն բաներուն վրայ խօսի ծանրութեամբ, հանդարտութեամբ, ընտրութեամբ եւ կարելի եղածին չափ մաքուր ոճով[1]։»

Այս ծրագրին համեմատ Վիեննայի Մխիթարեանց տպարանէն 1847 Ապրիլ 20ին Յայտարարութիւն մը եւ Եւրոպա անուն թերթ մը «Փորձի համար» հրատարակուեցաւ նոյն Միաբանութեան խմբագրութեամբ. իսկ բուն թերթին առաջին թիւն սկսաւ հրատարակուիլ նոյն տարին Յունիս 17/29ին։

Եւրոպայի դիրքն էր՝ միածալ թերթ մը, (2 թուղթ) թող յաճախ տրուած յաւելուածները, եռիջեան, գիրը մանր, տպագրութիւնն ամէն

[1] Եւրոպա, 1850, թ. 37։

կողմանէ ընտիր[1], տարեկան գինը 10 ֆիորին, եւ շաբաթն անգամ մը կը հրատարակուէր. Թերթն որովհետեւ գլխաւորաբար եւրոպական լուրեր էր, եւ երկրորդաբար՝ [illegible], ընդարձակ եւ քաղաքագիտական ոճով [illegible] լուրեր կու տար: Քաղաքական լրոց կապակցեալ շարունակութեան մասնաւոր միտ կը դնէր, եւ որովհետեւ աւելի պետական հայ պաշտօնատեարց ընթերցանութեան սահմանեալ էր՝ յառաջ կը բերուէին ամենայն դէպք եւ բանախօսութիւնք, որոնք ընդհանուր քաղաքականութեան համար նշանակութիւն կրնային ունենալ: Միով բանիւ «Եւրոպական արուեստի կատարելութիւն, լրոց ճոխութիւն, բանասիրական եւ ուսումնական հատուածոց գիտնական առատութիւն, — ասոնք էին նոր լրագրին յատկութիւնները, եւ որովք արժանապէս հաճոյացաւ ազգին[2]:»

Եւրոպա հետեւեալ ազգային ընդարձակ յօդուածները կը բովանդակէ:

---

[1] «Տպագրութիւն (Եւրոպայի) ըստ ամենայն մասանց՝ է գեղեցիկ յոյժ, եւ կարի իմն զուարճանամք տեսեալ ի ծաղկագիր տառս վերնագրին որք յոյժ զարդարուն են, միանգամայն եւ վայելչականք. զի յանօթ առնուլ փորագրողին զզարդս եւրոպական վայելչագրութեան՝ անվիթար պահեաց եւ զսեպհական ձեւս մերոյն՝ զոր բազումք յարգի փորագրողաց յաչաց կորուսանեն ի նմանակ դէպս:» Բանասէր, 1849, Թ. 38:

[2] Պատմ. Հայ. Դպր. Բ. 479: — «Ըստ բարեմաղթութեան մերում տեսանեմք զայս պատուական լրագիր (Եւրոպա) ծայրացեալ արդեան տեղեկութեամբք Եւրոպայ եւ ազգային հնութեամբք, որպէս եւ բնականօք եւ բարոյականօքն պիտոյ», կը գրէ Ազգասէր, 1850, Հատ. Բ. Թ. 45:

## 1847

Անի քաղաքին աւերակները, Եւրոպա, Թերթ «Փորձի համար»։ — Վանի ամրոցին կամ հին Վանի նկարագիրը. Թ. 10, 13, 16, 19։ — Եգիպտոսի Փոխարքային երեւելի հայազգի պաշտօնատէրները. 20։ — Ամէտէ Ժուպէր գաղղիացի ատպետին Հայոց վրայ տուած ծանօթութիւնը. 23։

## 1848

Ազգային տեղեկութիւն. Արուեստական եւ ուսումնական յառաջադիմութիւն. 1։ — Հայերէն հին ձեռագիրներու վրայ. 6, 8, 9։ — Հայերէն քերականութիւնները, եւ առանձինն Չալըխեան Վ.ին քերականութեան Դ. Տպգր.ը. 14։ — Պր. Աղէքս. Ռոսի. Անգղիայի պատգամաւոր. 16։ — Ազգային լրագրաց ու օրագրաց օգտակար գործածութիւնը. 18, 19, 21։ — Շահաբաս Պարոնց Թագաւորին Հայերը Պարսկաստան տանիլը. 22, 25։ — Մեր հին պատմութիւնը ստուգիւ պատմական աղբիւրներէ բղխած է, ու պատմական հաւատք կրնայ ընդունիլ. 29, 32։ — Նոր Ջուղայի Հայերը. 37, 42, 1849, 52։ — Հայրենասիրութիւն. 48÷52։

## 1849

Փոքր Հայաստանի մէջ գետնի տակ թաղուած քաղաք մը. 1։ — Ազգային տեղեկութիւն. Ջմիւռնիայի թղթի գործատունը. 2։ — ԺԴ—ԺԸ դարու հայերէնի վիճակը. 4, 5, 8։ — Երկու հայազգի Սուրբ Եւրոպայի մէջ. 12։ — Ազգային լեզուն՝ ազգային յառաջադիմութեան գլխաւոր միջոցն է. 17, 18, 20, 22։ — Հայաստանի վրայ հետաքրքրական լուրեր. 33—50, 1850, 6—49։ — Վանայ արձանագիրներուն վրայ նոր քննութիւն. 44։ — Հայաստանի մէջ աղի լեռ մը կը փլչի. 45։ — Դրանսիլվանիայի Հայոց՝ պատերազմին պատճառաւ կրած վնասները. 45։ — Հայաստանի մէջ Նոր տեսակ մանանայ. 46։ — Բաբելոնի վրայ հայ թագաւոր մը ու հայերէն հին բառեր. 47։ — Գաղթականութիւնք առ Հայս. 49, 51, 1850, 2, 3։

## 1850

Հին տոմար եւ Նոր տոմար. 1։ — Հայաստանի Արղն ու Խարբերդ գաւառներն ու անոնց հանքերը. 4։ — Հայ մատենագիրներուն գործածած ճեն ու ճենաստան բառերուն վրայ քննական խնդիր մը. 4։ — Աշ-

խարհքիս վրայ առաջին պատերազմը. 5։ — Բանասիրական փորձ մը. 7, 9։ — Միջին դարերու մէջ Հայոց արուեստագիտութիւնն ու քաղաքային կրթութիւնը. 8։ — Եզանց Թաթախումին դէմ Հայոց դեղ. 8։ — Լեզուագիտական նոր զննութիւն. 11։ — Եւրոպական մեծ վարժարան մը Հայոց ստացուած կ՚ըլլայ. 13։ — Հայրենասէր հայազգի մը. 14։ — Ազգատեաց մարդու արժանի պատիժ. 15։ — Սինկափորի հայազգիները. 18։ — Հաւատարմութեան չքնաղ օրինակ մը. 19։ — Եւրոպայի մէջ Հայոց սկսած քանի մը արուեստական ճիւղերը. 21։ — Գիշ (հայ) զօրապետն ու իր վերջին յաղթութիւններն. 23։ — Նոր հայերէնի կամ աշխարհաբառ լեզուին ուրացական բայերը. 23։ — Հայ ազգին վրայ ընդհանուր տեսութիւն. 24, 25։ — Կալկաթայի Ազգասէր լրագիրը. 24։ — Սուչաւայի Հայոց դպրոց. 26։ — Ազգային լրագիրներուն ու օրագիրներուն պատմութիւնը. 28—40։ — Հայ-Վալաք ժողովրդապետ մը Աւստրիայի կայսեր առջեւ. 32։ — Լրագրական գլխաւոր բառից հաւաքում. 41։ — Բոհեմերէն լրագրի մը Հայոց վրայ գրածը. 43։ — Հնդկաստանի Հայոց վրայ քանի մը լուր. 44։ — Հայոց մատենագրութեան պատմութիւնը. 47, 50, 52, 1851, 2—21։ — Աստեալի եւ Մաճառստանի Հայերը. 48, 51, 53, 1851, 1։

## 1851

Խոզզկոյ գնդապետը Մեծ Արարատայ վրայ կ՚ելլէ. 3, 4։ — Մատթէոս Ուռհայեցի եւ Պ. Եդ. Տիւլորիէ. 6։ — Պարսից Թգրին. առաջին Թարգման Մեծ. Յովհ. Դաւթեան ապետն ու Պարսկաստանի Հայազգիները. 10։ — Հայաստանի Կողբ գեղը. 12։ — Տրդատայ առանձնանալն ու մահը. 13—26։ — Ռուսաստանի Հայոց յառաջմունքը. 20, 24։ — Մեծն Ներսէս ու Հայաստանի վրայ ունեցած ազդեցութիւնը. 27—45, 1852, 1, 3։ — Ազգային հնութիւնք. 28, 30։ — Ճէզայիրլեան ամիրային մետաքսի մանարանը. 32։ — Նորագիւտ Գողթան երգ. 33։ — Հայաստանի Ակն (Էկին) քաղաքն ու իր ոլորտը. 39, 41, 42։ — Պիլէճիկճեան մետաքսարան. 44։ — Ռուբինեան Թագաւորներուն չհրատարակուած դրամները. 46, 48, 1852, 2—16։

## 1852

Պր. Ռիկլէր բժշկին Հայոց վրայ գրածը, 4—8։ — Խորհրդածութիւնք ազգային լեզուի վրայ, 6—30։

— Արտաւազդ Արտաշէսեան. 13—35։ — Պայեան մետաքսարան. 15։ — Սեբէոս Եպ. պատմագիր. 21, 26, 31։ — Կիլիկիայի մէջ Հայոց հնութիւնները 28։ — Շաֆրազ եւ Շահրիման կամ Ռուսաստանի մեծ ադամանդը. 28։ — Մանուկ Պէյ Միրզայեան. 33—50։ — Պարոնից Աշտարակ. Դարեհ Թագրին. Հայոց հին պատմութեան վերաբերեալ սեպակերպ արձանագիրները. 34—41։ Կարս քաղաքն ու համանուն կուսակալութիւնը. 44—48։ — Հայազգի Անտոնեւիչ ընտանիքը. 51, 1853. 2, 6։

## 1853

Հայերէն տեսակ տեսակ գրքերուն իրարու հետ կարճառօտ համեմատութիւնը. 3։ — Վարդ Մամիկոնեան. 7—52։ — Պզտիկ գաղափար մը Լեհաստանի Հայոց յառաջուան վիճակին վրայ. 13։ — Ազգային. 20։

## 1854

Ազգային կրօնական մատենագրութեան վրայ քանի մը խօսք. 6։ — Եզնիկ Կողբացի. 21։ — Պր. Տիւլօրիէին Հայոց վրայ գրածը, 24, 25, 27։ — Ազգային դաստիարակութիւն. 26, 29, 32։ — Ազգը յառաջանալու համար պէտք է որ հրապարակական արդիւնք ցուցընէ. 28, 31։ — Քիլի քաղքին աւանդը. 30։

## 1855

Լեւոն անուանեալ իշխան Հայաստանի. 46։

## 1856

Մատենագրական խորհրդածութիւններ, 28—37։ — Հայոց պատմագրաց մատենադարան մը, 38։ — Մարդկային լեզուին սկզբան, հանգամանաց, միութեան ու բաժանման եւ ազգային լեզուաց վրայ քննական տեսութիւն մը, 39—52։

## 1857

Պետրոս Բագրատունի իշխան զօրապետը, 32։

Այսպէս Եւրոպա տասնումէկ տարի անընդհատ շարունակեցաւ։ Այս միջոցին ի Կոստանդնուպոլիս եւ այլուր քաղաքական ազգային լրագիրք աճեցան, որոնք շուտով կը ծանուցա-

Նէին տեղական օտարազգի թերթերու հեռա-գրաց տուած եւրոպական լրերը, եւ Ե–ր–ո–ղ–յի տուած շաբաթական լրերն արդէն շատ կը հնա-նային մինչեւ որ Արեւելք հասնէին։ Բնականա-պէս անկարելի էր այս կողմանէ բաժանորդաց պահանջումը գոհացընել, եւ Ե–ր–ո–ղ–յի կը մնար քաղաքական սահմաններէ մեկնիլ եւ ընտանե-կան շրջանի մէջ մնալ։ Այսպէս 1858ին Ե–-ր–ո–ղ–ն երկշաբաթաթերթ եղաւ, իբրեւ Օր–գէ՛ ընտանեկան. դիրքը փոխեց եւ առաւ գրեթէ այս-օրուան Հ–ն–դ–է–ս Ա–մ–օ–ր–է–յ–ի դիրքն, 16 թուղթ, գինն ալ կիսեցաւ։

Խմբագրութեան դիտումն էր գլխաւորա-բար ընտանեկան թերթ մը տալ, եւ այս պատ-ճառաւ Ե–ր–ո–ղ– այս երկրորդ կերպարանաց տակ աւելի վիպասանական, ուսումնական եւ զբօսե-ցուցիչ տեղեկութիւններ կու տար։ Այս ուղղու-թեամբ շարունակեցաւ մինչեւ 1863 տարւոյ վերջն, եւ նոյն տարւոյն հետ վերջացաւ այն հրատարակութիւնն ալ։ — Այս շրջանին մէջ կան՝

Մանազկերտի պաշարումը, 1858, 1։
Պատմ. վաճառականութեան Հայոց, 1858, 6, 7։
Հայոց կրօնը քրիստոնէութենէ յառաջ, 1858, 13։

Քաղաքական Ե–ր–ո–ղ–յի ջանքն էր իւր լրերն ստոյգ աղբիւրներէ առնուլ, եւ քաղաքական դիպաց շարունակեալ պատմութիւնն այնպէս խրարու կապել, որ պատմական ամբողջ մը կազ-մէ, եւ առանց մէկ կամ միւս կողմնակցութեան

միտելու՝ իրաց վիճակն ինչպէս որ է՝ ներկայացընէ։ Թէ ընդհանրապէս ուսումնական եւ թէ ի մասնաւորի ազգային յօդուածոց մէջ քննադատական ոգիէ կ՚առաջնորդուէր։ Եւ որովհետեւ իւր հեռաւոր դիրքն ու հանգամանքը չէր ներեր իրեն ազգային առօրեայ դիպաց մերձենալ, կը ստիպուէր շատանալ եւրոպական հայ գաղթականութեանց կենաց զբաղելով, եւ երբեմն երբեմն միայն ազգային կենաց վրայ ընդհանուր տեսութիւն կը հրատարակէր։ Իւր առանձինն ջանից առարկաներէն մին ալ էր արեւմտեան աշխարհաբարին զարգացումն տալ եւ ռամիկ աշխարհաբարն, որ մինչեւ նոյն ժամանակ կը գրուէր, գիտնական դրաւոր լեզուի հանել։

Թէ Եւրոպա իւր այս ընթացիւքն որչափ կրցաւ համապատասխանել իւր պարտուցը, կրնանք միայն թողուլ որ խօսին այն ամէնքն՝ որ զԵւրոպան տեսած են եւ ընթերցած։

### 19. ՍՈՒՐՀԱՆԴԱԿ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ

*Շաբաթաթերթ, Կոստ. Պոլիս, 1847—1850:*

*Տպ. Պօղոսի Արապեան Այտուճենցոյ:*

Լրագիրն այլեւայլ կերպարանաց տակ մտնելէն ու ելլելէն ետեւ[1], 1847ին վերստին հրապարակ ելաւ. Այս անգամ Սուրհանդակ Բիւզանդեան Լրագիր Տէրութեանն Օսմանեան անուամբ։

[1] Տես էջ 32, ծան. 2։

Գիրքն էր մեծադիր միածալ թերթ մը, եռիջեան, լեզուն աշխարհաբար: Բովանդակութիւնն էր Թուրքիոյ Վառնայէ տաճիկ թերթին քաղաքական լրերն: Վերջին ժամանակներն սկսաւ նաեւ եւրոպական լրագիրներէ ուսումնական եւ տնտեսական յօդուածներ ալ թարգմանել: Ժամանակակից ազգային լրագրաց համեմատութենէն զուրկ՝ ապրեցաւ յանձանօթս մինչեւ 1850: Այս տարւոյ մէջերն ի սպառ դադրեցաւ[1]:

## 20. ԲԱՆԱՍԷՐ

*Տասնօրեայ թերթ, Մադրաս, 1848—1849: Խմբ. Մ. Պ. Յովհաննէս: Տպ. Ասիատիկ վիմատպարան:*

Հայ լրագրութիւնն ալ ունեցաւ իւր յեղափոխութեան օրերն: Ճիշդ այն տարին երբ Եւրոպա յեղափոխական խռովութեանց մէջ կը ծփար՝ Արեւելք Հնդկաստանի Մադրաս քաղաքին մէջ հայ լրագրութեան յեղափոխութեան դրօշը պարզեցաւ: Այն լոկ լրատուական ոճն՝ որով մինչեւ այն ժամանակ քաղաքական հայ թերթերն տեղական ազգային լրերն կու տային, չէին քաղաքական լրագրի մը կոչման պարտաւորութեանց լիուլի գոհացումն: Վասն զի լրագիր մը որ չունի կարծիք, որ չունի որոշ սկզբունք, որ չի դատեր, որ կը շողոքորթէ միայն իւր կողմնա-

---

[1] Արշալոյս Արարատեան, 1850, Թ. 370:

կիցքն՝ այս կամ այն կողմանէ, այն՝ հասարակու-թեան առաջնորդութեան գործը չի կատարեր, այլ լոկ լրատուի՝ որ այսօր այս եւ վաղն այն լու-րը կու տայ, առանց անկէ բան մը զգալու եւ զգացընելու։

Կրնանք ըսել որ այս էր մինչեւ այն ժա-մանակներն հրատարակուած քաղաքական հայ թերթերու կատարած դերն, ոմն առաւել, ոմն նուազ։ Այս ընթացքն յանկարծ փոխել դիւրին չէր, եւ տոկուն յարատեւութեան եւ մեծամեծ զոհերու պէտք կար. դժուարին էր մանաւանդ այս կէտին մէջ խոհեմութեան առաջնորդու-թեան հետեւիլ եւ այնպիսի սաստկութեամբ չյարձակիլ՝ որ նպատակէն անդին անցնուի՝ չափազանցութեամբ, եւ յանկարծական բռնու-թենէ փութով ուժաթափ լքուի, մանաւանդ որ փափուկ ձեռաց վարժ թիկանց հարկ պիտի ըլլար տալ հարուածները։ Այս էր ահա Մա-դրասի Բանասէր, օրագիր քաղաքական, գրագիտական եւ առեւտրական թերթին ընթացքն ու նկարա-գիրը։

Մինչդեռ Կալկաթայի Ազգասէրն իւր ա-ռաջին հանդիսար կը ծանուցանէր 1843 Յունիս 24ին, աստին ի Մադրաս նոյն տարին Յունիս 14ին Ս. Գ. Յովհաննէս Նոր լրագրի մ'աւետիքն, կամ ինչպէս ժամանակակիցք կ'ուզէին՝ բօթը տուաւ։ Անաչառ եւ սրալեզու խմբագիրն իւր թերթը կը հրատարակէր տասն օր անգամ մը,

որուն լեզուն գրաբար էր, դիրքն՝ միածալ երկ-
իջեան թերթ մը, իսկ տպագրութիւնն՝ վի-
մագրոշմ։

Լրագրութիւնն այս ժամանակներն Հնդկա-
հայոց համար անհրաժեշտ պահանջ մըն էր, եւ
լրագիր զլրագիր կը մղէր։ Կալկաթայի Ազգասէրն
լրագրաց ընթացից սովորական հարթերեսէն
(niveau) քանի մ'աստիճան վեր էր միայն՝ իւր
անաչառ դատաստանաւն եւ անկողմնակալ ազատ
ընթացիւքն։ Բանասէրն եկաւ մէկանց ահագին ոս-
տում մ'ըրաւ, այնպիսի սաստկութեամբ մը՝
որուն ոչ այլք եւ ոչ ինք կրցաւ դիմանալ։ Բա-
նասէրն իւր գրագիտական եւ առեւտրական լրերն
անգղիական լրագիրներէ կ'առնուր թարգմանու-
թեամբ, իսկ քաղաքական լրոց մէջ միայն տե-
ղական եւ այլ քաղաքներու ազգային լրերը կու-
տար, եւ գլխաւոր գործն էր նոյն տեղեաց ե-
րեւելի ազգայնոց՝ բայց սանաւանդ եկեղեցական
դասուն պարսաւելի կողմերը մերկացնել, դատել
եւ դատափետել աներկիւղ եւ անաչառ։ Այս
սաստկութեան մէջ յայտնի է թէ շատ դժուա-
րին էր չափազանցութեանց չյանգիլ։ Մինչ-
դեռ ասդին Արշալոյս Արարատեան՝ Բանասէրէ եւ
յաջորդ Հնդկահայ թերթերու, որոնք առաւել
կամ նուազ նոյն ուղղութիւնն ունէին, կը յան-
ձնէր չափաւորութիւն եւ թերութիւններն ի
հրապարակ չհանել, անդին Բանասէրն այսպէս կը
դատէր զինք. "Արշալոյս Արարատեան . . . 'ի մերս

դժբաղդութիւն՝ եւ կարծեացն հակառակ քաջ կենցաղագիտին Թէոփրաստոսի, շատ համարի յիշատակագրել զհայրենասէր եւ զառաքինի գործս զոմանցն յազգէս՝ առ 'ի լաւութիւն յորդորել զմնացեալսն։ Ըստ այնմ եթէ համազգիք մեր 'ի տես ընծային 'ի Թուղթս Նորա, են որ երեւին իբր հրեշտակակրօն եւ Աստուածիմաստ վարդապետս, եւ մեծարգի հայրենասէր գործակալս. են որ՝ իբր աննախանձ առաքինի վաստակողս 'ի լուսաւորութիւն եւ 'ի մխիթարութիւն ազգին, առատաձեռն հիմնարկուք ճեմարանաց, թանգարանաց, եւ աղքատանոցաց։ Ո՛վ երջանկութեանս. չիք անդանօր ոք ժանտ արժանի խարազանաց տպագրութեան. ո՛չ ոք դառնազգեստ բայց գայլացեալ հովիւ օցտող հօտին, ո՛չ ոք գոռոզ գործակալ ազգային իրաց. ոչ ոք քսակակալ աղքատաց Յուդայախոհ գող։ Երանի՜ թէ[1]։„

Այս ուղղութեամբ իբրեւ “ազատական լրագիր„, անխնայ կը “խարազանէր„ ազգային մեծամեծաց հասարակութեան վնասակար գործերն, որ բնականապէս հաճոյ չէր ի դար իւր անփորձ ընթերցողաց։ Ամէն ճշմարտութիւն իւր ամբողջ պայծառութեամբն ամէնուն առջեւ դնել միշտ օգտակար չէ. կան աչքեր որ լուսոյ սաստկութեան չեն կրնար տոկալ. եւ այս պատճառաւ խմբագրական ճարտարութիւն պէտք է

[1] Բանասէր, 1849, Թ. 38։

շատ անգամ դառն դեղահատերն զգուշութեամբ եւ սիրուն եղանակաւ պատատելու, եւ Ատտիկէի եղեւսիննեան գաղտնեաց շղարշով ծածկելու դառն ճշմարտութիւններն, զորոնք կամաց կամաց եւ զգուշութեամբ պարզել միայն կրնայ օգտակար ըլլալ: Այս կը պակսէր Բօնստէթէն, եւ այս պատճառաւ բաժանորդք իրենց դրամովն յանդիմանութիւն գնել չուզելով՝ եռեւէ եռեւ հրաժարական տուին, որով մէկ տարւոյ միջոցին մէջ իւր արդէն սակաւաթիւ բաժանորդներէն ի սպառ լքեալ մնաց:

Մահուանէն երեք շաբաթ առաջ այսպէս կը գրէր Բօնստէթէր. "Քանի մի վնասս միայն զոր կրեցաք վասն անկեղծ զննութեանցս (խմ՝ դէ-տօղոմինէոն, ողբօրօրօմինէոն,) առաջի առնեմք աստանօր, զմնացեալսն 'ի բաց թողեալ առ 'ի խորշելոյ 'ի ձանձրութենէ: Մի օր՝ փոքր մի բրդեալ 'ի նախանձուէ բարեկարգութեան, ասացաք, թէ չէ՛ր պատշաճ կատարել հանդիսաւոր ժամերգութեամբ զկարգ թաղման 'ի վերայ մարմնոյ հռովմէադաւանի վախճանելոյն երկայնամեայ անհաղորդ. եւ ահա՛ անդէն վաղվաղակի թողին զմեզ քանի մի ստորագրողք: Ցայլում աւուր՝ շարժեալ յերկիւղէ զի մի՛ վտանգեսցի ապահովութիւն ազգայինս իրողութեանց, ասացաք. թէ մե՛ծ անհոգութիւն էր վստահանալ 'ի խարխուլ կառս քարշեալս 'ի միականի ամեհի ձիոյ զյարգելի անձն պաշտօնէի ազգիս. եւ անդէն իսկ

Թողին զմեզ քանի մի ստորագրողք։ Յայլում մի աւուր՝ 'ի տալ 'ի Թղթի մերում զանուն միոյ 'ի պատուելի պարոնաց տեղւոյս, մոռացաք յարել յանունն զպատւոյ ածականս՝ քաղաքավայլ եւ իմաստնապերճ, եւ ահա՛ անդէն Թողին զմեզ դարձեալ քանի մի ստորագրողք։ Դարձեալ յայլում աւուր՝ Թելադրեալ, ի խոհական մտածութեանց, ասացաք, թէ լա՛ւ չէր հոգաբարձուի արկեղ տնանկաց՝ 'ի կորուստ մատնել եւ կամ 'ի փոխ առնուլ անտի դրամս՝ յորոյ կարգեալն էր 'ի զգուշութիւն, եւ ահա անդէն Թողին զմեզ դարձեալ քանի մի ստորագրողքն։ Այսպիսիք են պտուղք զոր բերէ ծառն ազատ տպագրութեան ի Մադրաս, այլ ակն ունիմք զի այլազգք իցեն արգասիքն յայլ տեղիս։ Բայց եւ այնպէս այդ ամենայն անյաջող ելք վաստակոցս, ո՛չինչ զարհուրեցուցանեն զմեզ. յաչս մեր խըրտուիլք են այդոքիկ որք երկեցուցանեն զմանկտի միայն եւ զանբանս 'ի կենդանեաց։ Այլ մեր սըրտապնդեալ 'ի քաջալերութենէ ճշմարտասէր եւ ուղղադատ բարեկամաց՝ հանապազորդեսցուք յերկս մեր աներկիւղ[1]։ „

Սակայն այս քաջալերութիւնք կ'երեւայ թէ չկրցան սրտապնդել զինք, վասն զի երկու թիւ ետքն ստիպուեցաւ լրագիրը դադրեցընել գրելով վերջին անգամ սա խօսքն. "Լրագիրս

---

[1] Անդ։

դադարեցաւ 'ի 15 Յունիսի ամսոյ 'ի կարօտութենէ քաջալերութեան[1]:„

## 21. ՈՒՍՈՒՄՆԱՍԷՐ

*Երկշաբաթաթերթ, Սինկափոր, 1849—1853: Խմբ. Գ. Դ. Գալստանեան: Տպ. ‘‘Արփի,, վիմագրական Պր. Պ. Ա. Սէթի:*

Միշտ ստոյգ է Ե. Տիւլօրիէի սա խօսքն. “Հայոց գաղթականութիւն մ'ուր որ հաստատուի, առաջին հոգն է... հաստատել եկեղեցի մը, դպրոց մը, դրամատուն մը եւ լրագիր մը:„ Ասոր համոզիչ վկայութիւն է մեզի Հնդկաստանի հայ գաղթականութիւնն: Ասիկայ որ դարուս առաջին կիսուն վերջերն 7000 հոգի կը համարուէր, ցրուած Արեւելեան Հնդկաստանէ մինչեւ ի Ճաւա, ունէր իւր եկեղեցեաց, ուսումնարանաց հետ նաեւ իւր տպարաններն ու լրագիրները: Կալկաթայի Ազգասէրն ու Մադրասայ Բանասէրը միեւնոյն ժամանակ հրատարակուելով ալ՝ բաւական չէին երեւար. Սինկափոր ալ, ուր միայն 50 Հայ կար (30 այր, 7 կին, 5 մանչ եւ 8 աղջիկ) ինչպէս 1850 տարւոյ մարդահամարը կը ցուցընէ[2], Գրիգոր Դ. Գալստանեան կը ձեռնարկէ 1849ին Յուլիս 1ին Ուսումնասէր, ըս-

[1] “Բանասէրն Մադրասայ դադարեցաւ. վասն էր, վասն զի անաչառ էին բանք նորին եւ ամենեքեան անաստարութեամբ ըքին՝ Թողին՝ մեռանել եւ ոչընչանալ:„ Ուսումնասէր, 1851, Թ. 43:

[2] Ուսումնասէր, 1850, Թ. 16:

գիր քաղաքական, գրագիտական եւ առեւտրական անուն թերթ մը հրատարակել, որ թէեւ Սինկափորի մէջ միայն 7 բաժանորդ ունէր եւ բովանդակ բաժանորդացը թիւն էր Բ. Տարին՝ 30 հոգի, սակայն եւ այնպէս 4 տարի կրցաւ անընդհատ շարունակուիլ։

Ասոր դիրքն էր միածալ թերթ մը, (2 թուղթ) երկիջեան, տպագրութիւնն՝ վիմագրոշմ, լեզուն՝ գրաբար, եւ կը հրատարակուէր ամէն ամսոյ 1ին եւ 15ին։ Ճակատը Սինկափորի վիմագրոշմ պատկերը կար, ինչպէս նաեւ Ա. Տարին քանի մը թուոց մէջ Հնդկաստանի վերաբերեալ քանի մը վիմագրոշմ պատկերներ ունէր։ Ի սկզբան կը տպուէր "յԱրփի վիմագրատանի Պր. Պ. Ա. Սէթի", իսկ 1852 Դեկտ. 27էն սկսեալ՝ սեպհական վիմագրատան ունեցաւ "Մասիս" անուամբ։

Աղջամէջէ եւ Բռնամէջէ դժբախտ ելքն խոհեմութիւն սորվեցուցած էր Ռուսաստանէն, բայց միեւնոյն "ազատական" ուղղութեան հետեւող էր ինքն ալ, որչափ չափաւորութիւն պահել ջանալով։ Առեւտրական մասն շատ հարուստ էր. Հնդկաստանի վաճառական նաւերու վրայ տեղեկութիւն, առեւտրական վիճակագրութիւն, ապրանքներու արժէք, եւ այլն, ամէն թուոյ մէջ կը գրուէր։ Գրագիտական մասն՝ անուամբ միայն կար։ Իսկ քաղաքական մասին մէջ տեղական եւ մերձաւոր հայաբնակ քաղաքաց ազգային առօր-

եայ լրերը կու տար, խմբագրական յօդուած-ներով ազգային կենաց լաւ ու յոռի մասերն կը քննադատէր, եւ առիթ ալ չէր պակսեր ամէն թուղթ մէջ վիճելու իւր հակառակորդաց հետ։ Եւ որպէս զի չխրտուցանէ, իւր յօդուածներն Ս. Գրոց վկայութեամբք եւ աղօթական բացա-գանչութեամբք կը մեղմէր։ Եւ ի՞նչ էր այս ամէն զգուշութեանց փոխարէն իրեններէն ընդու-նածն, եթէ ոչ՝ միեւնոյն բանն ինչ որ Բ'ն— —էլէն կ'ըլլար. «Ոմանք հրաժարեցան, կ'ըսէ, 'ի բաժանորդութենէ Ո———ժ———էլէն, որոց զպատ-ճառն ատանօր յիշատակել անարժան համա-րիմք. սակայն սակաւ աւուրքք յառաջ եւս՝ այլ ոմն ստորագիր հրաժարեցաւ....։ Համապա-տասխանի (Էմ՞ Ըղըսակէյ) ոմն՝ զորոյ անուն ատա-նօր յիշատակելն կարեկցաբար խնայեմք՝ գրէ թէ Տրտմութեամբ գրեմ սակս Ո———ժ———էլէն, որ տեղս ոչ ով չհաւանեցան. ուր որ գիտեմ, առանց իմ ոչ ինչ ասել, ասեն որ ոչ ինչ մի բանական եւ պիտանի լուր չկայ գրած, մանաւ-անդ որ անցեալ թուոււմն առեւտրական ոչ ինչ բան չկէր գրած, որով չուռանի (°) գրութիւնքն ամենայն տեղն բռնել էր... որպէս քանիցս ան-դամ գրելամ արդէն որ այդ մասն հատկապէս գրես. ներկայ տես այդ չգրելովդ տեղւոյս մեր ազնիւայքն շատ վնասի են հանդիպման....։»

Ո———ժ———էլէն այսպէս կենաց պայքարի մէջ՝ գոհ իւր 30էն ոչինչ աւելի բաժանորդաց վրայ,

8*

կրցաւ ապրիլ մինչեւ 1853։ Այս ժամանակներն
Աւստրալիոյ Մէլպէօռն քաղաքին մօտերն ոսկւոյ
նոր հանքեր գտնուած էին, եւ Մէլպէօռն գաղ-
թողներն մեծամեծ դրամոց տէր կ'ըլլային։ Ո——
——Ծ——ւէյն շատ անգամ յորդորեց Հնդկահայ
վաճառականներն որ Մէլպէօռն երթան վաճա-
ռականութեան համար, մանաւանդ որ Անգղիացի-
ներն ներքին եւ գաղտնի դաշնադրութեամբք
Հայոց վաճառքներն տանիլ յանձն չէին առնուր։
Եւ երբ տեսաւ որ միտ դնող չկայ, 1853ին Ո——
——Ծ——ւէյլէ Մայիս 27 թուոյն մէջ գրեց, թէ Ոչ
ոք կամի "յետեւիլ մերոցս ազգասէր եւ բարե-
միտ յորդորանաց... ուստի եւ մեք 'ի սէր ազ-
գիս եւ յառաջադիմութեան նորին՝ յուսացեալ
'ի խնամս եւ յողորմութիւնս Նախախնամողին
մերոյ՝ ստանձնեցաք զայս դժուարին ճանապար-
հորդութիւն„։ Այսպէս մեր խմբագիրն դադրե-
ցընելով իւր թերթն "... ոչ ի վշտակրու-
թենէ... եւ ոչ յանազգասիրութենէ, տինա
եւ ոչ ի պակասութենէ ծախուց, այլ սակս մե-
ծամեծ օգտից վասն մերոցս սիրեցեալ ազգին„
մեկնեցաւ գնաց ի Մէլպէօռն ի խնդիր ոսկւոյ,
եւ ո՛ գիտէ թերեւս այսօրս միլիոնատէր մ'եղած
է մեր երբեմն-խմբագիրն "ի սէր ազգիս եւ յա-
ռաջադիմութեան„։

## 22. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ

*Երկշաբաթաթերթ, Նիկոմիդիա, 1850 — 1853:*
*Խմբ. Ա. Մուրատեան: Տպ. “Հայրենասէրի„:*

Լրագիր հրատարակելն իբր ազգասիրական գործ նկատելու եւ ազգին պարտաւոր ծառայութիւն մատուցանելու գաղափարն արեւմտեան Հայոց միտքն դարուս կէսէն սկսաւ գրաւել: Այս ժամանակներն, մանաւանդ ասկէ քանի մը տարի ետքն գրիչ բռնել կրցողն “ազգասիրական գործոյ„ կը ձեռնարկէր, այնպէս որ եթէ 1850էն մինչեւ 1870 հրատարակուած լրագրաց համար ըսելու ըլլանք՝ թէ ընթերցող ազգայիններէն առաւել էին թուով՝ գէթ շատ չափազանց խօսած չենք ըլլար:

Այս կարգի լրագրաց առաջինն էր Հայրենասէր, լրագիր քաղաքական ազգային եւ բանասիրական անուն երկշաբաթաթերթն, զոր Աբրահամ Մուրատեան 1850ին Մայիս 1ին սկսաւ հրատարակել աշխարհաբար լեզուաւ: Ա. Մուրատեան, որդի ժամանակին անուանի Մուրատ վարժապետին, ինչպէս կը պատմուի, 17 տարուան պատանի մըն էր, եւ այնչափ սաստիկ էր “ազգասիրական գործոյ„ եռանդն՝ որ անկարող ըլլալով մամուլ մը ձեռք բերել, ինքը շարադրելէն ետեւ իւր թերթն, կամ ճշդիւ՝ իւր թուղթն — վասն զի լրագիրն փոքրադիր քառածալ թերթի մը դէմ խօսքն էր միայն — կը շարէր.

եւ Թղթի կտորն կը դնէր շարածի վրայ, Թաղի-քի կտոր մը կը փռէր, վրան կ'ելլէր եւ ոտքով կը ճնշէր, կը ճմլէր, եւ ահա "Հայրենասէրի տպարանէն„ դրոշմուած դուրս կ'ելլէր սոյն "ազգասիրական գործն„ ։ Այսպէս կը պատմեն, եւ լրագրին առաջին Թերթերն, զոր մեր առջեւ ունինք, կրնան ասոր նպաստաւոր վկայութիւն տալ։ Այս ընթացքն կ'երեւայ Թէ երկու տարի ամբողջ ամենայն յաջողութեամբ տեւած է, վասն զի Գ. Տարւոյ սկիզբն կը ծանուցանէ Թէ մամուլ ձեռք բերած է։ Սակայն այս գործն լոկ մանկական եռանդէ յառաջ եկած չ'երեւար. վասն զի մանուկ խմբագիրն իւր Թերթն օրէ օր կատարելագործելու ճիգ կը ցուցընէր եւ կարող եղաւ նոյնն երեք տարի անընդհատ շարունակել, վայելելով իւր ընթերցողաց համակրութիւնն։

Հայրենասէրի առաջին Թուերն երկիջեան էին։ 1851ի սկիզբներն "տպարանն„ քիչ մ'աւելի կարգի դնելով՝ Մայիսին Հայրենասէրի դիրքն աւելի մեծցուց եւ եռիջեան ըրաւ՝ մնալով դարձեալ մէկ Թուղթ, եւ շարունակեց այսպէս մինչեւ 1852ի վերջերն, երբ 54դ Թուոյն Թերթն աւելի ընդարձակեց եւ ըրաւ երկու Թուղթ։ Սակայն կ'երեւայ Թէ դժուարամարս եկաւ ասիկայ. վասն զի նոյն տարին Նոյեմբերի սկիզբն իւր 60դ Թերթին մէջ յատուկ յայտարարութեամբ մը ծանոյց՝ Թէ իւր վերջը կը մօտենայ եւ օրերը կը համրուին՝ ըրած ծախուց եւ ոչ

մէկ մասն հանել կարենալուն[1]։ Եւ արդեամբք 1853ին Յուլիսի սկիզբը դադրեցաւ երեք տարի տեւելէն ետեւ։

Հայրենասէրի բովանդակութիւնն էր՝ տեղական լուր, ազգային լուր Կ. Պոլսէն, թարգմանական փոքրիկ հատուածներ եւ մանրավէպեր։ Կրնայ յիշուիլ սա ազգային յօդուածն՝ «Աշխարհագրութիւն Կիլիկիոյ[2]»։

Հայրենասէրն որչափ ալ մեր լրագրութեան մէջ աննշանակ երեւոյթներէն ըլլայ, սակայն զարմանալի է Նիկոմիդիայի մէջ, կարեւոր միջոցներէ զուրկ հրատարակուելուն, բաւական յարատեւ ճալուն եւ ժամանակակից հայ լրագրաց համակրանքն վայելելուն պատճառաւ։ Խմբագիրն 1860ին Բարիզ փոխադրուած՝ հոն սկսաւ նոյն քաղաքին անուամբ Փարիզ անուն լրագիր մը հրատարակել. իսկ 1865ին Գահիրէ Արմաւենի անուն լրագիրը կը հրատարակէր։

## 23. ԱՐԱՐԱՏ

*Շաբաթաթերթ, Տփղիս. 1850—1851:*
*Խմբ. Գաբր. Քհ. Պատկանեան: Տպ. Գ. Քհ. Պատկանեան:*

Տփղիսի Կովկասու դադարմանէն երկու տարի ետքն՝ Տ. Գաբր. ՔՀ. Պատկանեան ի Տփղիս առանձին տպարան մը բանալու եւ հայերէն

[1] Մասիս, 1852, թ. 43։
[2] Հայրենասէր, 1851. թ. 25, 27—։

լրագիր մը հրատարակելու արտօնութիւն առնըլով " կառավարչական իշխանութենէ ", 1850 Սեպտ. 1ին հրատարակեց Արշալոյս անուն աշխարհաբար շաբաթաթերթի մ'առաջին թիւն:

Արշալոյսը Կովկասու իբր շարունակութիւն կը նկատուէր, սակայն քաղաքական մաս մ'ամենեւին չունէր, գէթ ի սկզբան: Դիրքն էր մեծ ութածալ ամբողջ թերթ մը՝ 8 թուղթ, տարեկանը 6 րբ. տպագրութիւնն՝ շատ խեղճ: Խմբագիրն իւր լեզուն աւելի արեւմտեան աշխարհաբարի մերձեցնել կը ջանար՝ ինչպէս ընդհանրապէս աչքն արեւմուտք դարձուցած էր ուրիշ ամէն մասին մէջ ալ:

Արշալոյսի բովանդակութիւնն էր՝ բարոյական եւ կրօնական յօդուածներ, մանր վէպեր, ոտանաւոր բանաստեղծութիւններ եւ Հայ գրականութեան վերաբերեալ յօդուածներ: 1851 Մարտ 3ին՝ թերթին երկրորդ վեցամսէին սկիզբն՝ հետեւելով բաժանորդաց խնդրանաց, սկսաւ նաեւ քաղաքական ռուս լրագիրներէ տեղական եւ քաղաքական լուր քաղել եւ արեւմտից ազգային լրագիրներու ազգային կարեւոր լուրն հաղորդել: Եւ այսպէս Արշալոյս օրըստօրէ զարգացում եւ յառաջադիմութիւն կը ցուցնէր: Թէեւ լեզուն ժողովրդեան փոքր ի շատէ մատչելի էր, եւ ինքն առանձինն կը հրատարակուէր Կովկասու Հայոց մէջ, սակայն հազիւ տարի մը կեանք կրցաւ ունենալ, եւ 1851ին Ապրիլ

վերջերը կ՚երեւայ արտաքին հարկէ մը ստիպեալ՝ դադրեցաւ ընդ ամէնն 33 թիւ հրատարակուելէն ետեւ։

Արշալոյս դագարումն փոքրիկ կայծ մ՚ու-գրգիռ տուաւ Տփղիսի Ներսիսեան Ուսումնարանի հոգաբարձուաց՝ դադարեալ թերթին տեղ կամ իբր շարունակութիւն՝ Էջմիածին անուամբ թերթ մը հրատարակելու [1], սակայն ասիկայ մինչեւ ցայսօր իբրեւ լուր մը միայն կը մնայ։

## 24. ԲՈՒՐԱՍՏԱՆ

*Ամսաթերթ, Կ.Պոլիս. 1851—1853:*
*Խմբ. Աշակերտք Ս. Սահակեան վարժարանի:*
*Տպ. Յովհ. Միւհէնտիսեան:*

Կոստանդնուպոլսոյ Սամաթիա թաղին մէջ իբր 1844ին ազգային բարերարաց ձեռօք Ս. Սահակեան անուամբ վարժարան մը հաստատուած էր։ Այն վարժարանին զարգացեալ աշակերտքն՝ իրենց ցուցուած խնամոց երախտագիտութեան եւ արդեանց իբր նշան՝ 1851ին սկիզբն Յունուարին կը սկսին *Բուրաստան* Ս. Սահակեան, օրագիր քաղաքական, բանասիրական, տնտեսական եւ ուսումնական անուամբ ամսաթերթ մը հրատարակել։

Ասիկայ թէ ձեւով (16 երես) եւ թէ բովանդակութեամբը նմանողութիւն մըն էր այն ժամանակուան Բազմավէպի, եւ կը բովան-

[1] Արշալոյս Արարատեան, 1852, թ. 406։

դակէր "զանազան ուսմանց եւ գիտութեանց վերաբերեալ եւ տեղեկութեան արժանի յօդուածներ, եւ զանազան լեզուներէ թարգմանութիւններ, գրաբառ եւ աշխարհաբառ ճառեր եւ ոտանաւորներ, հետաքրքրական նիւթեր, բարոյական խորհրդածութիւններ եւ առակներ, զուարճալի հատուածներ եւ պատմութիւններ . . . արհեստական գիւտեր . . ." եւ այլն։ Եւ պէտք է ըսել՝ որ իրեն գծած սահմանին մէջ ըստ բաւականի կատարեալ էր եւ հաճոյ ժամանակակցաց։ Այսպէս առաջին տարին ամբողջ հրատարակեցաւ ըստ կարգի։

Բ. Տարւոյն՝ 1852ին սկիզբն հարկ եղաւ երկայն ատեն լռել, եւ հազիւ նոյն տարւոյ Հոկտեմբերին[1] սկսաւ Բ. Տարւոյ ամսաթերթերն տալ Յունուարէ սկսեալ։ Սակայն բաժանորդաց սակաւութիւնը կը ստիպէր այս Բ. Տարին անկատար թողուլ, եւ 1853ին փետրուարին[2] քանի մը թիւ ալ հրատարակեցաւ։ Նոյն տարւոյ Հոկտեմբերին արդէն ի սպառ դադրած էր[3]։ Եւ այսպէս, որչափ կրցանք ստուգել, 3 տարւոյ միջոցին մէջ 18 ամսատետր կրցաւ հրատարակուիլ։

Ազգային յօդուածներէն կը յիշենք՝

Յունուարամսոյն կաղանդչէքին վրայ, 1851, Թ. 2։
Հայաստանի ռամկական երգ մը, 1852, Թ. 4։
Լուր եւ տես Հայաստանի, 1852, Թ. 5, 6։

---

1 Մասիս, 1852, Թ. 38—։
2 Արշալոյս, 1853, Թ. 440—։
3 Մասիս, 1853, Թ. 9։

Երիտասարդական եռանդեան սոյն արդիւնքն բնականապէս ընդհանուր ուշադրութիւն գրաւել կարող չէր, եւ ոչ ալ իրական արդիւնք մը կարելի էր սպասել ամսաթերթէն։ Սակայն իւր հրատարակած նիւթերն արդարեւ սպասուածէն աւելի էին։

## 25. ԲԱՆԱՍԷՐ

*Ամսաթերթ, Կ. Պոլիս, 1851—1859:*

*Խմբ. Մ. Յովհ. Հիսարեան: Տպ. Հ. Գայոլի:*

Կոստանդնուպոլիս հրատարակուած ազգային լրագրաց լեգէոնին մէջէն մարդ հազիւ կրնայ քանի մը թերթ գտնել՝ որ հրատարակման ժամանակ իրենց կոչման համապատասխանած ըլլան եւ տպագային համար ալ արժէք ունենան։ Կոստանդնուպոլսոյ Բանասէրն այս սակաւաւորաց կարգէն է, եւ համակրանաց արժանացած էր հրատարակման ժամանակ եւ յետոյ։

Մ. Յովհ. Հիսարեան 1851 Յունուարին սկսաւ հրատարակել Բանասէր ամսական տետր, ազգային, բանասիրական եւ քաղաքական անուամբ փոքր ութածալ աշխարհաբար ամսաթերթ մը, իւրաքանչիւր տետրն գրեթէ 50 երես։ Բովանդակութիւնն էր՝ ազգային յօդուածներ ժամանակակից ազգային կենաց եւ թերութեանց վրայ, ազգին անցեալն եւ նշանաւոր անձնաւորութիւնները, վէպեր, բանաստեղծութիւններ, քննադատութիւն, զուարճախօսութիւն եւ քաղաքա-

կան տեսութիւն։ Այսկէ կը տեսնուի՝ որ խմբագիրն բազմակողմանի եւ Հետաքրքրական նիւթեր գիտէր գտնել եւ միտ կը դնէր իւր պարտաւորութեանց։ Թող տալով կրօնական մասին իւր անուղիղ կարծիքներն՝ պէտք ենք ըսել որ խմբագիրն ունէր իւր ժամանակին Համեմատաբար բաւական ընդարձակ գիտութիւն եւ տեսութիւններն սուր էին, եւ կրնայ ցայսօր Կոստանդնուպոլիս Հրատարակուած ուսումնական լրագրաց մէջ բարձրիգլուխ պարծիլ։

Այն ամսաթերթին առաջին տարւոյ ազգային կարեւոր յօդուածներն են՝

Ազգային ժամանակակից կենաց, կրթութեան, զարգացման եւ այլն վրայ այլեւայլ յօդուածներ, 1851 էջ 9—541։

Պ. Փլանտէն ի Հայաստան, 1851 էջ 9—541։

Քաղաքականութիւն Հայաստանի, Ճառ Հ. Ոժէի, էջ 349։

Քլաբրոթի թարգմանութիւն ժամանակագրութեանց Յովհ. Ոսկերչեան, էջ 397։

Տեսութիւն Հայոց վրայ խօսող եւրոպացի մատենագրաց, էջ 401։

Մուրատեա տ'Օհսոն, էջ 14։

Կարապետ Մանուկ Օղլու, էջ 74։

Շահան Ջրպետ, էջ 210։

Մկրտիչ Ամիրայ Ճեզայիրլեան, 310։

Գողթան երգ (նորագիւտ, կեղծ), 240, 388։

Ռամկական երգեր, 291։

Պուլպուլն Այգեստանի, 338։

Երգ Եարոջ, 434, Գինի, 437։

Յաղագս սրբազան բանաստեղծութեան առ Հայս։ — Աստուածաշունչ գիրք, 421։ — Շարականք, 428։

Յաղագս ազգնաւորութեան թատերական արուեստին յայլեւայլ ազգս, 524։

Աղէքսանդրի Հելլենացւոյ Պատմ. Հայոց, 144, 245։

Բանասէրն տարի մը միայն ամբողջ կրցաւ Հրատարակուիլ։ 1852ին սկիզբն Անրի Գայոլ գաղղիացին, որուն տպարանը կը տպուէր Բանասէրն, Ասիական օրագիր Կ. Պոլսոյ (Journal asiatique de Constantinople) անուն բազմալեզու ամսաթերթ մը սկսած էր հրատարակել։ Բանասէրի լեզուագէտ խմբագիրն իւր թերթը թողած՝ յիշեալ ամսաթերթի գլխաւոր խմբագրութիւնը վրան առաւ[1]։ Թէ որչափ ատեն մնացած է Հիսարեան սոյն պաշտօնին մէջ, մեզի ծանօթ չէ։ 1859ին զինք կը գտնենք դարձեալ իւր Բանասէրին գլուխն։ Սոյն տարւոյ Յունուարին Բանասէրի Բ. Տարւոյ առաջին թիւն հրատարակեցաւ, դրիւքն ու բովանդակութեամբ առաջին տարւոյ նման։ Այս երկրորդ տարւոյ երկրորդ թիւն լոյս չկրցաւ տեսնել, եւ 1859ի Թիւ 1ն Բանասէրի վերստին ծննդեանն աւետեացը հետ՝ մահուանը բօթը տուաւ։

## X 26. ՄԱՍԻՍ

*Շաբաթաթերթ եւայլն, Կ. Պոլիս 1852—1889։ Խմբ. Կ. Ս. Իւթիւճեան։ Տպ. "Մասիս,, լրագրոյ։*

Կոստանդնուպոլսոյ Հայոց հասարակութիւնն արդէն 1846ին իբրեւ յինքեան գործարանաւոր եւ զարգացեալ՝ ունեցաւ իւր սեպհական մամուլն, որ մերթ այս եւ մերթ այն անուամբ եւ խմբագրութեամբ եկաւ հասաւ մինչեւ

---

[1] Արշալոյս, 1852, Թ. 412։

մեր օրերն։ Ժամանակի պիտոյքն ծնաւ զՀայաս-տան, ինչպէս տեսանք, նոյն պիտոյքն շարունակեց նոյն թերթն Մասիս անուամբ, եւ ասոր ծերու-թեան ժամանակ՝ թերթն Արեւելք անուան տակ նոր խմբագրութիւն ունեցաւ։ Այս երեք թեր-թերն այսպէս անընդհատ զիրար յաջորդեցին, թէեւ երեքին ինչպէս անունն, նոյնպէս ուղղու-թիւնն եւ ոյժն ալ զատ էր։

Երբ 1852 Յնր. 21ին ներքին յարաբե-րութիւնք ստիպեցին Հայաստանի խմբագիրն ետ կենալ թերթին խմբագրութենէն, Կ. Ս. Իւ-թիւճեան ազգայնոց յորդորանօքն ու ձեռնտու-ութեամբը նոյնին շարունակութիւնն յանձն ա-ռաւ, եւ նոյն տարին փետր. 2ին հրատարակեց իւր խմբագրութեամբ շարունակող թերթին առաջին թիւն, որուն անուն տուած էր՝ Մասիս, Լրագիր Քաղաքական, Ազգային, Բանասիրական եւ Գրա-գիտական։

Մասիսի սկզբանէ հետէ բովանդակութիւնն էր գլխաւորաբար ներքին եւ արտաքին քաղա-քական լրեր, ազգային ու խառն լրեր, ազգային եւ մատենագրական յօդուածներ, եւ ժամանա-կակից ազգային եւ կրօնական խնդիրներ։ Դիրքն ամէն ժամանակ նոյն չէր, այլ ժամանակին պի-տոյից համեմատ՝ շատ կերպարանաց մէջ մտաւ ու ելաւ։ Որչափ կրնանք կը համառօտենք հոս այս փոփոխութիւնքն։

Առաջին թուէն սկսեալ, այն է 1852

փետր. 2, մինչեւ 1862 Յնր. 2 շաբաթաթերթ էր, միածալ քառիջեան մեծ թերթ մը։ 1862 Յնր. 2էն մինչեւ 1864 Դեկտ. 22՝ նոյն շաբաթաթերթէն զատ՝ շաբաթն երկու անգամ կը Հրատարակուէր Մանրալուր Մասիս լրագրոյ անուամբ փոքրիկ թուղթ մը, որոյ նպատակն էր լրասէր ժողովրդեան առօրեայ քաղաքական համառօտ լրեր տալ։ 1864 Դեկտ. 30էն մինչեւ 1866 Յուլ. բուն շաբաթաթերթէն զատ, որ 1865 Յնր. 2էն սկսեալ աւելի մեծ դիրք առած եւ եղած էր հինգիջեան, կը Հրատարակուէր միջակ մէկ թղթոյ վրայ պարզ Մասիս անուամբ շաբաթական թերթ մ'ալ։ 1866 Յուլ. 7էն սկսաւ միջակ գրիւք թերթ մը շաբաթն երեք անգամ Հրատարակուիլ. բայց ասիկայ եւ ոչ ամիս մը կրցաւ դիմանալ։ Յուլիսի վերջէն սկսեալ՝ բուն շաբաթաթերթէն զատ, որ նախնական դրից մէջ մտած էր դարձեալ, կը Հրատարակուէր շաբաթն 2—4 անգամ Օրաներն Մասիս լրագրոյ անուամբ փոքրիկ թուղթ մը, որ տեւեց ամբողջ նոյն տարին։ 1867 ամբողջ տարին՝ բաց ի գլխաւոր շաբաթաթերթէն, շաբաթն երկու անգամ կը Հրատարակուէր միջակ թուղթ մը, պարզ Մասիս անուամբ։ 1868 Յնր.էն մինչեւ 1869ի վերջը գլխաւոր շաբաթաթերթին հետ կը Հրատարակուէր շաբաթն 2—4 անգամ Մասիս օրաներն անուամբ թուղթ մը։ 1870 Յնր.էն մինչեւ 1878 Դեկտ. գլխաւոր թերթն շաբաթն

երեք անգամ եւ երբեմն աւելի կը հրատարակուէր։ Իսկ 1879էն մինչեւ 1884 Յունիսի վերջը թերթն ամէնօրեայ էր, գիրքն 1880 Ապրիլէն քիչ մ՚աւելի մեծցած եւ հինգիջեան էր, իսկ 1882 փետր.ի սկզբէն աւելի լայնցաւ երկայնեցաւ եւ եղաւ վեցիջեան։ 1884—1889, երբ Մասիսն Նորածին Արեւելքի ընկերութեան ստացուածն եղած էր, Մասիս թէ գիրքն եւ թէ հրատարակութեան ժամանակն շատ անգամ փոփոխեց, եւ եղաւ մերթ ամսաթերթ մերթ տասնօրեայ եւ մերթ շաբաթաթերթ։ Ուրեմն Մասիս ի սկզբանէ մինչեւ 1862 շաբաթաթերթ էր, 1862—78 շաբաթն 3—6 անգամ կը հրատարակուէր, 1879—84 ամէնօրեայ էր, 1884էն մինչեւ մեր օրերն ամսաթերթ եւ երբեմն շաբաթաթերթ էր։

Մասիսի խմբագիր եւ տէր էր ի սկզբանէ մինչեւ 1884 Յունիսի վերջը Կ. Ս. Իւթիւճեան։ Նոյն ամսոյն՝ Իւթիւճեան աչաց տկարութեան պատճառաւ չկարենալով խմբագրութիւնն յառաջ վարել, ինչ ինչ պայմաններով Արեւելքի ընկերութեան անցուց Մասիսի տէրութիւնն ու տպարանն, ուր ի սկզբանէ հետէ կը տպուէր թերթն։ Այնուհետեւ Արեւելքի վարչութեան տակ Մասիս շատ խմբագիրներ ունեցաւ, թէեւ մինչեւ 1888 Կ. Ս. Իւթիւճեան արտօնատէր կը ստորագրուէր։ Նոյն տարին Դեկտ.ին ազգային իշխանութեան դէմ գրուած յօդուած մը պատ-

ճառ եղաւ Թերթին դադարման։ 1889ին Յունիսի սկիզբն, երբ Արեւելք առժամանակեայ խափանման վճիռ ընդունած էր, Մ**խ* վերստին սկսաւ հրատարակուիլ, շաբաթն երկու անգամ, քաղաքական լրագրոյ դրիւք միածալ 2—4 Թուղթ, արտօնատէր՝ Կ. Ս. Իւթիւճեան։ Կը բաղձայինք որ Մ**խ* օրինաւոր ձեւ մ՚առնուր եւ շարունակութիւնը չընդհատէր, որպէս զի ազգային երկարակեաց Թերթերու նուաղ Թիւն նուազագոյն չըլլայ։

Մ**խ*ի 38 տարւոյ բովանդակած ազգային ուսումնական նիւթերն կարելի չէ ամբողջապէս յառաջ բերել։ Մատենախօսութիւնք, ժամանակակից ազգային խնդրոց առթիւ գրուածներ, Թղթակցութիւններ՝ որոնք ոչ այնչափ ուսումնասիրութեամբ գրուած են, եւ այլ նոյնպիսիք հարկ է որ դուրս մնան։ Սակայն պէտք ենք ըսել հոս՝ որ Մ**խ* 1870էն մանաւանդ 79էն ետեւ ազգային գրողներու գործին ըլլալով՝ կը բովանդակէ շատ բան, որ կարեւոր են ազգային պատմութիւն, հնագիտութիւն, տեղագրութիւն եւ այլն գրողներու։ Մենք ի սկզբանէ մինչեւ 1886 լոյս տեսած յօդուածներն յառաջ կը բերենք։ 86է ասդին անկարող եղանք ձեռք բերել։

Ազգային դաստիարակութեան վրայ, Մ**խ*, 1852, Թ. 4—32։

Քննութիւն Սեբէոսի, Թ. 13։

Պարսկաստանի հայազգի բնակչաց վրայ տեղեկութիւն, 53։

Ձեռագիրներու խուզարկութեան առաջարկութիւն մը եւ քանի մը հին ձեռագիրներու վրայ տեղեկութիւն, (կը յիշուին ձեռագ. Ս. Բարս. Ցղղս. վեցօրէից [գրլ. Ք. Թ. 1187, շատ հետաքրքրական], Սամ. Անեցւոյ ժամնկգրութիւնք. [գրլ. Ք. Թ. 1187՞], Խ. Անձեւ. Մեկն. ժամակարգութեան, Մովս. Վ.ի Մեկն. Ս. Պօրգի., Բշժկրն. Ամիրտովլաթի) 58—70 (կիսատ թողեալ)։

Սեբէոսի մասին, 61։

Սեբէոսի Նորագիւտ մատենին վրայ մինչեւ ցայժմ երեւցած դատաքննութիւններուն վրայօք քանի մը խօսք, 64։

Լեւոն կարծեցեալ իշխան Հայաստանի, 198։

Պատկերք նախահայրաց եւ թագաւորաց Հայոց Հայկազանց եւ Արշակունեաց, 251։

Պ. Շանշեանցի Եղիշէի ռուս թարգմանութեան առթիւ Դ. Մելիքեանի յօգուածոյն (ի ռուս Կովկաս) հայ թարգմանութիւնը, 263—4։

Հայկական տեսարան յՕրթագիւղ, 265—273։

Հայաստանի բռնած տեղը աշխարհի պատմութեան մէջ, 276—278։

Բանասիրական (աշխարհաբարի մասին), 563—4։

Մ. Վ. Մուրատեանի տեղեկութիւնք Լեհահայոց մասին, 1516—7։

Փնջիկ ազգային պատմութեան Հայոց յետին ժամանակաց ի Ռուսաստան, 1518—41։

Ազգային պատմական տեղեկութիւնք քաղեալք ի Ֆիւրուհ իւլ Պօլտան անուն պատմութենէ Ապուլ Ապպաս Ահմէտ իմամի, 1542—77։

Դրանսիլուանիոյ Հայոց վրայ տեղեկութիւն, 1610, 11, 28։

Պարսկաստանի Հայոց թշուառ վիճակը, 1636։

Յովհ. Այվազովսքի հայկազն նկարիչ, 1641։

Դուրէժի Հայոց վրայ խիստ կարեւոր տեղեկութիւնք, 1668—69, 1755։

Նոր-Ջուղայու Հայոց վիճակը, 1677։

Մանաւոր տեղեկութիւնք ի վերայ Ներս. Ե. Կաթող. պատմեալք յականատես անձնէ ումեմնէ. 1694—1709։

Շուշէն գրուած նամակ մը, 1720—3։

Հնդկահայոց վրայ տխուր լուրեր, 1725։

Հայկական սեպագիրք ի Շիրակ, 1755։

Պուքրէշի Հայոց վրայ տեղեկութիւն, 1865։

Ռուսիոյ եւ Թիւրքիոյ Հայոց ուսումնական վիճակը, 1884—5։

Ամստերտամի Հայոց եկեղեցին, 1936։

Ասիական սահմանագլուխք եւ Օսմանեան Հայաստան, 1980—9։

Կովկասի Հայոց վրայ կարեւոր տեղեկութիւնք, 1991—5։

Հայկական հնութիւնք ի Բրիտանական թանգարանն Լոնտոնի, 2167։

Հայ ժողովուրդն (թրգմ. «Արնտէյ Մակազին» ամսաթերթէն) 2283—4։

Վանայ շրջակայից ստորագրութիւն, 2321—23, 2340, 2426—7։

Թրգմ. Փր. Լէօհէրի «Հայք» յօդուածոյն ի լրագրին Abend-Post ի Վիեննա, 2322—30։

Տրապիզոնէ ի Կարին, 2348։

Քարբերդէ յերիզա, 2372—3։

Իւչքիլիսէյի Վանքը, 2391—2։

Պարսկահայոց արդի վիճակը, 2405—34, 2666, 2747։

Լուսինեան իշխանք (թրգմ. ռուս. Կոլոս լրագրէ) 2414—5։

Յովհ. Վ.ի Տաղ Թռչնոց (պատառիկ) 2478—94։

Տեղեկագրութիւն Սսոյ Աթոռոյն, 2499, 2500։

Մերսինէ ի Հալէպ, 2506—7։

Անտիոք եւ Հալէպ 2523—33։

Լատին արձանագրութիւն ի Խարբերդ, 2556։

Ռումանիոյ Հայք, 2558—9։

Լուսինեանք, 2611, 2751։

Ազգային ընկերութիւնք, 2618։

Տնտեսական վիճակ Հայաստանի հայ ժողովրդեան, 2625—2671։

Հայաստանի սովերը (ի սկզբանէ ցայսօր) 2631։

Ուղեւորութիւն ի Կարնոյ մինչեւ Պայազիտ, 2634—6։

Տէրսիմ, 2638։

Յեղակցութիւն Գերմանացւոց ընդ Հայս, 2641։

Քրդահայք, 2650։

Հետազօտութիւնք մի քանի բուսոց անուններու վրայ, 2654—67։

Վասպուրական, 2654։
Եկեղեաց գաւառ, 2736։
Հայք եւ Քուրդք, 2739, 2753։
Գրաբարի եւ աշխարհաբարի լեզուապայքարը (1881), 2798—2842։
Ցեղաբանութիւն Հայաստանի սահմանակից ժողովրդոց (Ուտէացիք) 2819—21։
Կեանք հայ գիւղացւոյն, 2830—1։
Լուրեր Ռումանիոյ Հայերէն, 2831, 2843։
Մելիտինէ, 2846—7։
Վիճակագիր Հայոց Ռումանիոյ, 2881, 2։
Արդանուչ, 2962, 3։
Նոր դրութիւն լեզուագիտական, 2991։
Նոր Ջուղայի այժմեան ազգային վիճակը, 2977։
Բաղէշ կամ Սալնոձոր, 2989։
Տոմար եւ Թուականք Հայոց, 3043, 4։
Ակնուաց Ձոր կամ Կիւղէլ Տէրէ, 3048։
Հայերն ու Գնչուներ, 3061։
Կաղզուան, 3061, 2, 3։
Նկարագրութիւն հիւսիսային Հայաստանի, 3109—3129։
Ուղեւորութիւն Պոլսէն ի հարաւային Ռուսաստան, 3146—55։
Պարտիզակ, 3159, 60։
Նկարագրութիւն Քրդահայաստանի, 3172, 3։
Նկարագրութիւն Հայաբնակ գաւառաց, 3183, 4, 7։
Հայ գաղթականութիւն ի Ռումանիա, 3269, 70։
Հայաստան եւ Հայք (հեղինակ Պ. Յ. Ա. Կադդէրիա) 3337—79։
Ակնարկ մը Անւոյ եւ իւր գաղթականաց վրայ, 3345, 6։
Լեզուաքննական, Հրեշտակ, 3363, 4։ Ներսէս 3378։ — Դատուան, 3367։
Այցելութիւն մը ի Կտուց անապատ, (Մոսկ. 1884 Օգոստ, — 1885 Յուլ.) երես, 250, 292։
Միացեալ Ընկերութեանց նշանակութիւնը գաւառաց մէջ եւ գաւառացւոց համար, եր. 383։
Հայք յԱմերիկա, 388։
Եփրատայ տելդան, 416։
Քանի մը խորհրդածութիւնք Հայոց հողային դրութեան վրայ, 455։

Բաղէշէն ի Դատուան, 606։
Թիֆլիս կէս դար յառաջ եւ այժմ, 610—677։
Տաղ սիրոյ Խաչատուրէ ասացեալ, 615։
1885 տարին Թուրքիոյ հայ գրականութեան համար, 628։
Պայազիտէն մինչեւ Կարին, 664—708։
Զըմճն, գաւռ. բանաստ. 687։
Տաղ վասն ուրախութեան մարդկան յԱշըգ Սօղպաթէ, 715։
Սուգ եւ կոծ ի վերայ գիւղաքաղաքին Ագուլեաց որպիսի լինելն, 728։
Առածներ ի Լիզ գիւղ Պուլանըքի, 788։
Մեծ պահոց առաջին օրն ի Սղերդ, 799։
Վարդն ու Պլպուլը Աշըգ Շիրինի, 802։
Չմշկածագ, 816։
Դարմանի աղկէկը, գաւռ. բանաստ. 851։
Տ. Ներս. Հայոց Կաթղ. հանելուկք վասն ուրախութեան մարդկան, 852։
Տեսութիւն մը Աղձնեաց նահանգին վրայ, 866։
Երգեր Ակնայ շրջակայից, 899։
Խաղասացութիւնք Կալաֆկայի եւ Սիւրմէնիոյ բնակչաց, 947—994։
Ծոյլ տղուն հառաչանքը, գաւռ. բանաստ. 948։
Անտուան, 949։
Մշոյ Ս. Կարապետի վանքը, 953։
Թամզարա, 976։
Դատուան, 988։
Ճանիկու հայ գիւղերու արդի վիճակը եւ Նոր մարգարէուհիներ, 1078, 1085։
Ողբ ի վերայ Ուլախաց երկրի Հայերուն, ի Թոխաթցի Մինաս սարկաւագէ ասացեալ, 1090 (1886 Թ. 3836—7։)
Նիքսար եւ Հերէկ, 1091։

Մասիսի ներքին արժէքին վրայ խօսելու համար՝ պէտք է այլեւայլ շրջաններ զանազանել։ Ի սկզբանէ մինչեւ 1870 լոյս տեսած տարեշրջանները գրեթէ միայն քաղաքական լրերով լի են եւ ուրիշ նիւթերու՝ համեմատաբար հազիւ 5% տեղ տրուած է։ Ուսումնական յօդուած-

ներ շատ քիչ են, ուր ընդհակառակն կրօնական խնդիրներ աւելի հետաքրքրած են խմբագրութիւնն. ազգային կենաց հետքեր անցողակի եւ միայն լրատուական ոճով յիշատակուած են, իսկ ազգին ներքին կենաց զարգացման եւ տնտեսական խնդիրներ յուզելու պիտոյքն անգամ չէ զգացուած. առանձնական գրողներ շատ ցանցառ կ'երեւան եւ թարգմանական գրականութիւնն միշտ տիրող է։ Եւ այսպէս լրատուութենէն եւ ընթերցանութեան նիւթ տալէ զատ վախճան կամ ուղղութիւն մը չ'երեւար։

Իսկ 1870էն, բայց մանաւանդ 79էն մինչեւ 84 Մասիս օրէօր զգալապէս զարգացած է, այնպէս որ թերթն 79էն մինչեւ 84 իւր պայծառութեան զենիթին վրայ է։ Այս միջոցին թերթն հասարակաց գործի մ'եղած էր, ուր կը տեսնուէին նոր գրիչներ, որոնք ուսումնական եւ ընկերական խնդիրներ կը յարուցանեն եւ կողմն ընդ կողման կը մաքառի։ Այս միջոցին թերթն ազգայնացուցած եւ զարգացուցած են Գարագաշեանցի եւ այլ դիւցանուն լեզուայուզից լեզուապայքարն, Տէրվիչեանի լեզուաքննական յօդուածներն, Գրասէր Ատոմի բանաստեղծական գրութիւններն, բայց մանաւանդ Բ. Քէչեանի "Ս. Փրկչի Ազգային Հիւանդանոցի" պատմագրին հասարակական կարեւոր եւ կենցաղագէտ յօդուածներն։ Այս գրագէտին Ազգային տեսութիւն, Շաբաթական եւ քաղաքական տեսու-

թիւն, Հայաստանի տնտեսական վիճակն եւ այլ նոյնպիսի գրութիւններն Մ••ի•ի սոյն միջոցի կատարելութեան կնիքը տուած են։ Թղթակցութիւնք, զոր Մ••ի• մինչեւ այս միջոցն գրեթէ չէր ունեցած, ընդարձակ ասպարէզ գտած են թերթին մէջ եւ ազգն՝ որ ի սփիւռս, Մ••ի•ի միջնորդութեամբ իրարու ձեռք տուած է։ Եւ այսպէս Կ. Ս. Իւթիւճեան 33 տարի անընդհատ աշխատութեամբ կարող եղած է թերթին վերջին տարիներն Մ••ի•ն Կոստանդնուպոլսոյ ազգային թերթերու առաջինն ընել։

Մ••ի•ի խմբագրութիւնն Արեւելքի անցնելէն ետեւ՝ այն է 1884էն մինչեւ մեր օրերը, թերթին նկարագիրը փոխուած է։ Այնուհետեւ քաղաքականն իբր լոկ տեսութիւն մը կ՚երեւայ. ուսումնական ինքնագիր եւ թարգմանական գրութիւններ, ազգային ժամանակակից խնդրոց վրայ տեսութիւններ թերթին գլխաւոր մասը կը կազմեն։ Նորագոյն գրիչներու շնորհիւ կրնանք ըսել՝ որ Մ••ի• այս միջոցին միշտ պայծառութեան մէջ մնաց եւ հասարակաց համակրութիւնն չկորսընցուց։

Հոս ներուի մի անգամ սա խորհրդածութիւնն ընել՝ որ մեր քաղաքական թերթերն իրենց միօրինակեալ նոյնութեան եւ մի անգամ սկսած ճամբուն մէջ յառաջադիմութիւն չցուցընելուն պատճառաւ՝ կարելի չէ երբեք բացարձակ լաւ եւ յինքեան զարգացեալ անուանել։

Եթէ իրաւունք չունենանք հին թերթերէն շատ բան պահանջել, իրաւունք ունինք այժմու թեր-թերէն պահանջել, որոնք ահագին աղբիւր եւ օրինակ ունին իրենց առջեւ։ Եւրոպիոյ քաղա-քական թերթերն ուսումնական, առեւտրական, արուեստական, դրամական, ընտանեկան, թատ-րոնական եւայլն բաժիններ ունին, զորոնք առ-հասարակ ամէնքն իբրեւ հարկաւոր պիտոյք կը կարդան, թէեւ իրենց մէջ իւրաքանչիւր ճիւ-ղերու համար մասնական թերթեր ալ ըլլան։ Իսկ մեր քաղաքական թերթերն այս կէտերու համար բաժին չունին եւ յիշատակութիւնք շատ ցանցառ կ'ըլլան, ուր մեր ընթերցողներն աւելի պէտք ունին ասոնց, քանի որ այս մասերու նուիրուած թերթեր չունինք։ Մեր քաղաքական թերթերն՝ ըստ մեզ՝ բազմակողմանի պէտք են ըլլալ, եւ այս մասին ինչպէս Մ•••խ• նոյնպէս այժմու թերթերն հիմնական նորոգութեան պէտք ունին։

## 27. ՆՈՅԵՄԲԵՐ ԱՂԱՒՆԻ

*Շաբաթաթերթ, Կ. Պոլիս. 1852—1853։*
*Խմբ. Գ. Մարկոսեան եւ Ս. Ապրոեան։*
*Տպ. Յ. Միւհէնտիսեան։*

Բարձրագոյն Դրան թարգմանչաց սենեկի անդամներէն՝ Գրիգոր Մարկոսեան եւ Սահակ Ապրոեան 1851 Դեկտ. 20ին Յայտարարութիւն մը հրատարակեցին, որուն մէջ լրագրութեան

օգուտներն յառաջ բերելով կը ծանուցանեն՝
թէ Նոյեան Աղաւնի անուամբ քաղաքական շա-
բաթաթերթ մը պիտի սկսին հրատարակել։ Յա-
ջորդ տարւոյ փետր. 28 ին նոյն թերթին առաջին
թիւն լոյս տեսաւ այս անուամբ՝ Նոյեան Աղաւնի,
շաբաթաթերթ քաղաքական, ազգային, բանասիրական ե-
առեւտրական։

Նոյեան Աղաւնոյ դիրքն էր՝ միածալ եռի-
չեան ամբողջ թերթ մը, բովանդակութիւնը՝
քաղաքական ներքին եւ արտաքին լուր, ազգային
եւ զանազան լուր, եւ ինչ ինչ ազգային գրա-
կան եւ հնախօսական յօդուածներ։ Բաժա-
նորդագինն էր 120 ղրշ.։ Ի սկզբան կը տպու-
էր Յով. Միւհէնտիսեանի տպարանն, 1852
Սեպտ.ին սեպհական տպարան ունեցաւ “Տպա-
րան Նոյեան Աղաւնւոյ” անուամբ, եւ թերթին
դիրքն աւելի մեծցուեցաւ եւ եղաւ քառիչեան։
Բ. Տարւոյ սկիզբն՝ 1853 Մարտ 14, թերթին
սեպհական տպարանը փակուած կը գտնենք, եւ
այնուհետեւ թերթը կը տպուէր “ի տպարանի
Արապեանց”, ուր եւ մնաց մինչեւ իւր մահը։

Որչափ ալ խմբագիրք ի սկզբան ծանուցած
էին՝ որ թերթին հրատարակութիւնն պարզապէս
ազգին ծառայելու համար է եւ առանց դրամա-
կան շահի ակնկալութեան երեք տարի անընդ-
հատ պիտի շարունակուի, սակայն շուտով հիւ-
ծեցաւ եւ չկրցաւ Բ. Տարին բոլորել։ Վերջին
թիւն (74) 1853 Օգոստ. 8 ին հրատարակեցաւ։

Նոյն տարւոյ Սեպտ. ին իբրեւ վերջաբան՝ Յայտարարութիւն մը հրատարակեցաւ, որուն մէջ խմբագիրք կը ծանուցանէին հասարակութեան՝ թէ “Երբոր տեսանք որ մեր 'ի սէր ազգիս յանձնառու եղած ծանր եւ անշահախնդիր աշխատութիւննիս այսպէս օրէօր կը դառնանար եւ թանկագին ժամանակնուս կորուստը (՛) եւ մեր քաշած անհանգստութիւնները պարապը ելլելէն զատ՝ անոնցմէ աւելի նիւթական կորուստներ ալ ընելու սկսանք (ինչու որ Նոյեան Աղանոյ ընթերցողներէն շատերը ստորագրութեանց գինը չէին վճարեր) այն ժամանակ աւելի ընտիր համարեցինք շաբաթագրիս հրատարակումը մեր յօժար եւ ազատ կամօք առ այժմ դադրեցընել, քան թէ առաջադրուած եռամեայ պայմանաժամը լրացընելու աշխատելով՝ մեր վնասները ծանրացընել:„ Եւ այսպէս Նոյեան Աղանի տըժգոհ իւր գոյութեան վրայ՝ վճարող բաժանորդներն բերաւ յանձնեց Նորածին Մասիսի, “եւ ոչ եւս յաւելաւ դառնալ:„

Նոյեան Աղանոյ ազգային կարեւոր նիւթերն են՝

Վիճակագրութիւն Կ. Պոլսոյ ազգային վարժարանաց, 1852, Թ. 9—30:

Ի վերայ Պատմութեանն Սեբէոսի (ընդդէմ յօդուածոյն Մասիսի, 1852, Թ. 13) Թ. 15, Յաւելծ.:

Հին աւանդութիւնք Հայոց զոր մինչեւ ցայժմ ի տեղիս տեղիս պահեն. Թ. 29:

Մասն ինչ Մ. Կաղանկատացւոյ, Թ. 36, 37:

Վիճակագրութիւն Կովկասի հայաբնակ գաւառաց, Թ. 37, 58:

Եկեղեցական երգք, Թ. 38։

Սոորագրութիւն Խարբերթի հայ ժողովրդեան, Թ. 46—49։

Սխալ տպագրութիւն Սեբէոսի (տպ. 1851,) անհամաձայն ընդ բնագրին եղելոյ յԱթոռն Էջմիածնի, Թ. 52։

Վ. Լանկլուայի ուղեւորութիւն ի Կիլիկիա, Թ. 58։

Սոորագրութիւն եկեղեցւոյն Հայոց Կարնոյ քաղաքի, Թ. 66, 67։

Նոյեան Աղաւնւոյ քաղաքական լրերն աւելի ընդարձակ են, եւ պաշտօնական աղբիւրներէ առնլուն՝ աւելի ստոյգ։ Սեպհական ուղղութիւն մը կամ նման լրագիրներէն զատ յատկութիւն մը կամ առաւելութիւն սպասել բնականապէս աւելորդ է։

## 28. ԱՐՓԻ ԱՐԱՐԱՏԵԱՆ

*Ամսաթերթ, Զմիւռնիա, 1853—1856։*

*Խմբ. եւ Տպ. Տէտէեան Եղբարք։*

Տր. Բարունակ Քրթիկեան ի Կոստանդնուպոլիս 1853ի սկիզբն լրագրաց մէջ Ցայտարարութիւն մը հրատարակեց՝ որ Արփ. անուամբ ամսաթերթի մը հրատարակութեան պիտի ձեռնարկէ, որ պիտի ունենայ Պատմական, Բանասիրական, Բնագիտական եւ բժշկական մասեր[1]։ Այն թերթն բժշկական մասին կողմանէ առաջին հրատարակութիւնը պիտի ըլլար յազգիս։ Սակայն այս հրատարակութիւնն, որչափ գիտենք, լոյս չկրցաւ տեսնել։

---

[1] Արշալոյս, 1852, Թ. 424։

Նոյն միջոցին Տէոդեան Եղբարք ի Զմիւռնիա սեպհական տպարան բանալով՝ սկսան այլեւայլ լեզուներէ թարգմանութիւններ հրատարակել, թէպէտ թարգմանելի գործոց ընտրութեան մէջ պէտք եղած զգուշութիւնը կը պակսէր։ Հրատարակուեցան նաեւ քանի մը պարբերական թերթեր Տէոդեան Եղբարց տպարանէն։ Նոյն տպարանէն 1853 Մայիս 2ին Յայտարարութիւն մը հրատարակեցաւ, որ նոր ամսաթերթի մը մօտաւոր ծննդեան լուրը կը բերէր։ Նոյն տարին Յուլիս 1ին լոյս տեսաւ ամսաթերթին առաջին թիւն, այս անուամբ՝ Արփի Արարատեան, օրագիր քաղաքական, ազգային, առեւտրական եւ տնտեսական։ Գիրքն էր ութածալ երկիրչեան, տպագրութիւնը խեղճ, գինը՝ 55 ղրշ.։ Թերթն երկու մաս ունէր. մէկ մասն ժամանակակից ազգային ամսաթերթերու նման՝ այլեւայլ ուսումնական, տնտեսական եւ գիտնական մանր յօդուածոց թարգմանութիւններ եւ ոտանաւորներ կը բովանդակէր, իսկ երկրորդ մեծագոյն մասն էր քանի մը եւրոպական եւ արեւելեան հեղինակութիւններու (Մոլիէր, Շէքսփիր, Օսմանեան պատմ., Հազարումէկ գիշերներ,) թարգմանութիւններ, որ թերթ թերթ ամէն մէկ թուոյն հետ կը տրուէր։

Առաջին եւ երկրորդ տարին առանց փոփոխութեան եւ յառաջադիմութեան անընդհատ շարունակեցաւ։ Երրորդ տարին հասաւ մինչեւ

7ր թիւ, եւ որչափ գիտենք սոյն թուով՝ այն է 1856 Յունուար, ի սպառ դադրեցաւ:

Ազգային նիւթոց մէջէն կրնայ յիշուիլ՝ Ազգային յիշատակարան (կէլիպօլիի Հայ գաղթականութեան պատմութիւնը) 1854, թ. 8, 10. 1855, թ. 10: Ապացոյց Հայոց աստուածպաշտութեան առաջնութեան, 1854, թ. 12, 1, 2:

Արփի Արարատեանի ինչպէս առաջին մասն՝ նոյնպէս երկրորդն տկար ուժոյ ողորմելի արդիւնք մըն էր:

## 29. ԹՈՒԹԱԿ ՀԱՅԿԱԶԵԱՆ

*Ամսաթերթ, Զմիւռնիա, 1854—1855:*
*Խմբ. Յ. Վրթանէս: Տպ. "Թութակի Հայկազեան":*

Դարուս վերջին կիսուն սկիզբն Զմիւռնիոյ ազգայնոց մամուլը մեծ գործունէութիւն կը ջանար ցուցընել. բայց խոստովանելու է՝ որ մտադրութեան արժանի հրատարակութիւն մը չէ տուած այն ժամանակի մամուլն:

Այս անգոյն հրատարակութեանց ներկայացուցիչ կրնայ անուանուիլ Թութակ Հայկազեան[1], օրագիր քաղաքական, քննադատական եւ ուսումնական անուն թերթն, զոր կը հրատարակէր

[1] Զատ է Հայկեան Թութակ երկշաբաթաթերթն, որ 1852ի սկիզբն պիտի հրատարակուէր Կ. Պոլիս Միջագիւղի "Վերծանութեան Թանգարանի" անդամոց կողմանէ, բայց միայն Յայտարարութիւնը կրցաւ լոյս տեսնել եւ բուն թերթն յարգանդի վախճանեցաւ: Տես Արշալոյս, 1852. Թ. 409:

Տ. Վրթանէս[1] ի Զմիւռնիա սեպհական տպարանէն: Ասոր գիրքն էր փոքր ութածալ թերթ մը, (16 երես) տպագրութիւնն ու բովանդակութիւնը (բանաստեղծութիւններ, ուսումնական մանրիկ յօդուածներ) յետին աստիճանի, այնպէս որ թերթն եւ ոչ առանձինն յիշատակութեան արժանի կրնայ համարուիլ: Անշուշտ այս է պատճառն՝ որ ազգային լրագրաց մէջ հետքն անգամ՝ չի գտնուիր, եւ կ'երեւայ թէ Բ. Տարւոյ (1855) ընթացքին մէջ դադրած է մեր լրագրութեան այս գաճաճը:

## 30. ԸՆՏԱՆԻ ԻՄԱՍՏԱՍԷՐ

*Ամսաթերթ, Կ. Պոլիս, 1854—1855:*

*Խմբ. եւ Տպ. Ազգասիրական Ընկերութեան:*

Որչափ ընկերութիւնք կը բազմանային ի Կ. Պոլիս, նոյնչափ լրագրութիւնն ալ աճում

[1] Վերջերս մեր ձեռքն անցաւ Մասիսի 1884 Թ. 3731ն, որուն մէջ Մ. Ն. Նորիկեան հրատարակած է ի սկզբանէ մինչեւ այն ատեն հրատարակեալ հայ լրագրաց անուանական ցուցակը, բաւական խնամով յօրինուած, բայց ունի նաեւ շատ անճշդութիւններ: Թոռոսյ Հօյլօղլըեանի խմբագրին անունն իրմէ կ'առնունք, թէեւ մեր ձեռքն եղող Բ. Տարւոյ Թ. 3 եւ 5ի մէջ նոյն անունը չենք գտներ: Կայ Փօրէօղ ազգային լրագրոյ 1863, Թ. 96 եւ 97ի մէջ ազգային լրագրաց ցուցակ մը. դժբախտաբար նոյն թուերն մեր առջեւ չեն: Նոյնպէս կայ շատ համառօտ ցուցակ մը Պէֆթա-եան Թօ-ընէկի 1863ի առաջին թուոյն մէջ:

Այս երեքէն աւելի նշանաւոր է Ա. Երիցեանցի Արձագանքի (1882, Թ. 21, 22) մէջ գրած "Հայ պարբերական հրատարակութիւնները,, վերնագրով հմտալից "Պատմական Տեսութիւնն,,, որ իւր համառօտութեանը մէջ՝ ամբողջական եւ բաւական ճշգրիտ ծրագիր մըն է հայ լրագրութեան պատմութեան:

կ՚առնուր։ Մեզի ծանօթ չէ Ազգասիրական ընկերութեան վախճանն, բայց ունինք մեր ձեռքն թերթ մը, որ սոյն ընկերութենէ հաստատուած է։ Առաջին անգամ է որ իմաստասիրութիւնն 1854ին մեր մէջ յատկապէս ներկայացուցիչ ունեցաւ։

Ազգասիրական Ընկերութեան խմբագրութեամբ, եւ Հրատարակութեամբ Վ. Սօֆեալեանի 1854 Ապրիլ 1ին հրատարակեցաւ Ընտանի իմաստասէր, օրագիր բարոյական եւ տնտեսական կրթութեան անուամբ ամսաթերթ մը։ Նիւթն վսեմ, ձեռնարկուն ընկերութիւն մը, սակայն ոչ խմբագրութիւնն այնչափ յաջող կրնայ ըսուիլ, եւ ոչ ալ նիւթն ժամանակին ընթերցողաց յարմար։

Ընտանի Իմաստասէրին գիրքն էր մեծ ութածալ ամբողջ թերթ մը, (16 երես) երկիջեան։ Նիւթն էր գրեթէ զուտ փիլիսոփայական. այսպէս 2ր եւ 3ր թուերու մէջ կը գտնենք՝ “Բարոյական իմաստասիրութիւն, Երջանիկ ընտանիք մը, Դաստիարակութիւն, Շէքսփիր, Մարիամ Սդուարթ, Տնտեսական գիտութիւն„ եւ այլն յօդուածներն։

Թէ երբ դադրած է՝ չենք գտներ տեղ մը յիշատակուած. բայց կրնանք ամենայն ապահովութեամբ ըսել՝ որ տարին հազիւ թէ լրացուցած է։

## 31. ԱՍՏՂԻԿ ԱՐԵՒԵԼԵԱՆ

*Ամսաթերթ, Կ. Պոլիս, 1855—1856:*
*Խմբ. Մեսրոպեան Ընկերութիւն:*
*Տպ. Յ. Մինասեանի:*

Մեսրոպեան ընկերութիւնն, որ 1854ին ի Կ. Պոլիս հաստատուած էր, նպատակ ունէր "թէ բանաստեղծական եւ թէ զանազան տեսակ լեզուներէ թարգմանուած գրքեր ու տետրակներ տպել:" Այս ընկերութեան մի միակ հրատարակութիւնն եղաւ Աստղիկ Արեւելեան, օրագիր քաղաքական, բանասիրական, դիպուածական եւ բնական անուն ամսաթերթն, որ 1855ին Յունուար 1ին հրատարակեցաւ:

Աւելի թէ բովանդակութեամբն եւ թէ գրիչքն Բազմավէպ Ս. Սահակեանի նման էր. տպագրութիւնը մաքուր եւ իւր նման հրատարակութեանց մէջ լաւագոյնն էր:

Ազգային յօդուածներն են՝

Արարատ լեռան վրայ, 1855, Թ. 1:
Թոմփսըն Թ. երեւելի Անգղիացւոյն Հայաստան բրած ճանապարհորդութիւնը, Թ. 23:
Բանակական երգ ("Սուրս ես դիմացիր, ո՛նց դիմանամ..."), Թ. 2:
Պոլսեցւոց հայախօս առածները, Թ. 4—11:
Համառօտ պատմութիւն... Տ. Տ. Թորոսի Արք. կաթողիկոսի... Կիլիկիոյ, որ ի Թուին ՌՃՁ, յԱպր. 29, Թ. 5:

Աստղիկ Արեւելեան՝ որչափ գիտենք, տարի մ'ամբողջ հրատարակուած է:

## 32. ՄԱՍԵԱՑ ԱՂԱՒՆԻ

*Ամսաթերթ, Փարիզ, 1855—1865:*
*Խմբ. Այվազովսքի եւ Գալֆայեան վ.ք:*
*Տպ. Վ. Ռէմքէ եւայլն:*

Ինչպէս ազգային գաղթականութեան պատմութիւնն, նոյնպէս մեր լրագրութեան պատմութիւնն զմեզ մերթ այս եւ մերթ այն երկիր ու քաղաք կը տանի, եւ կը ցուցընէ՝ որ Հայ ազգն գրեթէ ամէն նշանաւոր քաղաքներ ինչպէս գաղթականութիւն մը, նոյնպէս մամուլ մը հաստատել փորձած է։ Եւ կրնանք ըսել՝ որ իրեն հաւասար եւ նաեւ իրմէ մեծ ազգաց քով՝ մամլոյ այսչափ տարածութիւն չենք տեսներ։

Համբաւաւորն Փարիզ մեզի չորս ազգային թերթ տուած է։ Առաջին անգամ 1855ին Յունուարին Այվազովսքի եւ Գալֆայեան վարդապետներն ժամանակին եւ պարագայից բերմամբ՝ պատկերազարդ ամսաթերթ մը հաստատեցին ի Փարիզ իբրեւ սեպհական գործի, որոյ անունն էր՝ *Մասեաց Աղաւնի*, Աւետաբեր Հայաստանեայց։ Թերթն 1859ին Թէոդոսիա փոխադրուելէն ետեւ՝ վերջին յաւելուածն Ծիածան Հայաստանեայցի փոխուեցաւ։

Ասոր դիրքն են մեծ քառածալ, երկիջեան 12—14 թուղթ։ Ի սկզբանէ մինչեւ 1858ի վերջն ամսաթերթ էր եւ կը տպագրուէր Փարիզ, Ա. Տարին մինչեւ 5ր թիւ Ռէմքէի տպա-

րանն, 6դէ սկսեալ մինչեւ Բ. Տարւոյ վերջը Վալտէրի, Գ. Տարին Վալտէրի եւ Մէյէրի, Գ. Տարին գարձեալ Վալտէրի տպարանն, բայց միշտ Ճանիկ Արամեանի տառերով։ 1859ին Թերթն իւր խմբագրաց հետ Ռուսիոյ Թէոդոսիա քաղաքը փոխադրուելով՝ Ե. Տարին՝ 1860ին Խալիպեան Ուսումնարանի տպարանը կը տպուէր երեք զատ զատ հրատարակութեամբ. այն է՝ հայերէն, ռուսերէն եւ հայերէն-ռուսերէն։ Հոս այսպէս շարունակեցաւ մինչեւ 1865, երբ բոլորովին դադրեցաւ։

Թերթն ինչպէս 1860էն ետքն, նոյնպէս ի սկզբանէ մինչեւ 1859 կը հրատարակուէր երկու լեզուաւ, այն է՝ հայերէն-գաղղիերէն։ "Հայերենով մերազնեայց մէջ պիտի տարածուին, կը գրուէր Թ. 1ին մէջ, Եւրոպացւոց քաղաքականութեան հաստատուն հիմունքը, այսինքն ուղիղ բարոյական, հարկաւոր տեղեկութիւնք եւ մարդկային կենաց եւ հանգստեան գիւրութիւն տուող արհեստք եւ ճարտարութիւնք, գաղղիարէն գրուած մասովն ալ պիտի աշխատուի որ օտարազգիները կարենան Հայոց հին եւ նոր պարծանացը խելամուտ ըլլալ եւ ըստ այնմ մտադրութիւն ընել այս պատուական ազգին։" Այս էր Թերթին իրեն գծած սահմանն, եւ այս՝ ուղղութիւնն. բայց թէ սոր հասած է՝ մենք չենք կրնար հաստատել։

Այն որոշման համեմատ՝ ամէն կարգի նիւ-

թերթէ թարգմանական յօդուածներ թերթին գլխաւոր բովանդակութիւնն էր։ Կը գրուէր նաեւ ժամանակին ազգային խնդրոց վրայ, եւ ինչ ինչ ազգային ուսումնական յօդուածներ, զոր հոս յառաջ կը բերենք։

Լեւոն Զ. Վերջին թագաւոր Հայոց, Մասեաց Աղաւնի, 1855, Թ. 1, 2, 3, 4. 1856, 5, 6.

Հայկազունք ԺԹ. դարուս, (Տիւլորիէ), Թ. 2, 3, 4, 6, 8, 10, 1856, 4, 7, 10, 11։

Աշխարհաբառ լեզուն մաքրելու եւ գեղեցկացընելու վրայ, 3, 6. 1856, Թ. 2, 8. 1861, 12։

Սամուէլ Մուրատ եւ Վարժարան Նորա, 4. 1856, 5։

Դրամագիտութիւն Հայոց ի միջին դարու (Վ. Լանկլուայի), 4։

Առաջարկութիւն Հռովմէական Հայ ժողովրդէն գաղթական տանելու ի Ճէզայիր, 5, 6, 7, 8. 1856, Թ. 1։

Տարսոն Կիլիկեցւոց, 5, 9։

Սիս, 1856, Թ. 1, 6, 8։

Հայոց ազգին ընկերական վիճակն ի Մոլտավիա, Թ. 3։

Թուղթք ի դիւանէ կաթողիկոսարանին Սսոյ, Թ. 3։

Պատմական մատենադարան ազգին Հայոց. 3, 4։

Միրզայեան Մանուկ Պէյ, 4։

Թուղթ Աղեքս. Կաթղ. ի առ Կղեմէս ԺԱ. 5։

Հայք ի Ռուսաստան, 5։

Անուն, մականուն եւ պատուանուն ազգային, 6, 8, 12։

Տորոս լեռան հայ ժողովուրդները, 617։

Պատմական նկարագիր Լազարեան Ճեմարանի, 8։

Տեղեկութիւն Պարսկաստանի Հայոց վրայ, 9։

Մատենագրութիւն Հայոց, 9։

Սպեր եւ Բագրատունիք, 10, 11։

Հայկազունք Կովկաս լերանց, 12։

Նիկոլ Եպիսկ. 1857, Թ. 1, 3, 4։

Ճանապարհորդութիւն յԱնի, 1, 4, 6, 7, 12։

Համառօտ տեղեկութիւն Մոլտավիոյ Հայկազանց վրայ, 5։

Վարք գերահռչակ Հայկազանց Լեհաստանի, 8։
Մոլտաւիոյ Հայկազանց իրաւունքները, 12։
Ապրոյեան Աբրահամ Աղա, 10։
Ուղեւորութիւն Փարիզէ ի Կ. Պօլիս, 1858. 3—7։
Ի վերայ Ազատ անուն քաղաքին, որոյ աւերակն տեսանի ի Գելարքունիս, 1858, Թ. 3։
Տէր եւ Աղա բառերուն գործածութեանը վրայ, 4։
Հայկաւանի նորագիւտ հնութիւններ, 5։
Անցք եւ ստորագրութիւն քաղաքին Գանձակայ, 6, 10։
Աւերակք մայրաքաղաքին Անւոյ, 8։
Հայք Պարսկաստանի եւ Հնդկաստանի, 12։
Ղուկաս աշխարհագիր Հայկազն, 1861, 5։
Նորագիւտ Նշխարք Նախնեացն մատենագրութեան, (Հարցումն Արձանայ եւ պատասխանի Եզնկայ կողբացւոյ), 11։
Տաճկաստանի աշխարհաբառի մէջի Նէօ, Նէք եւ Նէն մասնիկներուն վրայ։ Մէ մասնական անուններին սխալ եւ ուղիղ գործածութիւնը, 13։
Գեղարդայ Վանք, 14։

Եթէ Մասեաց Աղաւնւոյն ամբողջ շրջանները ի միասին նկատենք, կը ստիպուինք ըսել՝ որ թէ բովանդակութեանն եւ թէ յօդուածոց ներքին արժէքին կողմանէ շատ տկար է, եւ ընդհանրապէս աննպատակ եւ պատահական յօդուածոց ժողովածոյ մըն է։ Իսկ ի Թէոդոսիա հրատարակեալ մանաւանդ վերջին շրջանները՝ մեծաւ մասամբ թարգմանական եւ ինքնագիր ոտանաւորներու հրատարակութիւն մըն է, եւ ոչինչ աւելի։

## 33. ԱՒԵՏԱԲԵՐ

*Երկշաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1855—1890:*
*Խմբ. Բողոքական Միսիոնարք:*
*Տպ. Չըրչիլի, եւն:*

Ամերիկացի բողոքականաց 1839ին ի Զմիւռնիա հաստատած Շտեմարան պիտանի գիտելեաց ամսաթերթն 1854ին ի Կ. Պոլիս փոխադրուելով՝ յաջորդ 1855 տարին դիրքն ու անունը փոխեց, եւ անուանեցաւ Աւետաբեր[1] Շտեմարան պիտանի գիտելեաց, որ յաւելուածն յետոյ մէկդի թողուեցաւ:

Աւետաբերի առաջին թիւն լոյս տեսաւ 1855 Յնր. 3ին Չըրչիլի տպարանն, ուրկէ փոխադրուեցաւ յետոյ Արամեան, եւ ապա Պօյաճեան տպարանն, եւ վերջերս քով կը մնայ ցայսօր: Թերթն ի սկզբանէ մինչեւ 1861 երկշաբաթաթերթ էր, ապա եւս ամսաթերթ՝ երկու թուղթ, որ 1864ին քառածալ (4 թուղթ) դիրք առաւ: 1877ին արդէն շաբաթաթերթ էր, որ ձեւով կը հրատարակուի մինչեւ ցայսօր: 1872էն սկսեալ խմբագրութիւնը կը հրատարակէր բաց ի գլխաւոր թերթէն՝ երկու պատկերազարդ ամսաթերթ (2 թուղթ) հայերէն եւ հայատառ տաճկերէն լեզուներով, որոց անունն է՝ Աւետաբեր տղայոց համար:

---

[1] Տես էջ 40:

Աւետաբերին ինչպէս բովանդակութիւնը՝ նոյնպէս ուղղութիւնը նոյն է ի սկզբանէ մինչեւ ցայսօր։ Թերթն իբրեւ հայ բողոքական հասարակութեան գործի՝ նպատակ ունի բողոքականութիւնը տարածել եւ արծարծել, ուստի եւ իւր ուղղութեան կէտը կրօնական է։ Այս նպատակաւ թերթը նախապատուութիւն կու տայ միշտ կրօնական-վարդապետական նիւթերու, իսկ կրօնական-վիճական յօդուածներ միայն պատահական են։ Առանձինն մտադրութիւն կ'ըլլուի նաեւ գիտնական՝ եւ աւելի աշխարհագրական եւ բնապատմական յօդուածներու, որոնք ամէնքն անգղիական թերթերէ թարգմանութիւնք են։ Վերջին ժամանակներս նաեւ քաղաքական բաժին մը տրուեցաւ թերթին, որ ամբողջական լրատու մըն է շաբաթական քաղաքական դէպքերու։

Աւետաբերին ցայսօր վարած կեանքը նկատելով՝ պէտք է ըսել՝ որ այս թերթը թէեւ հայերէն լեզուաւ է, բայց ազգային չէ։ Իրեն համար ազգին ոչ անցեալն եւ ոչ ներկայն հետաքրքրական է, ազգին ոչ ցաւն եւ ոչ ուրախութիւնն։ Իբրեւ զգայութենէ զուրկ թերթ մը կը գրէ՝ ինչ որ կը գրէր 50 տարիէ վեր։

## 34. ԱՐԾՈՒԻ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ

*Ամսաթերթ, Կ. Պոլիս, 1855—1863:*
*Խմբ. Մկրտ. Վ. Խրիմեան:*
*Տպր. Արապեան եռն:*

Որչափ օգտակար եւ կարեւոր, նոյնչափ դժուարին գործ էր ազգին բնաշխարհին մէջ թերթ մը հրատարակել, քանի որ ամէն նիւթական միջոց ու դիւրութիւն կը պակսէր:

Եւ ահա Մկրտիչ Վ. Խրիմեան ի Վան՝ բնիկ գիւղացի ժողովրդեան պիտոյքն լաւ ըմբռնած՝ կը համարձակի ձեռնարկել այս գործոյն: Տեղական լրագրոյ մ'անհրաժեշտ մամուլը ձեռք բերելու համար՝ խմբագիրը կը դիմէ Կ. Պոլիս, եւ հոն այս նպատակաւ Արապեան տպարանին մէջ 1855 Յունիսին կը հրատարակէ Արծուի Վասպուրական անուամբ քառածալ ամսաթերթ մը (16 երես), որ ըստ ինքեան "Թռուցեալ հայրենասէր թեւօք յԱրծրունի գահէն ի Վանտոսպ՝" պիտի սլանար ուրիշ երկիրներ:

Բորբոքեալ սրտէ խմբագրուած թերթին չորս թուերն կը յաջողին համոզել կարող ազգայիններն, եւ Արծուի Վասպուրականի 5ր թիւն (Հոկտ.) լոյս կը տեսնէ թերթին սեպհական տպարանին մէջ, որ առ ժամանակ մի հաստատուած էր Յիւսկիւտար Կ. Պոլսոյ:

Խմբագրին դիտաւորութիւնը չէր թերթ մը հրատարակած ըլլալ, այլ ինչպէս 5ր թուոյն

մէջ կ՚ըսէ, համոզուած թէ “անհրաժեշտ պարտք է բոլոր քաղաքացի իշխանաց, որոնք կարող եւ ձեռնհաս են՝ բարիք ընելու համազգի գիւղացւոց կրթութեան համար ըստ ամենայնի հոգ տանիլ, վասն զի դպրոց, ուսումն, վարժապետ, ազգասիրութիւն միայն քաղաքացւոց համար չէ„, իւր մի միայն փափաքն էր “հայրենակից գիւղաբնակ եղբարց լուսաւորութեան համար„ աշխատիլ։

Այս ջերմ անձուկն չթողուց որ Արծուի Վասպուրականի մնայ ընդ երկար յիւսկիւտար։ Թերթին Ա. Տարին ամբողջ (մինչեւ 1856 Ապր.-Մայիս) Իւսկիւտար հրատարակուելէն ետեւ՝ Բ. Տարւոյ առաջին թիւն 1858 Յնր.ին լոյս տեսաւ բնաշխարհի կենդրոններէն միոյն մէջ՝ ի Վանտոսպ, “ի տպարանի Վասպուրականի Արծուոյն ի Վարագ„։ Այս տեղ առաջին երկու տարիներն (1858—9) անընդհատ շարունակեցաւ թերթն։ 1860ին խմբագիրն .ուղեւորի, կամ ինչպէս ինք կ՚ըսէ “պանդխտի„ գաւազանն ի ձեռին՝ ստիպեցաւ ընդհատել թերթին հրատարակութիւնն եւ մեկնիլ։ Յաջորդ տարին Օգոստոսին կարող եղաւ թերթին Դ. Տարին հրատարակել։ Ե. Տարին՝ որ 1862ի վերջերն սկսաւ, չկրցաւ բոլորել։ 1863ի սկիզբը՝ խմբագրին կրօնակցացն “Ահա ծուր գայ միւս Թարգմանն„ աղաղակը փակեց տպարանն[1] եւ Արծուի Վասպուրականի լռեց ընդ միշտ։ Բարեբախտաբար քիչ ետքն իւր սակաւ-

[1] Մեղու, 1863, Թ. 203։

ակեաց «Ճագուկն» Լրաբեր Արծուոյն Տարօնոյ պահեց առ ժամանակ մի անոր յիշատակն։

Արծուոյ Վասպուրականի բովանդակութիւնը կարելի է ըսել՝ զուտ ազգային էր. այն է՝ ճառասացութիւններ, ազգասիրական ըղձեր ու հառաչանքներ բանաստեղծական ձեւերու տակ, տեղագրական եւ պատմական ոչ այնչափ ուսումնասիրուած յօդուածներ։ Անոնց մէջէն յիշատակութեան արժանի կը համարինք հետեւեալները։

Ճանապարհորդութիւն ի Սիս, 1855, Թ. 3—5։

Ողբ ի վերայ մեծի քաղաքին Սսոյ, հանեալ ի հին ձեռագիր յիշատակարանաց, Թ. 5։

Մայրաքաղաք մենաստանաց Վարագ, 1858 Թ. 1—5։

Վան կամ Շամիրամակերտ, 7—9։

Վիճակագրութիւն Վանայ կուսակալութեան, 11—12։

Արտամետ գիւղ, 1859, Թ. 1։

Ս. Խաչի վանք, Կենդանանց եւ Կուռուպաշ գիւղեր, 4։

Կենդանանց գիւղի գրչագիր աւետարանի վերջաբանութիւն, 4։

Կարմրաւոր Ս. Աստուածածնի վանք եւ Շուշանայ գիւղ, 6։

Վերջաբանութիւն Սալնապատու վանից գրչագիր աւետարանին, 7։

Յաղագս արշաւանաց եւ մեծի պատերազմին Թահմազղուլի խանին ընդ Օսմանցիս, որ ի դաշտին Եղիվարդու, հանեալ ի գրոց Աբրահամու Կաթուղիկոսի Գ.ի, 7։

Ձորոյ վանք, 8։

Յիշատակարան Լամզկերտ գիւղի հին գրչագիր Ճաշոցին, 8։

Շահպաղ գիւղի գրչագիր Մաշտոցի վերջաբանութիւն. Վասն օգտելոյ ի կեանս ի սրբոյ պատարագէն եւ ի սիրոյ. (հանեալ ի Թարգմանութեանց Տ. Ներս. Լամբրոնացւոյ,) 8։

Լէզք կամ Լիզայ գիւղ, 9։
Երեւան քաղաք, 1861, Թ. 1։
Վանեցւոց քանի մի առածներ, 1։
Գերեզման Արծրունեաց Սենեքերիմ Թագաւորին, 2։
Տփխիս քաղաք, 3—4։
Շինական Հայոց կեանք ի Հայաստան, 1862—3 Թ. 3։
Սիւնեաց աշխարհ եւ Շուշի քաղաք, 4։
Բաղէշ, 5։

Խրիմեան, Սրուանձտեան եւ Րաֆֆի՝ (այն ժամանակի Յակովբ Միրզայեան Մելիք-Յակովբեան վարժապետն) այս երեքնուկն Թերթին շունչն ու ոգին էր, երեքն ալ նոյն ոգւով տոգորեալ։

Պէտք է ըսել՝ որ որչափ ալ յընդհանուրն ըմբռնած էր Թերթն իւր վսեմ կոչումն՝ տեղացի ժողովրդեան կրթութիւն տալու. սակայն կերպին կողմանէ պէտք եղածն չէր գործադրուեր, եւ այս պատճառաւ կարելի չէ ըսել՝ որ այնչափ ցանկալի նպատակին ըստ մասին հասնուած ըլլայ։ Վասն զի Թերթին խմբագրական լեզուն՝ գէթ մինչեւ 1861, եւ յօդուածոց մէկ մասն գրաբար էր, որ անշուշտ անմատչելի էր ժողովրդեան. իսկ բովանդակութիւնն՝ գիւղացի ժողովրդեան կրթութեան յարմար նիւթ ամենեւին չունէր։ Սակայն միշտ անմոռաց պիտի մնայ՝ որ ազգն գէթ առաջին փորձն ըրաւ լրագրի ձեռօք գիւղացի ժողովուրդը կրթելու։



## 35. ԱՐԵՒԵԼՔ

*Երկշաբաթաթերթ, Փարիզ, 1855—1856:*
*Խմբ. Ս. Ոսկան: Տպ. Վալտեր:*

Որչափ գլուխ այնչափ կարծիք: Մինչդեռ ի Կ. Պոլիս ազգային թերթերն հազիւ երբեք սովորական ճամբէն քիչ մը կը շեղէին ազգային “կենսական„ խնդիրներու վրայ մեղմով եւ ակնածութեամբ խօսելու, անդին արեւմտից լուսաւորութեան կենդրոնին մէջ՝ ի Փարիզ 1855 Յուլիս 1ին երբեմն-ուսանող Ստեփան Ոսկանեան Արեւ-Ելք անուն կիսամսեայ թերթի մը (8°, երես 32, տարեկան՝ 26 Ֆր.) լոյս տուաւ, եւ անմիջապէս յառաջաբանին մէջ փութաց յայտնել՝ թէ իւր ուղղութիւնը բոլորովին հակառակ է մինչեւ այն ժամանակ հրատարակեալ թերթերու. “Յուսամք թէ, կը գրէր երիտասարդ խմբագիրն, ազգը քսան տարիէ վեր իմաստակներու սուտումուտ գովեստը եւ անամօթ շողոքորթութիւնը լսելէ ետեւ, քիչ մ'ալ ճշմարիտ քննութեան եւ անշահասէր խրատի ականջ պիտի դնէ, եւ իր էական պակասութիւնները պիտի շտկէ . . .: Արեւ-Ելքը այն աստիճան մեղր բերան չը պիտի ըլլայ, եւ քանի մը մարդերու հաճելի ըլլալու համար ճշմարտութեան երեսը չը պիտի թքնէ կամ մոռնէ:„

Խմբագրին համբաւն[1], թերթին աղքատին

[1] Մասիս, 1859, թ. 387:

բովանդակութիւնը՝ միացեալ խորախտանաց հետ՝ նպաստաւոր նշաններ չէին տար երկար կենաց: 1856 Յունր. 15ին թերթին 14 դ թիւն վերջինն եղաւ, ի սակաւութենէ բաժանորդաց, կամ ի հնարից հակառակորդաց[1], եւ կամ ինչպէս կ'երեւայ՝ առ ի չգոյէ նիւթոյ[2]: Եւ իրօք այնչափ սաստիկ սպառնացուած "Ճշմարիտ քննութեան եւ անշահասէր խրատի„ հետքը չկար լոյս տեսած այն 14 թերթերուն մէջ: Կ'երեւայ թէ ազգին բոլոր պակասութիւններն եւ ուղղելիքն "Մուրատեան կտակի„ խնդիրն էր, որմէ զատ խնդրոյ մը վրայ չի խօսիր այս խորախտաձայն թերթն:

## 36. ՄԵՂՈՒ

*Երկշաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1856—1871:*
*Խմբ. Յ. Գ. Սըվաճեան եւն:*
*Տպր. Արապեան եւն:*

Յ. Գ. Սըվաճեան ի Կ. Պոլիս 1855 Սեպտ. 15ին Մեղու անուն կիսամսեայ թերթ մը (8°, երես 24) հրատարակեց, որ էր "Հաւաքածոյ բարոյական, բանասիրական, գրագիտական, տնտեսական, առեւտրական եւ զուարճալի գիտելեաց„: Այս բովանդակութեամբ եւ նոյն դրիւք շարունակեցաւ մինչեւ Բ. Տարւոյ վերջն՝ 1858 Սեպտ. 31: Գ. Տարին 1859 Յնր.ին սկսաւ՝ փոփոխեալ, մեծ քառածալ (4 թուղթ) դրիւք,

[1] Արեւմուտք, 1859, թ. 17:
[2] Մասիս, 1859, թ. 404:

տանօրեայ։ Թերթին վերջին էջը մերթ ընդ մերթ ազգային օրական խնդիրներուն կամ իւր յօդուածներուն յարմար եւ շատ ճաշակաւոր խայթիչ ծաղրապատկերներ կը զարդարէին։

Թերթին ինչպէս հրատարակութեան ժամանակներն, նոյնպէս խմբագիրն ու տպարանը միշտ նոյն չէր։ Ի սկզբանէ մինչեւ 1859 երկշաբաթաթերթ էր. 1859—62ի վերջը՝ տասնօրեայ, 1863էն սկսեալ՝ շաբաթական։ 1865 Յուլիսին խափանեցաւ ազգային իշխանութեան կողմանէ։ Եւ թէեւ յետոյ 1870ին իբր եռօրեայ թերթ վերստին սկսաւ շարունակուիլ, սակայն հազիւ տարի մը կարող եղաւ ապրիլ[1]։

Յ. Գ. Սրվաճեան ի սկզբանէ մինչեւ 1862ի վերջը խմբագրութիւնն առանձին կը վարէր։ 1863ին սկիզբն ապրուստի նեղութեան պատճառաւ՝ խմբագրութիւնն յանձնեց Յով. Հովուեանցին, որ նմանապէս երեք ամիս ետքը՝ Ապրիլ 9ին նոյնն Աբրահամ Գ. Մուրատեանին անցընել պատշաճ տեսաւ։ 1864 Յնր.ին խմբագիր էր Ա. Հ. Հայկունի, որ 1865ի սկիզբն վերստին տեղի տուաւ Յ. Գ. Սրվաճեանի, որուն հետ թերթին գործակալ է Գր. Պարտիզպանեան։

Այս եղանակաւ տպարանն ալ շատ անգամ փոփոխեցաւ։ Ա. Տարւոյ ինը թուերն լոյս տեսան Արապեան տպարան. յնուհետեւ Ռ.

[1] Արշալոյս, 1882, Թ. 22։

Քիւրքճեանի տպարան մինչեւ 1860, երբ ապաւինեցաւ Յ. Միւհէնտիսեանի տպարան: Իսկ 1863 փետր. ին կը տպուէր Քիւրքճեանի տպարան, Ապրիլին՝ Միւհէնտիսեանի, Յունիսին՝ Համազգային տպարան: 1864 Յնր. ին Ռ. Քիւրքճեանի տպարանն հաստատուն ապաւէն գտաւ:

Մեղու արդէն առաջին տարիէն սկսեալ իւր էջերուն մէջ կը զետեղէր երբեմն երբեմն ազգային ինքնահաւանութիւնն անխնայ խայթող յօդուածներ, որոնց համար "ազգասէր" անձինքներէ զգուշացուցիչ նամակներ կ'ընդունէր: Բայց խմբագիրն այսպիսի զգուշութիւններ չէր գիտեր. եւ մանաւանդ 1859էն եւեւ՝ ազգային հաստատութեանց, նաեւ անձնաւորութեանց պարսաւելի եւ ուղղելի մասերն յօդուածներով եւ ծաղրապատկերներով կը խայթէր, եւ այս պատճառաւ ինչպէս ժամանակակից քանի մը թերթեր՝ նոյնպէս անձնաւորութիւններ իրեն դէմ յարոյց, որոնք յաջողեցան վերջապէս զայն խափանել:

Սակայն Մեղու ողջամիտ անձանց քով միշտ ունեցաւ իւր յարգն եւ ունի:

## 37. ԶՈՒԱՐՃԱԽՕՍ

*Շաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1856:*
*Խմբ. Զուարճասիրաց Ընկերութիւն:*
*Տպ. Արապեան:*

Բարեպատեհ դէպք մըն է՝ որ վերոյիշեալ երկու յոռետես թերթերուն քով կարող ենք գտնել վերջին աստիճանի լաւատես թերթ մը։

Հայոց ընկերութեանց պատմութեան մէջ անշուշտ Կ. Պոլսոյ "ազգային" ընկերութիւններն թուական մեծ առաւելութիւն պիտի ունենան։ Այնչափ ընկերութեանց շարքին՝ օր մ'օրանց կ'ելլեն ոմանք "Զուարճասիրաց Ընկերութիւն" մ'ալ կցել, որոյ նպատակն ըլլայ զուարճանալ եւ զուարճացընել։ Կ'երեւայ թէ այսպիսի ընկերութեան մը "պիտոյքն շատ զգալի էր"։ Ընկերութիւնը 1856ին կը կազմուի եւ կարող կ'ըլլայ նոյն տարին Հոկտ. 25ին սեպհական շաբաթաթերթ մ'ալ հրատարակել՝ Զուարճախօս, օրագիր զուարճալից, ծաղրաբանական եւ քնարական անուամբ։

Այս թերթն միածալ երկու թուղթ էր, կէսն հայատառ տաճկերէն եւ միւս կէսն հայերէն։ Բովանդակութիւնն վերնագիրներէն արդէն կարելի է գուշակել. պատկերն, ծաղրն ու բանասիրութիւնն իրարու բոլորովին յարմար։ Թերթն իւր 3ᵗ թիւը "կատարեալ" համարեցաւ, եւ 4ᵗ թիւն լոյս չկրցաւ տեսնել, որով զուար-

Ճասէր խմբագրութիւնն հասաւ եւ կը հանի իւր նպատակին։

## 38. ԵՐԵՒԱԿ

*Երկշաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1857—1866։*

*Խմբ. Յովհ. Պ. Տ.-Կ. Տէրոյենց։*

*Տպ. Տէրոյենց։*

Հայաստան լրագրոյն դադարմանէն ետեւ[1] Յովհ. Տէրոյենց հրապարակագրական ասպարիզէն մեկնեցաւ։ 1855ին, Յուլիսի սկիզբն սեպհական տպարանի մէջ սկսաւ հրատարակել Ջօհուլ անուն հայատառ տաճկերէն կրօնական շաբաթաթերթ մը, որ մէկուկէս տարի անընդհատ շարունակեցաւ։

Խմբագիրն իւր այս թերթին տաճկերէն լեզու ընտրած էր, վասն զի այս լեզուաւ կրօնական թերթ չկար, եւ կը յուսար բաժանորդաց ստուար գումար մը գտնել։ Կամ վերջին նպատակին հասնիլ չկարենալուն, եւ կամ՝ ինչպէս ինք կ'ըսէ, բաժանորդաց խնդրանաց հետեւելով՝ նոյն շաբաթաթերթը 1857ին Յնր. 1ին Երեւակ անուամբ եւ հայերէն լեզուաւ սկսաւ հրատարակել, սկսելով նոր շրջան մը (8°, 16 թուղթ)։

Երեւակ՝ ի սկզբանէ մինչեւ 1860ի վերջը կանոնաւորապէս հրատարակեցաւ։ 1861ի սկիզբն վեցամսեայ հանգստենէ ետեւ՝ նոյն տարւոյ

[1] Տես վերն էջ 93—։

Յուլիսին շարունակեցաւ տարի մ'ալ, եւ 1862ին Յուլիսին դադրեցաւ։ Սոյն միջոցին մէջ խմբագիրն 1860ի վեցամսեայ պակասեալ թուերն ալ հրատարակել սկսաւ։

Այս երկրորդ հանգիստը մէկուկէս տարի տեւեց։ 1864ին Յնր.ին Երէ—ոկ "Նոր շրջան" սկսաւ, մեծ քառածալ դիրք (4 թուղթ), եւ եղաւ շաբաթաթերթ, եւ այս կերպարանաց մէջ 1866ի վերջն անհետացաւ։

Տէրոյենց կրօնական իրաց մեծ հմտութիւն ունէր, եւ ինք զինք բոլորովին կրօնական գիտութեանց նուիրած էր։ Ինչպէս մեծաւ մասամբ թարգմանական բազմաթիւ գրութիւններն առ հասարակ, նոյնպէս իւր հրատարակած թերթերը գրեթէ լոկ կրօնական են։ Երէ—ոկի մէջ լոյս տեսած յօդուածոց մեծագոյն մասը թարգմանութիւն էր, եւ ուղղ տարւոյ կենաց միջոցին հազիւ տասնուութ ազգային ինքնագիր յօդուած տեսնուեցաւ, զորոնք հոս յառաջ կը բերենք։

Մարզուանու Զարխափան Ս. Աստուածածնի վանքը. Երէ—ոկ. 1858. Հտր. Գ. էջ 7։

Մովսէս Խորենացի. էջ 363. 1859. Հտր. Ե. էջ 11։

Արմաշու Վանքին պատմութիւնը. 1859. Հտր. Ե. էջ 104. 138. 165. 208։

Կարապետ կաթուղիկոս Ուլնեցի. 1859. Հտր. Զ. էջ 294. 326. 358։

Հայոց ոստիկանութեան վրայ. էջ 15. 40. 73։

Մովս. Խորենացիին վրայ Նոր քննութիւն. 1860. Հտր. Ե. էջ 12։

Հայոց վանորայք ի Սբ. Եղմ. Տն. Անաստասայ Վ.ի գրեալ ի խնդրոյ բարեպաշտ իշխանին Համազասպայ Կամսարականի Պահլաւունւոյ. 1860. Հտր. Ը. էջ 296։

Տէրոյենցի կրօնական տեսութիւնները շատ քիչերու ճաշակին յարմար էին, եւ այս պատճառաւ ժամանակակից ազգային ամէն թերթերէ եւ նոյն իսկ ազգային իշխանութենէ յարձակում եւ ազդարարութիւն կ'ընդունէր, փոխարինելով ըստ պատշաճին իւր պատասխանները։ Անշուշտ այս էր պատճառն՝ որ Երեւակ երբեք գործակից չունեցաւ, որով բովանդակութիւնը միակողմանի էր, եւ ընթերցուածը ձանձրանալի։

## 39. ՔՆԱՐ ԱՐԵՒԵԼԵԱՆ

*Ամսաթերթ, Կ. Պոլիս 1857—8:*

*Խմբ. Ա. Յովհաննէսեան եւ Գ. Երանեան:*

Յամին 1857 Սեպտ.ի սկիզբն Արիստակէս Յօհաննէսեան եւ Գաբրիէլ Երանեան *Քնար Արեւելեան* անուամբ ամսաթերթ մը սկսան հրատարակել, որուն նիւթն ու նպատակն էր՝ արեւելեան, եւ ի մասնաւորի ազգային երգերն եւրոպական ձայնագրութեան առնլով՝ արեւմտեայց

հաղորդել[1]։ Առաջին թուին բովանդակած երգերն էին՝ տաճիկ, պարսիկ եւ արաբացի. իսկ ընագիրք՝ հայերէն, գաղղիերէն եւ յունարէն[2]։ Իւրաքանչիւր ամսաթերթը կ'արժէր 40 ղրշ. տարեկանը՝ 400 ղրշ.։

Որչափ մեզի ծանօթ է այս թերթը տարին չբոլորեց։

## 40. ՄՈՒՍԱՅՔ ՄԱՍԵԱՑ

*Շաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1857—1858։*

*Խմբ. Ա. Հ. Ճիզմէճեան։*

*Տպր. Արեւելեան։*

Ազգային թատերաց պատմութեան՝ մէջ անշուշտ աննշանակ պիտի չմնայ, որ 1857ին Արամ Հ. Ճիզմէճեան պատանին՝ բաւական աշխատելէն ետեւ ազգային թատր մը հաստատել նուիրատուութիւններով, եւ սոյն ձեռնարկութենէն յուսահատ՝ սկսած է հրատարակել նոյն տարւոյ Սեպտ. 7ին Մուսայք Մասեաց, **Շաբաթաթերթ Թատերական** անուամբ մասնագիտական թերթ մը։ Ասոր նպատակն էր թատրերգութիւններ հրատարակելով "Թորգոմեան ցեղին հարազատ զաւկըներուն սրտերը ջերմեռանդ հայրենասիրութիւն գրգռել"։ Զարմանալին այն է՝ որ ինքն խմբագիր-հրատարակիչն իւր այս օգտա-

---

[1] Մասիս 1857, թ. 296։
[2] Անդ, 1858, թ. 328։

կար ձեռնարկութիւնը “տարօրինակ„ կը գտնէ, որ անշուշտ ներելի էր այն ժամանակները:

[illegible] Մասեաց միածալ մէկ թերթ (2 թուղթ) էր. բովանդակութիւնը լոկ թարգմանական թատերգութիւններ եւ թատրոններու վրայ տեղեկութիւններ: Իբր մասնագիտական թերթ՝ տարակոյս չկայ որ կարող չէր երկար կեանք ունենալ. եւ արդէն թերթն 3ᵉ թուղթն սկսաւ ողբեր ընել եւ հրաւէրներ կարդալ:

“Տարի մը„ վճռուած էր ասոր ալ կեանքն, եւ 1858ի վերջերն ինքնիրմէ մարեցաւ[1]:

## 41. ՃԵՐԻՏԵԻ ԹԻՃԱՐԵԹ

*Երկշաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1857—8:*

*Տպր. Ռ. Քիւրքճեանի:*

Ասոր վրայ տեղեկութիւն ունինք միայն Մասիսէն, որ կը գրէ[2]. “Անցեալ շաբթու Ճէրիտէի Թիճարէթ (Առեւտրական լրագիր) անունով առեւտրական նոր լրագրի մը առաջին թիւը տեսանք: Այս լրագրին նպատակն է առեւտրական գործոց մէջ տգիտութենէ պատճառեալ դժուարութիւնները փարատելու միջոցները ցուցընել. առեւտրական ատենին մէջ եղած որոշումները եւ մայրաքաղաքս եկած գացած վաճառքներուն չափն ու գինները հրատարակել: Այս լրագիրը

---

[1] Զատ է [illegible] Մասեաց, Զօյն ընկերակցական, որ 1863ին հրատարակուեցաւ: Տես ըստ կարգին:

[2] Մասիս, 1857, Դեկտ. 12, Թ. 307:

15 օրն անգամ մը կը հրատարակուի չորս լեզուաւ, տաճկերէն, հայերէն, յունարէն եւ գաղղիարէն: Հայերէնը կը տպուի մայրաքաղաքիս մէջ . . . Քիւրքճեան Պ. Ռուբէնին տպարանը: Տարեկան գինը մայրաքաղաքիս համար 150 ղրշ. է:

Յամին 1858, փետր. 27 (Թ. 318) կը գրէ նոյն լրագիրը. "Անցեալները մայրաքաղաքիս մէջ չորս լեզուով հրատարակուիլ սկսած Ճէրիտէի-Թիճարէթի լրագիրը քանի մը շաբաթէ ի վեր չհրատարակուիր:"

## 42. ՀԻՒՍԻՍԱՓԱՅԼ

*Ամսաթերթ, Մոսկուա, 1858—64:*

*Խմբ. Ս. Նազարեանց:*

*Տպ. Ի. Պարֆենեվոյ, Գրաչով եւ Ընկ., եւ Լազարեան ճեմարանի:*

Ինչպէս պատմութեանս ընթացքէն կ'երեւայ՝ մեր լրագրութիւնը մինչեւ այս ժամանակները՝ եթէ քանի մը հատ ի բաց առնուս, այնպիսի անձինքներէ կը խմբագրուէր եւ կը հրատարակուէր, որոնք ընթերցողներէն բարձրագոյն կրթութիւն եւ տեղեկութիւն մը չունէին: Եթէ եղան ինչ ինչ լրագիրներ, որոնք կարող եղան օգտակար շարժում մը՝ հետեւաբար արդիւնք մը յառաջ բերել, — ինչպէս Արշալոյս Արարատեան, Բազմավէպ, Աւետաբեր, Հայ-

[illegible], [illegible], [illegible], [illegible], (Մադրասի) [illegible], [illegible], — լմբագրաց առաւել կամ նուազ կրթութեննէն եւ ընդունակութեննէն էր։ Եթէ ունենայինք հասարակութեան առաջնորդ ըլլալու պահանջուած յատկութեամբք օժտեալ խմբագիրներ, անշուշտ ամէն մէկն իւր շրջանն ապարդիւն կատարած չէր ըլլար։

Այս ուսեալ խմբագիրներու մէջ էր եւ շատերէն բարձր դիրք մ'ունէր Պետական խորհրդական Ստեփանոս Նազարեանց, որ Թիֆլիսի Ներսիսեան դպրանոցն ուսումն աւարտելով՝ Տորբատի Համալսարան անցաւ 1832ին եւ տաս տարիէն անցնելով Ղազանայ Համալսարանն՝ ստացաւ այնտեղ Արեւելեան լեզուաց ուսուցչութեան (docteur) աստիճանը, եւ 1849էն ետեւ Մոսկուայի Լազարեան ճեմարանի ուսուցիչ կարգուեցաւ, զոր եւ վարեց ցմահ († 26 Ապրիլ 1879), միայն երկու տարի (1869—71) Ներսիսեան դպրանոցի վարչութիւնն ունենալով։

Ս. Նազարեանց 1857 Մայիս 30ին Յայտարարութիւն մը հրատարակեց Մոսկուայէն[1], որուն մէջ ի մէջ այլոց կ'ըսէր.

---

[1] Տես այս Յայտարարութիւնը Մոսկ. 1857. Թ. 287։ Հիւսիսափայլի վրայ գրած ժամանակ՝ միայն Ա. Տարին ամբողջ ունէինք մեր առջեւ, շնորհիւ Պր. Առաքել Սարուխանեանի՝ որ երբեւ նուէր մեր մատենադարանին ուղարկեց մեզ իւր մատենադարանէն հանելով, որուն այստեղ նաեւ հրապարակաւ կը յայտնենք մեր շնորհակալութիւնը։ Միւս տարիներէն քանի մ'ամսատետր միայն ունինք։ Պր. Ա. Երիցեանցի "Ստեփաննոս Նազարեանց եւ նորա գրական-

“Մեր պատուելի եւ շատ սիրելի Հայերը Ռուսաստանի մէջ զուրկ լինելով մինչեւ այժմ մի գրաւոր միջնորդից, որ իւրեանց մէջ եւ իւրեանց գրութեանը յարմար հոգաբարձու լինէր նոցա իմացական եւ բարոյական պիտոյքին, քաջայոյս ենք, թէ ուրախութեամբ կը ողջունեն մի օրագիր որ յանձնառու է մայրենի քաղցր լեզուով զրուցել նոցա հետ բնութեան կարգերի, մեր երկրաւոր բնակարանի որպիսութիւնների եւ նորա մէջ եղած տեսակ տեսակ ազգերի եւ աշխարհների, այլ եւ աշխարհիս մէջ անցած արժանայիշատակ անցքերի, երեւելի մարդերի, հանրաշահ գիւտերի եւ յայտնագործութիւնների մասին: Քաջայոյս ենք որ մեր Հայրենակիցքը քաղցրութեամբ կ՚ընդունեն մի օրագիր՝ որ պիտոյ է բազմամասնեայ կերպով ձեռնտու լինի նոցա դաստիարակութեանը, մի մտաւորական կամուրջ ձգելով ասիացի Հայերի եւ եւրոպական ազգերի մէջ, մի հոգեղէն հաղորդակցութիւն հաստատելով հայկական եւ եւրոպէական մարդերի մէջ:”

Ս. Նազարեանց Յայտարարութեանս մէջ իւր նպատակն այսպէս կը բացատրէ.

“Սորա խորհուրդը լինելու է, ռուսիաբնակ Հայերի մէջ տարածել այնպիսի տեղեկութիւնք եւ գիտելիք, որ անհրաժարելի հարկաւոր են մեր օրերումը ամենայն մարդու որ եւ իցէ պաշտօնի վիճակից. թէ ուսումնականի եւ փոքր ի շատէ բանիմացի, թէ վաճառականի եւ արուեստաւորի, թէ հոգեւորի եւ թէ աշխարհականի, որ կամք ունէին մասնակից լինել մեր լուսաւորեալ դարու յառաջադիմութեանը, օգուտ քաղել նորանից թէ նիւթապէս եւ թէ հոգեպէս:”

---

կան գործունէութիւնը„ (Փորձ, 1879, Nr. XI, էջ 31—83, 1880 Nr. I, էջ 53—87, եւ 1881 Nr. V—VI, էջ 211—264) “Դարձեալ Ստեփաննոս Նազարեանցի գրականական գործունէութեան մասին (Պատասխան պ. Ս. Շահազիզեանին)„, նոյնպէս Ս. Շահազիզեանի “Հրապարակախօս ձայն„ (Մոսկուա, 1881) ընդդիմաբանութիւնը գործածեցինք՝ հանդերձ կարեւոր զգուշութեամբք: Նաեւ մեր ձեռքն անցած ազգային քանի մը թերթերու կը պարտինք տեղեկութիւններ:

Իւր օրագրին լեզուին մասին կը գրէ սա նշանաւոր խօսքերը.

"Ուրեմն մեր տպելի օրագիրը յանձնառու լինելով ծառայել ժողովրդի օգտին նորա ժամանակի համեմատ, պարտական է խօսել ազգի բազմութեան հետ, ինչպէս սա կարող էր հասկանալ. այսինքն այնպիսի ոճով, որ առաւել մօտ է Հայոց կենդանի, ընկերական բարբառին, առանց լինելու խաժամուժ ամբոխի գռեհկաբանութիւն: Աւելորդ էր կրկնել այս տեղ մեր մտածող եւ բանագէտ եղբայրակիցներին, թէ որպէս մեր տպած աշխարհաբառ գրքերի, նոյնպէս եւ այս օրագրի մէջ, մեր աչքի առջեւ դրած ունինք մի հաստ վճռելի խնդիր, որ է կենդանագործել հին եւ մեռեալ լեզուն այժմուս ընկերական լեզուի մէջ, պատրաստել մի այնպիսի լեզու, որ իւր նախնական հիմն ու արմատը հաստատ պահելով գործակատար լինէր նոր ժամանակի կենդանի հայախօսութեան ձեւերով ու ոճերովը. մեր խորհուրդք եւ ձգտողութիւնը միշտ եղած է, եւ է այժմ. Հնութեան վերանորոգութեան, ինչպէս այդ բանը կարելի, պատշաճաւոր եւ հարկաւոր է մեր ժամանակներումը. մեր դիտողութիւնը շինութիւն է, բայց ոչ երբէք կործանութիւն եւ աւերանք, որոնցից հեռի պահէ մեզ Աստուած եւ բոլոր երկնային զօրութիւնը: Այս հիմքերի վերայ, որպէս մի անխախտելի ամուր ապառաժի վերայ ոտք հաստատելով մենք եւ մեր օրագիրը, երկու տեսակ պաշտօն կայ մեզ կատարելու միանգամայն. այսինքն օգտակար տեղեկութիւնք տարածել ազգի մէջ եւ մշակագործել հայկական կենդանի լեզուն:"

Եւ արդեամբք այս ուղղութեամբ խմբագրուած Հիւսիսափայլ, Օրագիր ընդհանուր ազգային լուսաւորութեան եւ դաստիարակութեան անուամբ ամսագիր մը սկսաւ հրատարակել Ս. Նազարեանց ի Մոսկուա 1858 Յունուարին, մեծ ութածալ 80 երեսէ բաղկացեալ մաքուր տպագրութեամբ՝ ամիսը մէկ "ամսատետրակ" (բա-

ժանորդագին 8 րուբլ.)։ Այս առաջին տարւոյն ծածկին ու ճակատը կար պատկեր մը՝ որ կը ներկայացընէր Հիւսիսային բեւեռի ժայռուտ մէկ երկրամասը, որուն վրայ կը հանգչէր առագաստաւոր նաւակ մը, առջեւը ծով, եւ յանհունս՝ հիւսիսայգ։ Բնաբանն էր "Այսուհետեւ ոչինչ Եգիպտոսեան խորամանկ քուրմեր, որ կամէին լինել գիտութեան միայնակ պահապանքը. այսուհետեւ ոչինչ Չինէական պարիսպ, որ պիտոյ է փակէր լուսաւոր գաղափարների մուտքը ազգերի մէջ։ Այսուհետեւ լոյս եւ ճշմարտութիւն եւ ազատութիւն խաւարի բաբելոնեան գերութենից։„ Այս "տարեգնացքը„ (գերմ. Jahrgang) տպուեցաւ Մոսկուայի Էռնէստ Պարֆքընէխդի տպարանը։ Բ. Տարին նոյն դիրք եւ ծաւալով կը տպագրուէր Գրաչով եւ Ընկ. տպարանը։ Ճակատի պատկերը փոխուած էր պարզ հիւսիսայգի մը երկնից վրայ, որ եւ մնաց յաջորդ տարիներ մինչեւ դադարումը։ Այս տարիներն ալ նոյն ծաւալով կը տպագրուէին Լազարեան ճեմարանի տպարանը։ Բաց ի Ս. Նազարեանցէ՝ առաջին տարիները գլխաւոր աշխատակից էր Մ. Նալբանդեանց (որ եւ կոմս Էմմանուէլ), դարձեալ Յ. Համասփիւռ եւ Պ. Նահապետեանց։ Վերջին տարիները Ս. Նազարեանց գրեթէ առանձին էր մնացած։

Հիւսիսափայլ առաջին տարին գրեթէ 300 բաժանորդ ունեցաւ։ Այս թիւն տարւէ տարի

նուազեցաւ. այնպէս որ 1862ի վերջերը ստիպուեցաւ դադրիլ «ընթերցող հասարակութեան շատ սակաւաթիւ լինելու պատճառով», ինչպէս կ'ըսէ ինքն խմբագիրը։[1] Այս նկատմամբ արդէն երրորդ եւ չորրորդ տարիներն յայտարարութիւններ կը գրէր խմբագիրը, եւ «սիրելի Հայերը կարդացին, կ'ըսէ Ս. Նազարեանց (Անդ), գրած յայտարարութիւնքը եւ վարուեցան միշտ նոցա ներհակ։» Տարակոյս չկայ որ ասոր մէջ առանց գլխաւոր գործակցութեան չէին Հիւսիսափայլի հակառակորդները,[2] որոնց մէջ էր Մեղու Հայաստանի խմբագիր-հրատարակիչ Ստեփանոս Քհնյ. Մանդինեանց, որոնք երբ Հիւսիսափայլ առաջին թուով Էջմիածնի վանքի դէմ սաստկութեամբ քալեց 1860ին, Մատթէոս Կաթողիկոսին ձեռօք տէրութենէ խնդրեցին դադրեցընել տալ Հիւսիսափայլը, սակայն տէրութիւնը մերժեց իրենց այս խնդիրքը։[3] «Իւր թշնամինե-

---

[1] Հիւսիսափայլ, 1862, թ. 10, էջ 196։

[2] Անդ, 1860, թ. 1։

[3] Հրապարակախօս ձայն, էջ 210, 226։ Առաջարկութեամբ Յովսէփայ Զաքարեան Չերքէզեանց ի Մոսկուա (Համբաւաբեր Ռուսիոյ, 1860, թ. 1, Օգոստ. 10) Հիւսիսափայլի 1860, թ. 10 տետրակն ազգին դաւանութեան հակառակ վարդապետութիւններ բովանդակելուն համար՝ Էջմիածնի Սինոդի 1861 Յուլիս 8 վճիռը դատապարտեց Հիւսիսափայլն եւ Ս. Նազարեանցի «Վարդապետարան կրօնի» գիրքը, եւ Կաթողիկոսին կոնդակին համեմատ՝ Տէրութենէ խնդրեց որ Հիւսիսափայլը դադրեցուի (Տես այս վճիռը՝ Արշալոյս Արարատեան 1862, թ. 667 որ եւ Մասեաց Աղաւնի, Մեղու Հայաստանի, Կռունկ եւ Ճռաքաղ լրագիրներու մէջ հրատարակեցաւ)։ Սակայն Էջմիածնի Սինոդն ստիպեցաւ թոյլ տալու Հիւսիսափայլի շարունակութիւնը, «այնու պայ-

րին, կը գրէր Ս. Նազարեանց,[1] — ո՜հ, իւր մոլորուած սիրելիներին, թշնամիք չունի Հիւսիսափայլի հրատարակողը, — կամէ՛ր նա խաղաղութիւն տալ այդ խղճալի մարդերին որ մինչեւ այժմ իւրեանց մի հատ պարծանքը որոնել են այն բանի մէջ, որ հրատարակողի ամենայն խօսքը, ամենայն գաղափարը թիւ՛ր մեկնեն, կեղտոտեն եւ աղաւաղեն տկարամիտ ժողովրդի առաջեւ, խռովութիւն ձգեն դորա մէջ, դորան յարուցանեն ընդդէմ հրատարակողին — որպէս եւ արդարեւ յարուցին իսկ մի մասնով, բայց ամօթ ու խայտառակութիւն հնձելով թէ ինքեանք եւ թէ իւրեանց պարագլուխքը։»

Այս հինգ տարւոյ միջոցին՝ ինչպէս թերթին ուղղութեան հակառակ, նոյնպէս համակրող կողմնակցութիւն մը կազմուած էր արդէն։ Վերջինս 1863ին նիւթական ձեռնտուութիւն մը մատոյց խմբագրին, որով 1864ին Մարտին վերստին սկսաւ հրատարակուիլ.[2] սակայն այս ձեռնտուութիւնն ալ կարող չեղաւ թերթին նիւթական բեռը թեթեւցընել՝ եւ նոյն տարւոյն

մանաւ զի մի տպիցին ի նմին Հոգեւոր յօդուածք, այսինքն այնպիսի յօդուածք որք վերաբերին առ հաւատն կամ առ ծէսս Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյ» (Արշալոյս Արարատեան, 1862, թ. 674)։ Այս թոյլտուութեամբ Հիւսիսափայլին 1862 տարւոյ առաջին թիւն Մայիսին լոյս տեսաւ։ Բայց Ս. Նազարեանց «Ազնիւ բարեկամներու» ուղղած խօսքերով՝ իւր ուղղութեան մէջ անսասան մնալիքը ծանոյց (Արշալոյս Ար., 1862, թ. 679)։

[1] Հիւսիսափայլ. 1862, թ. 10, էջ 199։

[2] Համբաւաբեր Ռուսիոյ, 1864, թ. 60 (Մարտ 14)։

վերջը ի սպառ դադրեցաւ Հիւսիսափայլ, տարւոյն 12 ամսատետրներն ամբողջացընելէն ետեւ։

Հիւսիսափայլն, ինչպէս վերյիշեալ Ցայտաբարութեան մէջ կը ծանուցուէր, այնպիսի յօդուածներ կը բովանդակէր գլխաւորաբար՝ որոնք նպատակ ունէին անցեալ կամ ժամանակակից Եւրոպան Ասիային ծանօթացընել, կամ ինչպէս ինքը Ս. Նազարեանց կ'ըսէր, "ձեռնտու լինել նոցա (Հայոց) դաստիարակութեանը մի մտաւորական կամուրջ ձգելով ասիացի Հայերի եւ եւրոպական ազգերի մէջ, մի հոգեղէն հաղորդութիւն հաստատելով հայկական եւ եւրոպական մարդերի մէջ։" Այնպէս որ Հիւսիսափայլի ամբողջ վեց տարիները ժողովածոյք մըն են թարգմանական յօդուածներու, որոնցմէ կէսէն աւելին չենք կարծեր որ ազգին օգուտ մ'ըրած ըլլայ։ Իսկ առաջին թուոյն առաջին յօդուածին այն գեղեցիկ գաղափարներն Հայոց ուսումնական, բարոյական եւ կրօնական կրթութեան եւ վերանորոգութեան մասին՝ միայն ըստ պատահման շօշափուած են՝ աւելի նոր տարւոյ առթիւ գրուած ճառերով, իբրեւ մշակելի նիւթեր. սակայն նոյներու յօրինուածական (systématique) զարգացման մտադրութիւն եւ նպատակին հասցընելու յարատեւ ուղղութիւն չէ տեսնուած։ Ընթերցողք կարող են գէթ աղօտ գաղաբար մը կազմել հետեւեալ ազգային յօդուածներէն, որոնք թերթին վեց տարւոյ ըն-

թացքին մէջ երեւցած են, թէ արդեօք կարելի էր մեծ արդիւնք յառաջ բերել։ Այս յօդուածներն են՝

Հայկական լեզուի խորհուրդը, 1858, Թ. 1։
Հայաստան (երկրագրական եւ բնագիտական նկարածութիւն) Թ. 3։
Մխիթար Սեբաստացի եւ Մխիթարեանք, Թ. 5, 6, 11։
Երկու խօսք, բուն Հայկական եկեղեցու մէջ երգեհոն գործ ածելու մասին, Թ. 10։
Հայերի կոչումը մարդկութեան մէջ, 1859, Թ. 1։
Հիւսիսափայլ. առ ճշմարիտ ազգասէրս, 1860, Թ. 1։
Պատմութիւն Հայոց ազգի, Թ. 1։
Սուրբ Թարգմանիչների դարը, Թ. 2, 9։
Ազգային մտածութիւնք, 1864։ Թ. 1, 4։
Հայկական թատրոնը Մոսկուայի մէջ, Թ. 9։

Ս. Նազարեանց, թերեւս իբրեւ "ուսուցիչ լեզուաբանութեան", կը համարէր թէ ազգին անկեալ վիճակը միայն լեզուի մշակմամբ կարելի է բարեփոխել. "Հայոց ազգի տունը պիտոյ է եւ կարող է միայն շինվիլ նորա լեզուի շինութեամբը...։ Հայոց ազգի տունը, կրկնումենք խիստ շեշտելով, պիտոյ է շինվի նորա լեզուի շինութեամբը," կ'ըսէ Նազարեանց։[1] Եւ այս ուղղութիւնն արդեամբք կ'երեւայ Հիւսիսափայլի մէջ, որ իւր լեզուն յընթացս վեց տարւոյ աւելի մշակեց եւ Ռուսահայոց այժմու գրաւոր լեզուին սկզբնական հեղինակներէն եղաւ։ Աշխարհաբարի զարգացման մասին Նազարեանց

[1] Հիւսիսափայլ, 1858, Թ. 1, էջ 5—6։

այն կարծիքն ունեցողներէն էր, որոնք կ'ըսեն. թէ աշխարհաբարը գրաբարի հիման վրայ պիտի զարգանայ, եւ գրաբարը իբրեւ աղբիւր աշխարհաբարի պիտոյից պիտի նկատուի։ Բաց ի վերն յառաջ բերուած Ցայտարարութեան խօսքերէն, Ս. Նազարեանց Հիւսիսափայլի առաջին թուոյն մէջ աշխարհաբարի մասին խօսելով կ'ըսէ. «Գրոց ասած լեզուն որ այժմ մեռած է եւ կարող է միայն պիտանի լինել գիտնական հային, լեզուի նորաշինութեան համար աշխարհաբառ լեզուի թերութիւնքը լցուցանելու մայրենի աղբիւրներից (էջ 6)։ . . . Եւ մեր Հայոց գեղեցիկ աշխարհաբառ լեզուն պիտոյ է իւր փոքր ի շատէ անարատ գրութեան մէջ յառաջ գնայ, մի ոտքը պահելով միշտ հին նախնական հիմքի վերայ, օր աւուր լցուցանելով իւր պակասութիւնքը հին լեզուի ճոխ գանձարանից . . . ։ Հայոց նոր հայկաբանը, լինելով տեղեակ իւր լեզուի ճոխ գանձերին, տեղեակ եւ կենդանի ժողովրդական լեզուի բնաւորութեանը պարտական է խելացի տնտեսութեամբ գործ դնել լեզուի ընդհանուր նիւթը, պահպանել հին լեզուից, ինչ բան կարելի էր պահպանել, փոխ առնուլ հնիցը ինչ որ պակաս էր նորին, եւ պիտանի կացուցանել, ինչ որ արդէն պատրաստ էր այժմեան լեզուի մէջ, հետեւելով իւր ընտրողական ճաշակին։ Նոր լեզուն կամաւ եւ գիտութեամբ ձգձգել եւ մօտեցնել հին գրոց լեզուին եւ այդպէս մե-

ուսուցանել կենդանի աշխարհաբառի ինքնաշարժ հոգին, ինչպէս տեսանվում է Նոր յունական լեզուի մէջ, անպատշաճ է ամենեւին, որովհետեւ այդպէս յառաջանալու էին խորթ եւ անսովոր ձեւեր, որ չէին բղխում ազգի սրտի խորքից։»

Եւ սակայն ինքն Ս. Նազարեանց, մանաւանդ թարգմանական գրութեանց մէջ, ինչպէս միտ դնել կու տայ նաեւ Ա. Երիցեանց,[1] գրաբարէ փոխառութեան մէջ շատ անգամ գրաբարի վերադառնալու ըղձացող խմբէն աւելի ազատութիւն ցոյց է տուած եւ "անզգալի կերպիւ մօտեցած է գրաբարին» (Ա. Երիցեանց, անդ)։

Որչափ տարբեր է իրականութիւնն այն ոմանց կարծիքէն՝ որոնք իրենք զիրենք Ս. Նազարեանցի լեզուական ուղղութեան հետեւող հռչակելով հանդերձ՝ գրաբարի եւ նաեւ գաւառաբարբառներու անտեղեկութեամբ ստիպուած են թուրք ու թաթար եւ ռուս բառերով ու ասութեամբք իրենց լեզուին աղքատութիւնը ծածկել — եւ կը յօժարին նաեւ պարծիլ որ լեզու ստեղծած են։

Հէօխափայլի յօդուածներէն կ'երեւար՝ որ խմբագիրը պատմութեան եւ աշխարհագրութեան մէջ կաղ էր եւ աւանդածները՝ մոռացածոյ. իսկ ժամանակակից Հայոց կենաց, ինչպէս նաեւ Տաճկահայոց վրայ տեղեկութիւն

---

[1] Փորձ, 1880, V—VI էջ 253։

չունէր եւ ունենալու հոգ ալ չէր ցուցըներ։ Անշուշտ խմբագրութենէ զատ շատ գործերու զբաղած ըլլալով՝ ծրագրի մը համեմատ թարգմանական յօդուածները կարգելու, ամսատետրերու բովանդակութիւնը հարստացընելու փոյթ չէր ցուցըներ։ Բայց որչափ Հիւսիսափայլի գլխաւոր գործակից Մ. Նալբանդեանցի յօդուածներուն մէջ կիրք ու կողմնակալութիւն կ'երեւար, նոյնչափ բուն խմբագիրն անկեղծ էր, անկողմնակալ եւ առանց ակնածութեան. առիթ հանդիպած ժամանակ գիտէր անաչառութեամբ յանդիմանել անհոգութիւնը, անտարբերութիւնն յազգային կրթութեան, նախանձը, անընթերցասիրութիւնը, իւր վիճակին բարձրութեան նըլելու անհոգ գտնուող եկեղեցական դասը, բայց առանց բնաւ անհատները շօշափելու։ Այս կողմանէ Հիւսիսափայլ ճշմարիտ լրագրութեան պաշտաման հաւատարիմ մնաց, թէեւ այս վարմունքն՝ որ նոր էր Ռուսահայոց մէջ (— Նախորդ երկու թերթերէն Կովկաս ռուսերէնէ թարգմանութիւն էր, իսկ Արարատ Հայոց նախնեաց քաջագործութիւններն անմեղօրէն կը պատմէր —) եւ անվարժ ընթերցողներու հաճոյ չէր կրնար ըլլալ։ Հիւսիսափայլի այս ընթացքն ինչպէս Հնդկահայոց լրագրութեան մէջ տեսանք, նոյնպէս Ռուսահայոց թերթերու վրայ միշտ երեւցաւ՝ առաւել կամ նուազ աստիճանաւ. ուր Տաճկահայոց քով, որոնք անհամեմատ

աւելի թերթեր ունեցան, նոյն իսկ այսօրս շատ ցանցառ է։

Հիւսիսափայլն Ռուսիոյ Հայոց համար նոր գաղափարներ ինքնաճանաչութեան եւ ինքնավարութեան մասին տուաւ՝ ուսուցանելով ազգին միութիւնը թէեւ յայլեւայլ կրօնս բաժանեալ ըլլայ, դաստիարակուելու պէտքը, ընթերցասիրութիւնը, ընկերութիւններ կազմելու հարկաւորութիւնը, տգէտ եկեղեցականաց վնասակար ազդեցութենէն ազատելու կարեւորութիւնը։ Այս գաղափարներն, զորոնք Ս. Նազարեանց միայն առարկապէս կը շօշափէր եւ որոնք անհատական թշնամութեանց բնաւ հետք չունէին, ինքնին գրաւեցին անկողմնակալ ընթերցողները։ Եթէ Հիւսիսափայլն այսպիսի գաղափարներու իրագործման անխոնջ հետամուտ ըլլար, դէտ կագնէր ազգին եւ երկար ատեն եւ յարատեւութեամբ խրատէր, յանդիմանէր հաստատութեամբ, եւ առաջնորդէր շատ տարիներ, մեծագոյն կ՚ըլլար Ս. Նազարեանցի արդիւնքն։[1]

[1] Ստ. Նազարեանց 1870ին վերջերը Լուսաբեր անուամբ լրագիր մը կ՚ուզէր հրատարակել, բայց իրմէ անկախ պատճառներէ արգիլուեցաւ։ (Մեղու Հայաստանի, 1879, Թ. 38։)

## 43. ՄԵՂՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ

*Տփղիս, Շաբաթաթերթ, եւ այլն, 1858—86:*

*Խմբ. Ստ. Քհնյ. Մանդինեանց, Պ. Սիմէօնեանց:*

*Տպր. Ներսիսեան Հգր. Դպր. Հայոց:*

1858 տարին Ռուսահայոց լրագրութեան բեղմնաւոր տարին էր։ Հիւսիսափայլ, Մեղու Հայաստանի եւ Ճռաքաղ միեւնոյն ժամանակ սկսան հրատարակուիլ։ 1857 Սեպտ.ին արդէն ծանուցած էր ի Տփղիս Ստեփանոս Քհնյ. Մանդինեանց, որ 1858ին սկիզբն աշխարհաբար շաբաթաթերթ մը պիտի հրատարակէ Մեղու Հայաստանի անուամբ, որուն նիւթը պիտի ըլլայ քաղաքական եւ բանասիրական լուր, բաժանորդագինը 6 րուբլ։[1] Եւ արդեամբք 1858 Յնր. 1ին հրատարակեցաւ Մեղու Հայաստանի, լրագիր քաղաքական, բանասիրական եւ առեւտրական անուամբ 4 թուղթ քառածալ թերթ մը, որ շաբաթ օրերը Տփղիսի Ներսիսեան Հոգեւոր Դպրոցի տպարանը կը տպագրուէր։ Ս. Քհ. Մանդինեանց ի սկզբանէ մինչեւ 1862ի վերջը թերթին խմբագիր-հրատարակիչն էր. նոյն տարւոյ վերջը հրատարակեց թէ ինքն այլ եւս կարող չէ նիւթական վնասներուն պատճառաւ՝ թերթը շարունակել, զոր կը յանձնէ "աշխատասէր եւ ազգասէր ուսումնականաց"։

[1] Մասիս, 1857, թ. 298։

Եւ գտնուեցան այսպիսիք։ 1863ին՝ Հրատարակութեամբ Հ. Էնֆիաճեանցի եւ խմբագրութեամբ Պետրոս Սիմէօնեանցի կը տպուէր ի տպարանի "Հ. Էնֆիաճեանց եւ ընկ.", իբրեւ "լրագիր քաղաքական եւ բանասիրական։"[1] Այն տարւոյ Յունիսէն սկսեալ իւրաքանչիւր թուոյն Հետ պիտի տրուէր, ինչպէս 1862ի վերջերը կը ծանուցուէր, կէս թերթ յաւելուած մը՝ "Ռեպերտուար Հայոց թէատրոնի", Միքայէլ Պատկանեանցի թատերական գրութիւնները։ 1874ին արդէն դիրքը փոխուած էր. սովորական քաղաքական լրագիրներու դիրքով՝ Հինգիչեան 2 թուղթ կը Հրատարակուէր, մնալով շաբաթաթերթ "լրագիր քաղաքական, ազգային եւ բանասիրական", բաժանորդագինը 7 րբ.։ 1879էն սկսեալ շաբաթն երկու անգամ կը Հրատարակուէր՝ 8 րբ. բաժանորդագնով։ 1881 Յնր.ի վերջը Մեղու Հայաստանի բաժանորդագրական կամ "Հաւատարմական ընկերութեան. սեպՀականութիւն եղաւ, եւ սկսաւ շաբաթը վեց անգամ Հրատարակուիլ (բաց. ի Բշ. եւ տօնի օրերէն), 10 րբ. բաժանորդագնով ի տպարանի "Մ. Ռօտինեանց եւ ընկ.։" Իւր վճարող բա-

[1] Մեր ձեռքը սոյն թերթէն շատ սակաւաթիւ Համարներ միայն կան՝ 1864էն մինչեւ 1883. Հակառակ մեր երկար ջանից կարող չեղանք ամբողջական տարիներ ձեռքբերել։ Այս պատճառաւ թերթիս վրայ մեր կազմած կարծիքն առաւել յեցած է ուրիշներու գրութեանց վրայ։

ժանորդաց թիւը, որ 1879ին 450 էր,[1] այս ամէն նորութեամբ ալ՝ չաճեցաւ, եւ արդէն նոյն 1881ին վերջը նիւթական կորուստներ ունեցաւ, որով Հրատարակութիւնը շաբաթն երեք անգամի վերածուեցաւ։ 1882ին թերթին 25 ամեայ յոբելեանը կատարուեցաւ։ 1886 Դեկտ. 28ին Մեղու Հայաստանի վերջին անգամ լոյս տեսաւ. նոյն վերջին թուոյն մէջ խմբագիրը կը ծանուցանէր, թէ բաժանորդաց սակաւութեան եւ իր անձին տկարութեան պատճառաւ Հրատարակութիւնը բոլորովին կը դադրեցընէ։

Ստ. ՔՀՆյ. Մանդինեանցի խմբագրապետութեան ժամանակ, որ 5 տարի տեւեց, թերթին բովանդակութիւնն էր գլխաւորաբար քաղաքական տեսութիւն, կրօնական յօդուածներ, թարգմանական գրութիւններ, թատերգութիւններ, առակներ, եւ այլն, յաճախ Ս. Գրոց խօսքերով համեմատ։ Այնպէս որ իրմէ 8 տարի յառաջ Հրատարակուող Արարատէն շատ տարբերութիւն չունէր։ Իբրեւ «ըստ Հին օրինի» քահանայ՝ Ստ. Մանդինեանց Ստ. Նազարեանցին հակառակ ուղղութիւն առած էր կամ ունէր, եւ անոր գլխաւոր հակառակորդներէն էր։ Իրմէ շատ տարբեր չէր իրեն յաջորդը Պ. Սիմէօնեանց, որ 1863էն սկսեալ մինչեւ դադարումը կը խմբագրէր թերթը։ Այնպէս որ Մեղու Հայաս-

---

[1] Մեղու Հայաստանի, 1879, թ. 12։

տանէ մինչեւ 1870՝ առաջին տարիներէն տարբերութիւն չունէր։ Հազիւ այս թուականին կը սկսին ազգային լրեր, պատահական եւ աւելի համարատուական թղթակցութիւններ. բայց ինքնին խմբագրութիւնն ազգով զբաղելու այնչափ ախորժակ չէր ցուցըներ։ 1871ին Թերթին սկսան գործակցիլ քանի մ’ուսեալ երիտասարդք, եւ Թերթը քիչ մը կենդանացաւ։ Բայց երբ 1872ին սկիզբը Գր. Արծրունի Մշակ լրագիրը հրատարակելով՝ սկսաւ արձակ համարձակ գրել հայ հասարակութեան ուսեալ դասուն անտարբերութեան, հոգեւոր դասուն եւ աւագանւոյն վարմանց վրայ, իրենք զիրենք վիրաւորեալ համարող անձինք անմիջապէս կազմեցին "մեղուական խումբը„, վերանորոգեցին Մեղու Հայաստանին ինքնըքուստ եւ յարտաքուստ, եւ Թերթին խիստ պահպանողական դիրք տուին՝ ամէն յանդուգն յարձակմանց դէմ։ Թերթն այս ժամանակէն սկսաւ խմբագրական յօդուածներ, տեղական լրեր, թղթակցութիւններ հրատարակել, միով բանիւ Թերթն ազգայնացաւ եւ մասնաւորուեցաւ։ Սակայն կոյր պահպանողական ուղղութիւնը՝ նորակազմ "ազատ կուսակցութեան„ առաջարկութիւններն առանց ընտրութեան մերժելով՝ ոգիներն իրեն դէմ գրգռեց, եւ ժամանակին Թերթերէն հալածուած՝ 29 տարւոյ հասակին մէջ մաշեցաւ անսուաղ։

Իւր մահն ամենեւին զգալի չեղաւ. մա-

նաւանդ թէ ամէն կողմանէ գերեզմանին վրայ քարեր՝ տեղացին։ Արձագանքի “Քաջբերունի„ յօդուածագիրը (1887, թ. 1) Մեղու Հայաստանի լրագրոյ մահը ծանուցանելով՝ անոր կենաց մասին հետեւեալը կը գրէ. “Պատանեկութեան մէջ ծանօթացաւ նա մոլի կեանքին եւ ապա, մինչ իւր կենաց վախճանը, բարեկամաց եւ ազգականաց խրատները այլ եւս չկարողացան յետ պահել նորան՝ աննախանձելի վարք ու բարքից։ Ընկեր եւ կուսակից եղաւ վատ մարդ-կանց, պաշտպան հանդիսացաւ անարգ անձնաւ-որութեանց, մեղսակից եղաւ մեղաւորներին, ար-տաքսուեցաւ ամէն պատկառելի տեղերից եւ խառնակիչ դարձաւ իւր ընտանեաց մէջ։ Կեանքի այդ զազրելի ընթացքը բնականապէս պիտի ներգործէր երիտասարդի առողջութեան վրայ, եւ արդէն բարակացաւի նշաններ երեւցան։ Ժո-ղովեցան այն ժամանակ նորա ճարահատեալ մայրը եւ ազգականները, եւ ըստ նախնական սովորութեան, վճռեցին՝ պսակել նորան, որ գուցէ թէ փոխէ իւր վարքն ու բարքը։ Քսան եւ հինգ տարեկան հասակում կարմիր ու կա-նաչ կապեցին սորան, բայց պսակի օրհնութիւնը եւս չօգնեց տգեղ երիտասարդին։ Անձնատուր լինելով իւրանից աւելի սեւերես եւ տուն, տեղ, գերդաստան թողած ընկերներին, նա հասաւ այժմ յուսահատութեան եւ վերջ դրեց իւր մաշուած կեանքին։„

Որչափ ալ չափազանցութեամբ գրուած կարելի ըլլայ համարիլ այս եւ նման «դամբանականները», սակայն մինչեւ որոշ չափ մը կարելի չէ առանց հիման համարիլ։ Թող յորդորէ այս օրինակը մեր խմբագիրները՝ իրենց օրերն անօգուտ, եւս առաւել ի վնաս հասարակութեան չանցընել։

## 44. ՃՌԱՔԱՂ

*Ամսաթերթ, Մոսկուա, 1858—1862։*

*Խմբ. Մ. եւ Զ. Մսերեանց։*

*Տպ. Լազարեան Ճեմարանի։*

Մսեր Մագիստրոս եւ Զարմայր՝ հայր եւ որդի Մսերեանք 1858ի սկիզբը 40 երեսէ բաղկացեալ մեծ ութածալ տետր մը հրատարակեցին «արդեամբք եւ ծախիւք Պ. Յովնէփայ Աստուածատրեան Իզմիրեանց Պզլարեցւոյ», որուն յաջորդեց նոյն տարւոյն երկրորդ կիսին Բ. Տետրակն՝ 32 էջէ բաղկացեալ։ Այս տետրակներու անուն դրուած էր՝ *Ճռաքաղ* յորջոյ եւ ի ցրուածոյ բանից հին եւ նոր ժողովածուոց, վասն զի թէ առաջին եւ թէ երկրորդ տետրակին մէջ կար նախնեաց անտիպ գրութիւններէն հրատարակութիւններ, գրաբար հատուածներ ու ոտանաւորներ, եւ ի վերջոյ աշխարհաբար քանի մը տեղեկութիւններ։

Յաջորդ տարին՝ 1859ին այս կիսամեայ

թերթն եղաւ ամսաթերթ բանասիրական, նոյն Ճռաքաղ անուամբ։ Իւրաքանչիւր ամսաթերթն 16—26 թուղթ էր, բաժանորդագինն՝ 5 րբ։ Բ. Հատորն՝ 1860—1861ին հրատարակեցաւ, ամիսն երկու թերթ։ Գ. Հատորն (1861—1862) միասին հրատարակեցաւ 1862 Յուլ. 1ին, եւ հատորիս ճակատը դրուած էր Ազդ մը, որ կը ծանուցանէր՝ թէ սոյն հատորով կը դադրի Ճռաքաղի հրատարակութիւնն առ ժամանակ մի՝ գրաքննութեան հեռաւորութենէն ծագած դժուարութեանց պատճառաւ[1]։

Ճռաքաղի երեք տարւոյ միջոցին հրատարակած նիւթերէն՝ հետեւեալները կը յիշենք։

Թէոդորոսի Միայնակեցի Գովեստ ի Ս. Աստուածածինն, Ճռաքաղ, 1858, Տետր. Ա. 7։

Գասպար Թագաւորի գերեզմանն, 29։

Գրիգորի Սքանչելագործի եպսկի. Նէոկեսարիոյ Գովեստ ի Ս. Աստուածածին, 1858, Տետր. Բ. 3։

Գահ կայսեր Ռուսաց, ընծայեալ ի հայազգի հասարակութենէն Նոր-Ջուղայոյ, յամի Տեառն 1659. (պատկերաւ), էջ 21։

Թուղթ Ներս. Արքեպ. Կիլիկ. Տարսոնի, Պտոլոնի. Յունականն, 1859, էջ 3, 37։

Սովորութիւն Ողջոյն տալոյ եկեղեցւոյ մէջ Պտրգի. ժամանակ, էջ. 24։

Տեառնընդառաջ, 47։ Սովորութիւն ճրագավառութեան ի Տեառնընդառաջի երեկոյին, 50։

---

[1] Կը յայտնեմ նաեւ հրապարակաւ իմ խորին շնորհակալութիւնս Վսեմ. Պր. Զարմայր Մսերեանցին, որ Ճռաքաղի 1858 եւ 1860-61 տարիներն Միաբանութեանս մատենադարանին նուիրել հաճեցան զատ, նաեւ նոյնին Գ. Հատորն եւ Համբաւաբեր Ռուսիոյ լրագիրն հետազօտելու շնորհեց ինձ։

Յովհաննիսիկ Վ․ի համառօտ Պատմ․ անցից անցելոց ի վերին կողմանս Հայաստանի ըստ կարգի ժամնկգրութեան․ սկսեալ ի ՌԻԱ թուականէն Հայոց ցՌԽԹ (Յ․ Ք․ 1572—1600), 69, 105։

Տեղեկութիւն ի վերայ Նշանակութեան . . . բառիս Աֆն, 79։

Յովհ․ Վանական Վ․ի Տաւուշեցւոյ բացատրութիւն աղօթից, 147, 195, 227։

Զենոբ Գլակ, մատենագիր Դ դարու, 167, 300, 1860, էջ 30։

Պատմ․ գիւտի եւ փոխադրութեան Նշխարաց Ս․ Գր․ Լուսաւորչի հանդերձ քննութեամբ, 199, 230, 272։

Անանիա Նարեկացի, 259։ Երանելւոյն Անանիայի հոգեշնորհ փիլիսոփայի Ներբողեան ասացեալ ի սբ. կաթղկէ․ եկեղ․ որ է ի Նոր քաղաքի, որ այժմ կոչի Վաղարշապատ․ 265, 291, 323, 358, 399։

Ագաթանգեղոս, 310։

Պատմութիւն կենաց, նշխարաց եւ եկեղեցւոյ Ս․ Գրիգորիսի, 332։

Արտաւազ Հայկազն, 406։

Ստուգաբանութիւն բառիս Դրախտ, 427։

Գր․ Մագիստրոսի Թուղթ ի պատասխանի․ գրոյ Սարգսի Վ․ի, 1860-61, էջ 8, 28։

Տեղեկութիւն ի վերայ շրջանին Հայկայ, 14։

Հատուած յեկեղ․ պատմ․ Եւսեբեայ, Դպրութ․ Ա․ Գլ․ ԺԳ․, 21։

Նամակ Յովհ․ Օրպէլի եւ այլոց վարդապետաց եւ եպիսկոպոսաց Սիւնեաց ի պատասխանի․ թղթոյ Կոստանդնի Բ․ Կաթողիկոսի Հայոց, 39։

Թուղթ Յովհ․ Օրպէլի Արքեպ․ Սիւնեաց առ Զաքարիա Ծործորեցի, 55։

Մովսիսի Է․ Կաթղկսի․ Թուղթ գրեալ առ Վլատիշլաւ արքայ Լեհաց ի թուին Հյց․ ՌՁԱ(1632), 72։

Տեղեկութիւն ի վերայ Ջուանշիր իշխանի եւ Դաւթակ ճարտասանի, 76։ Դաւթակայ քերթողի Ողբ ի մահն Ջուանշիրի, 79։

Գերեզմանք անդամոց տանն մեծի իշխանաց Օրբելեանց, 83։

Փիլիպ․ի կաթղկսի․ Թուղթ առ Վլատիսլաւ Դ արքայ Լեհաց յամի Տն․ 1644, էջ 90։

Դաւանութիւն ուղղափառ հաւատոյ Հայաստանեայց ըստ կաթուղիկէ եկեղեցւոյ, զոր խնդրեաց Պօ-

Ինչպէս սոյն ցուցակէն կ'երեւայ՝ Ճռաքաղը պէտք է նկատել աւելի գործի մը նախնեաց համառօտ գրութիւններն հրատարակելու, եւ. այլ նոյն կարգի գրութեանց ժողովածոյ մը։ Իբրեւ այսպիսի՝ ունի ազգային մատենագրութեան համար իւր՝ յատուկ նշանակութիւնը։ Քանի մ'ինքնագիր հետազօտութիւնք, որոնք միայն նորքին աղբիւրներէ քաղուած են, չեն այնչափ քննական եւ հիմնական։ Իսկ ժամանակակից եւ հասարակութեան վերաբերեալ յօդուածք շատ ցանցառ են։ Կրնանք ուրեմն ըսել՝ որ Ճռաքաղի թէեւ բովանդակութիւնը ժողովրդեան համար նշանակութիւն եւ ազդեցութիւն մ'ունեցած չէ, սակայն ուսումնականաց համար հետաքրքրական է, եւ միշտ իւր յարգը պիտի ունենայ, ոչ այնչափ ուսումնասիրուած, որչափ ուսումնասիրելու մատակարարած առատ նիւթովն։

## 45. ԱՐԵՒՄՈՒՏՔ

*Երկշաբաթաթերթ, Փարիզ 1859—65:*

*Խմբ. Մ. Ոսկանեան:*

*Տպ. Արամեան եւ Վալոնի:*

*Փարիզի Արեւմուտքի դադարմանէն երեք տարի ետքը՝ 1859 Յնր. 1ին Ստեփան Ոսկանեան նոյն տեղ հրատարակեց Արեւմուտք, Արշալոյս Եւրոպայի լրագրութեան անուամբ երկշաբաթաթերթ մը, քառածալ երկիցեան 8 երես (20 Փր. բաժնեգին.): Այս հրատարակութեան կը ստորագրէր «Համարատու Տըլէդր», իսկ ինքն Մ. Ոսկանեան էր թերթին «շարագիրն»: Դադարեալ Արեւմուտքի համակրող 11 «հիմնադիրք» Արեւմուտքի հրատարակութեան ծախքերն յանձն առին: Եւ սակայն թերթը նոյն տարին միայն կրցաւ բոլորել: 1859 Դեկտ. 15ին հրատարակեալ 24դ թիւն վերջինն եղաւ. վասն զի շարագիրն իւր հրաժարականը տուաւ «հիմնադրաց»,[1] որ թոյլ չէին տար ազատասէր շարագրին գրչին սանձերը:*

*Անցաւ չորս տարի, եւ ահա Արեւմուտք 1864 Փետր. 1ին վերստին լոյս տեսաւ (Բ. Տարի): Շարագիրը նոյն էր, համարատուն՝ Ա. Թրիքիէ: Այս երկրորդ տարին կարելի չեղաւ ամբողջացընել. նոյն տարւոյ վերջը դադրելէն*

---

1 Մասիս, 1860, թ. 416—7:

ետեւ՝ 1865 Յնր.էն սկսեալ քանի մը Թիւ-միայն լոյս տեսաւ։[1] 1866 Մայիսին խմբագիրն իւր Հայրենիքն Զմիւռնիա դարձած էր, ուր իւր եռանդուն գործունէութեան եւ կարողութեան արժանի ազգային պաշտօններու հասաւ, եւ 1869ին La Réforme գաղղ. լրագիրն սկսաւ խմբագրել, զոր եւ ցայսօր կը հրատարակէ։

Մ. Ոսկանեան որչափ Արեւելքի խմբագրութեան մէջ տակաւին տհաս կ՚երեւար, նոյնչափ սկսած էր աւելի հասուն եւ սուր գրիչ ստանալ Արեւմուտքի հրատարակութեան ժամանակ։ Սակայն Արեւմուտք առ հասարակ՝ պէտք է ըսել, որ շատ աղքատ էր եւ նպատակի մը չէր կարող հասնիլ։ "Եւրոպայի լուսաւորութեան արձագանգ" ըլլալ ուղղող թերթը քանի մը ժամանակակից քաղաքական եւ մանր լուրեր զատ՝ ունէր քանի մը թարգմանական աննշանակ յօդուածներ։ Ազգին վերաբերեալ յօդուած մը եթէ փնտռուի այս Ա. Տարւոյ մէջ՝ մարդ կը գտնէ 4—5 հատ կծու նախադասութիւններով համեմեալ՝ բայց սրամիտ յօդուածներ Կռճիկեան Ցակոբայ, Գ. Այվազովսքի եւ Կ. Շահնազարեան Վարդապետներու դէմ, որոնք կ՚ըսուի թէ իւր գրչին ազատութեան արգելք կ՚ըլլան, եւ Կ. Պոլսոյ Ազգային եւ Իփէնտիներու դէմ քանի մը լոկ բառերով սպառնալիքներ։ Անոր համար մեզի

[1] Մեղու, 1865, թ. 255։

անըմբռնելի է թէ ինչու Կ. Պոլսոյ Մեղու այնչափ խռոված եւ խռովեցուցած էր իրենները, Արեւմուտքի Կ. Պոլսոյ մէջ գտած ընդունելութիւնը գրով եւ պատկերով հեգնօրէն ստորագրելով եւ հալածելով խռովեալ Ժողովրդեան բերնէն յոռետես եւ սպառնալից Արեւմուտքի յառաջ բերած ազդեցութիւնը։[1]

Մինչեւ 1864 շատ ամիսներ անցած էին արդէն Սէնի եւ Վոսփորի ափերէն եւ իրաց կերպարանքը փոխուած էր։ Արեւմուտքի խմբագիրն հասուն միտք մը եւ աւելի հանդարտ սիրտ մը ստացած՝ առաջին թուով իւր հակառակորդաց երեսը դարձնելէն ետեւ, սկսաւ աւելի լրջօրէն դիտել արեւելքը եւ Կ. Պոլսոյ հայ հասարակութեան, հրատարակութեանց, Սահմանադրութեան զբաղելով՝ խռոված միտքերն աւելի անդորրացուց եւ յինքն յանկոյց։ Ափսոս որ այս ընթացքն ի սկզբանէ չէր սկսուած եւ ոչ ալ երկար տեւեց։

Մ. Ոսկանեանի գրութիւնքն կը ցուցընեն գրողին սուր միտքը, զգացմանց ազնուութիւնն ու դատողութեան անկեղծութիւնը, վճռական ճարտար ձեւերը եւ բաւական մաքուր աշխարհաբար։

---

1 Մեղու, 1859, Թ. 18։ Ժողովրդեան յուզումն այնչափ սաստկացած էր՝ որ 1859ին (Յուլիս) Պոլիս Յայտարարութիւն մը հրատարակեցաւ, ուր կ'ըսուէր "Արեւմուտք լրագիրը երեցէք, մրկեցէք, փոշի դարձուցէք, որպէս զի ուրիշ մէկն ալ անոր ոճէն կամ յանդգնաբար զրուցուածքէն չխաբուի,,"

Արեւմտեան հայ լրագրութեան պատմութեան այս շրջանը փակելով՝ կը մնայ իբրեւ առաջին նշան, որ ինչպէս Հնդկահայոց եւ Ռուսահայոց, նոյնպէս Տաճկահայոց լրագրութիւնը պիտի սկսէր աւելի օգտակարագոյն նկարագիր մ'առնուլ. թէեւ այս նորութեան հակառակող կիրթ եւ անկիրթ ամբոխին առաջին ուժեղ հարուածներուն թէ՛ ինքը եւ թէ՛ իւր նախորդները զոհ ինկան:



# ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼԼԻՔ

Յընթացս տպագրութեան մեր ծանօթութեան հասան հինգ ազգային լրագիրներ, որոնց վրայ գործոյս մէջ ըստ կարգին չէ խօսուած: Նոյնպէս արդէն մեզի ծանօթ թերթերէն ոմանց վրայ նորագոյն տեղեկութիւններ ստացանք նոյն թերթերը ձեռք բերելով եւ կամ ուրիշներուն տուած ծանօթութիւններէն: Անոր համար յիշեալ հինգ նոր թերթերու վրայ մեր ստացած ծանօթութիւնները եւ միւսներուն վրայ նոր տեղեկութիւններ եւ ուղղելիքներ այս տեղ կը դնենք:

### 1. ՕՃԱՆՍՓՌԵԱՆ

*Պոմպէ :*

### 2. ՀՏՃՄԱՐԱՆ

*Կաշկաթա :*

Այս երկու հնդկահայ լրագիրք, որոնք բոլորովին անյիշատակ մնացած են այն ամենէն, որ ազգային լրագրաց վրայ խօսած են, կը յիշատակուին կալկաթայի Աղէտաւէր Արարատեան

լրագրին մէջ[1] այսպէս. "...Եղեն այո՛ լրագիրք ազգիս մերոյ ի Հնդիկս, որպիսի են... Օճանաֆանեան լրագիրն Բումբայոյ, Շտեմարանն Կալկաթայ... այլ ոչ ոք ի նոցանէ հաս ի հասակ մանկութեան։„ Անկէ աւելի տեղեկութիւն պիտի չունենայինք ասոնց վրայ, եթէ Սինկափորի Ուսումնասէրն[2] Ազգասէրէ նոյն խօսքին առթիւ ուրիշ կարեւոր պարագայ մ'ալ չյիշէր։ "Եղեն արդարեւ, կ'ըսէ, լրագիրք ազգի մերոյ ի Հնդիկս, այսինքն Ազդարարն, Օճանաֆանեանն եւ Շտեմարանն, որք մեռեալ դադարեցան ի մանկական հասակի. բայց այնոքիկ քառասուն եւ հիսուն (տարիէ) ամօք յառաջ քան զԱզգասէրն էին,՝ յորժամ զիղձ յառաջադիմութեան մակացութեանց՝ դեռ չէր տակաւին արծարծեալ ի սիրտս հասարակութեան ազգիս։„ Ուրեմն Օճանաֆանեան եւ Շտեմարան լրագրաց հրատարակումը դարուս սկիզբն եղած է՝ 1800ին եւ 1810ին մէջերը։ Մենք գոհ ենք առ այժմ այսչափին ալ իմանալով։

---

[1] 1851 թ. 66։ Տես վերն էջ 84, ծան. 1։
[2] 1851 թ. 43։

## 3. ԺԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԵԱՆ

*Շաբաթաթերթ, Վիեննա, 1819:*

*Խմբ. Մխիթարեան Միաբանութիւն:*

*Տպ. Մխիթարեան:*

Վիեննայի Մխիթարեանց կողմանէ 1819 Հոկտ. 16/28 թուականաւ քառածալ 4 երես շաբաթաթերթ մը սկսաւ հրատարակուիլ, Ժանօթութիւնք վաճառականութեան անուամբ, որուն նպատակն էր Վիեննայի հրապարակին առեւտրական տեղեկութիւնները ծանօթացընել արեւելք: Այս առաջին թուոյն մէջ, որ իբր փորձ հրատարակուած է, կար դրամոց եւ ուտելեաց արժէքընթացքը, քպղաքական եւ հասարակական տեղեկութիւններ Եւրոպիոյ, Ափրիկէի եւ Ամերիկէի վրայ:

Ասոր առաջին երեսն հետեւեալ ազդարարութիւնը կը կարդանք. “Հիմայ փորձի համար կէս թերթ միայն տպեցինք, թէ որ սկսելու ըլլանք նէ, ան ատենը ամէն շաբաթ մէկ ամբողջ թերթ կ'ընենք, ու ալ շատ արեւելքէն հոս եկած, ու հոս տեղէն արեւելք դացած վաճառելու բաներուն գիները, ու պէսպէս խապարներ կըգրենք:” Որչափ մեզի ծանօթ է՝ այս փորձն յաջողութիւն ունեցած չէ եւ առանց շարունակութեան է մնացած:

## 4. ԳԵՐՄԱՆԻՈՅ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԴԻՊՈՒԱԾՆԵՐԸ

*Զմիւռնիա, 1846։*

Այս տիտղոսով 1846ին, որչափ կ'երեւայ ի Զմիւռնիա հրատարակեալ՝ քառածալ 24 երեսէ բաղկացեալ հրատարակութիւն մը մեր ձեռքն անցաւ, զոր կարելի է իբրեւ լրագիր նկատել։ Այս թերթին մէջ 1845ին վերջերը Լոնտոն եւ Բարիզ հրատարակուած այն յօդուածներու թարգմանութիւնք կան, որոնք նոյն տարւոյ գերմանիոյ եկեղեցական դիպուածներու (գերմանական-կաթողիկեայց) վրայ կը խօսին։ Ասոնց կը յաջորդէ "Զմիւռնիա, Մարտ 12, 1846" վերնագրով "Երեւելի լուր մը Չինաստանէն։"

Թերթին բովանդակութիւնը կը վկայէ՝ որ հայ-բողոքական հասարակութեան կողմանէ հրատարակուած է նոյնը։ Ուրիշ տեղեկութիւններ կը պակսին։

## 5. ՍԻՆԿԱՓՈՐ

*Սինկափոր, 1847։*

Պէտրոսեան Ռուսինէկ լրագիրը կը յիշատակէ (1861 Թ. 1) 1847ին ի Սինկափոր հրատարակեալ համանուն թերթ մը։ Այս մասին ուրիշ յիշատակութիւն մը չենք գտներ, եւ կը կասկածինք Պէտրոսեան Ռուսինէկի սոյն տեղեկութեան ճշդութեան վրայ։

Էջ 16, տող 19 երկու կարդա՛ երեք։
„ „ „ 28 Հայերէն „ Հայկական։

Էջ 18, տող 7 յաւել՝ Հայ լրագրաց պատմութիւն մը գրած է նաեւ Վիկտոր Լանկլուայ Փարիզի Revue de l'Orient լրագրոյ 1863 Ապր.-Մայիս տետրակին մէջ, ուր 1812—1863 հրատարակեալ 60է աւելի լրագրաց վրայ կը խօսի։[1]

Էջ 23, տող 7 1. Աշտարակ անդրանիկ լրագրոյ վրայ գրած ժամանակ՝ թերթը տեսած չէինք եւ հազիւ քանի մը տեղեկութիւններ կարող եղած էինք քաղել։ Այժմ Աշտարակի Ա. եւ Բ. տարիները ձեռք բերած ըլլալով՝ կարող ենք այս առաջին թերթին վրայ աւելի մանրամասն խօսիլ։

Աշտարակի ձեռնարկողն, խմբագիրն ու հրատարակիչը՝ Տէր Յարութիւն Շմաւոնեան Շիրազեցի Աւագ Քահանայն Մադրաս հաստա-

---

[1] Փարէզ 1863, Թ. 94։ Այս յօդուածը (Les journeaux chez les Arméniens) վերջին բոպէին Փարիզի Հայագէտ Ուսուցչապետ Ա. Գարիերի ձեռօք մեր ձեռքն հասաւ։ Շնորհակալութիւն Ուսուցչապետին՝ որ նոյնը Փարիզի Ecole des langes orientales vivantes ուսումնարանի մատենադարանէն առնելով ուղարկեց մեզ ի գործածութիւն։ — Փարէզ լրագրոյ 1863, Թ. 97ի մէջ եղած Հայ լրագրաց ցուցակն՝ անշուշտ ասոր թարգմանութիւնն է։

տալով իբրեւ Հովիւ տեղւոյն՝ 1789ին տպարան մը կը բանայ,[1] ուր հետզհետէ կը տպագրուին «զանազան տետրակք, պատմութիւնք, բարոյական առասպելութիւնք, գիրք Պորփիւրի եւայլն, եւայլն:»[2] Այն տպարանին յարատեւ գործ մը գտնելու եւ միւս կողմանէ ազգին ընթերցանութեան օգտակար հրատարակութիւններ տալու նպատակաւ՝ Տէր Յար. Շմաւոնեան 1794 Օգոստ. 7/19ին[3] Յայտարարութիւն մը հանեց «Բարեպաշտ Պարոնաց եւ Մաքրակենցաղ Տիկնաց Մադրասիս Հայոց:[4]» Այս Յայտարարութեան վերջը կը ծանուցուէր, որ եթէ բաւական ստորագրուող գտնուի՝ պիտի սկսի հրատարակութիւնը: Նոյն 1794 տարին[5] Թիրայ

---

[1] Տպարանի տառերն ինքնին փորագրած եւ ձուլած էր, ինչպէս նաեւ շարողն ու տպողն ինքն էր ի սկզբան: Տես Մաքքէնզէ [illegible], Մադրաս, Տպ. Յարութիւն քհնյի. որդւոյ Շմաւօն Շիրազեցւոյ, 1789—90. Յիշատակարան:

[2] Ազդարար, 1795, էջ 372:

[3] Վերն էջ 25՝ Մանկավարժանոցի (1887, Թ. 1) մէջ Ս. Գուլամիրեանցի գրած տեղեկութեանց վստահելով՝ «Մայիս 20» դրած էինք Յայտարարութեանս հրատարակութիւնը, իսկ թերթին Յուլիսին հրատարակուած կը դնէինք, եւ հետեւաբար կը յանձնէինք Հայ լրագրութեան Հարիւրամեայ Յոբելեանը տօնել 1894 Մայիս 20ին: Այժմ որ թերթը մեր ձեռքն ունինք, կը տեսնենք՝ որ Նոր Ջուղայի յատուկ Ազարիայի թուականը կը գործածէ Ազդարարը. հետեւաբար «ի Ղամար ամսոյ 20» հրատարակեալ Յայտարարութիւնը մեր Օգոստ. 7/19 է. իսկ թերթին առաջին թիւը «Թիրայ ամսոյ 30»ին հրատարակուած է, որ է մեր Հոկտ. 16/28, հետեւաբար մեր առաջարկած Յոբելեանը կատարելի է 1894 Հոկտ. 16/28ին:

[4] Տես զայս վերն էջ 24, սկսելու է՝ «Նկատելով իմով եթէ . . .:»

[5] Ա. Երիցեանց (Հայ պարբերական հրատարակութիւնները, Արշոֆան, 1882, էջ 328) սխալմամբ կը դնէ

ամսոյ 30ին, որ է Հոկտ. 16/28, լոյս տեսաւ առաջին տետրակը՝ 25 թուղթ (16×19 սանդ.)։

Թերթին սկիզբն է "ԱԶԴԱՐԱՐ Թիրայ ամսոյ, 1794," որուն տակ վերոյիշեալ Ցայտարարութիւնը վերստին կը տպագրուի[1] յաւելուածով՝ թէ "Ձեռնփդրօղք թղթոյս 28 Հոգիք," այսինքն թէ Ցայտարարութեամբ 28 Հոգի թերթին բաժանորդ գրուած են։ Ասոր կը յաջորդէ "Առաջաբանութիւն," ուր ի մէջ այլոց կ'ըսուի՝

"...Քանզի բարեկարգ անգլիացիք քաղաքիս մի ամսով յառաջ քան զայս սկսեցին տպագրել տետրակ մի, ի վաղճանի ամսոյ իբրեւ զմերս, եւ որպէս ծանեայ ոչ այլ ինչ գոյ ի նմայ՝ եթէ ոչ զվարս համբաւաւոր արանց՝ յազգէ իւրեանց, պատմութիւն իրաց ինչ, որպիսութիւն գործոց, եւ արժանաւոր գրուածք ոմանց... եւ յաւարտ տետրակին առ ի քաղցրացուցանելոյ զգործս իւրեանց Հասարակութեան, տպագրեն զգինս զանազան վաճառելի իրաց աստ եւ գումարսն նաւաեկութեան եւ նաւագնացութեան։ Առնելով զայս տետրակ ինձ օրինակ՝ եւ ես առաջադրեցի այսպէս նախ տպագրել յայսմ

---

Ազդարարի Հրատարակութիւնն՝ ի Կալկաթա 1795։ — Գր. Վ. Ալէաթճեան 1862ին Ազդարարի Ա. Տարին ի Կ.Պոլիս Մ. Միքայէլ Աղայի քով տեսած է։ Տես Պէգտաշեան Բուշնէլ, 1863, Թ. 1։

[1] Տես այս երեսը կիսով չափ փոքրկացուած գործոյս սկիզբը լուսատիպ դրուած։

զխրատական բանք ինչ, կամ թարգմանեալք յայլոց ազգաց (որ եւ ուրախակիցք իմ երիտասարդք տեղւոյս խոստացան օգնել ինձ) եւ կամ հատորք ինչ հանեալ ի գրեանց մերոց, նա եւ ջանալ առ ձեռս ունել զլուրս ինչ ի տանէ հայոց եւ պարսից զայնպիսի որ ·չիցէ ձեր լուեալ, եւ ի զանազան տեղւոյ կազէթաց այնպիսի լուր զոր հարկաւոր է մնալ, եւ բազմաց ուրախ առնել (յեւանալով ի մանրամասն լրոց նոյն գազէթաց որք ոչ են հարկաւոր երբէք, եւ կամ զոմանս լսելոց էք յառաջ քան զժամանակ տետրակիս, զոր յետ լսելոյ ձեր կրկին ընթեռնլոց աստ ոչ է թուելոց ձեզ քաղցր եւ ընդունայն է լինելոց զաշխատանս գրողաց) նաեւ զարժանաւորութիւն նոյն աւուր ամենայն վաճառելի իրաց՝ զի եւ այս է օգնական լինելոց վաճառականաց, եւ առաջիկայ ամսուն զօրացուցն յայտնելով զտօնս սրբոց՝ զթիւս լուսնոյ զպահս, զհանդիսաւոր աւուրքն, թէ ի անգլիացիս, եւ թէ այլոց ազգաց՝ իւրաքանչիւրոց յատկութեամբ դնել առաջի ձեր նա եւ եթէ իցէ կարելի զհամարս նաւագնացութեան եւ այլոց...: Գոլով զտետրակս զայս նորոգ ոգուածք եւ յամարձակիմ ասել ամենայնիւ նոր յայսմիկ դարու ընթերցողք չպարտին որոնել քանոնիւ իմաստութեան զսղալանս ձեռնարկութեամբ, քանզի խոստովանիմ յայտնապէս զի ո՛չ ես եւ ոչ օգնականք իմ ոչ են հմուտ իսկապէս քերթութեան արհեստի եւ ոչ բուն յմուտ գրոց...:

Ցաղագս այսորիկ Հայցեմ արժանի առնել յու-ղարկելով որոց լուր, ախորժ շարադրութիւնք, ոտանաւորք, եւ որոց գրուածք որ իցէ պիտանի եւ Հաճելի Հասարակութեան, խոստանամ տպել զայն ամենայն (որ չիցէ ներպատեՀ գրուած) որ-քան զկարս իմ խոստանայ առ ի պարծանս շա-րադրողաց եւ երջանկութիւն ազգին մերոյ:„

Աստ կը յաջորդեն՝

Տեսիլք Միրզային, նշանակիչ բնութեան Մարդկային կենաց:

Թարգմանութիւն գրոյ միոյ գրեալ Պարոն Շամիր Սուլթանումեանէ առ մեծ բժիշկն քա-ղաքիս Պարոն ջիմս Անդրասն (որ կը գրէ Հայոց ծագման վրայ ծանօթ տեղեկութիւններ):

Արղութեան Յովս. Արքեպիսկոպոսի թուղթ առ Հնդկահայս գրեալ “1793 Յունիսի 20 ի Սանկթպետրբուրղ,„ որ 1791ին Տաճկաց եւ Ռուսաց պատերազմները եւ Հայոց անցքերը եւն. կը պատմէ:

Ուրիշ թուղթ մ՚ալ նոյն անձէ:

Կատարինէ կայսրուհւոյն Գրիգորիպոլ քա-ղաքին շինութեան Համար տուած Հրովարտակն յամին 1792 փետր. 23, եւ նոյն քաղաքին Հիմնարկութեան, օծման եւ Հանդիսութեանց ստորագրութիւնը Արղութեան Արքեպիսկոպոսէ:

Նամակ մը եւ քերթուած մը:

Ծանուցում մ՚աշխարՀաբար լեզուաւ:

Տօնացոյց առաջիկայ ամսոյ:

Այս տետրակին մէջ Հայոց, Արղութեանց Արքեպ. ի եւ կատարինէ կայսրուհւոյն զինանշանները կան։

Երկրորդ տետրակին մէջ կան թարգմանական պատմութիւններ, եւ առածներ, նամակ, քերթուած, գաղղիական յեղափոխութեան լուր, լրագիրներէ եւ առանձնական նամակներէ քաղուած լուր, վաճառաց ընթացք, տօնացոյց։ Այս տետրակին մէջ կայ մտադրութեան արժանի խմբագրական ազդ մը՝ թէ խմբագրութիւնը եկեղեցւոյ զանգակատան տակ.գանձանակի ձեւով արկղ մը հաստատած է, ուր կարող է ամենայն ոք Ազդ՟ր՟ի մէջ հրատարակուելի լուր եւ յօդուածներ ձգել։ “Մեք բանալոց եմք, կ'ըսուի, զսնդուկն ամենայն աւուր եւ զոր ինչ գտանիցեմք անդ գրեցեալք յուղարկելոց եմք վաղվաղակի առ ի վեր կարգեցեալք վերակացուս որպէս զի նոքայ վերահասու լեալ գրուածոյն զոր ինչ ի նոցանէ հարմար վարկցին առաքեսցեն ի տպարանն զի տպեսցուք։„

Յաջորդ տետրներու բովանդակութիւնը նոյնպիսի է։

Այս 1794 տարին չորս տետր հրատարակուած է՝ 21—28 թղթէ բաղկացեալ։ Չորրորդ տետրին վերջը քերթուած մը կարմիր գունով տպուած է. նոյնպէս 1795ի վերջը։ 1795ին նոյն ընթացքով շարունակուած է եւ 12 տետր հրատարակուած է՝ 24—36 թղթէ բաղկա-

ցեալ։ Սոյն տարւոյ 253 եւ 254 էջերու մէջ կայ Մադրասի խանին պարսկերէն հրովարտակին վիմատիպ պատճէնը. խանը թոյլ կու տայ Շմաւոնեանին նաեւ պարսկերէն եւ արաբերէն գրքեր տպելու։ 1795ի յօդուածներուն մէջ մտադրութեան արժանի է Խաչատուր աբեղայի Նոր Ջուղայեցւոյ գրած Պարսից պատմութիւնը՝ որ Պարսկահայ եւ Հնդկահայ գաղթականութեան պատմութենէն շատ տեղեկութիւններ կը բովանդակէ, եւ ի մասնաւորի Նոր Ջուղայի Հայոց եւ Ամենափրկչի վանաց վրայ։ Նոյնպէս շատ կարեւոր է մեր հին մատենագրութեամբ զբաղողներու համար՝ նախնեաց հեղինակած եւ թարգմանած գրեանց ցանկը,[1] զոր անշուշտ գրողն ինքնին կազմած է առջեւը ձեռագիրներ ունենալով։ Այս ցուցակը կը դնենք այստեղ անփոփոխ.

Նախապէս պատմութիւնք

1 Ագաթանգեղոսի զոր վասն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին Հօրն մերոյ, եւ Տրդատայ Թագաւորին, 'ի ժամանակս նոցա զեղեալս պատմէ։

2 Մեսրօպ Երէցն պատմէ վն Սբյն Ներսեսի Հայրապետին։

3 Մովսէս Խորենացին չորս հատոր յաղագամայ

[1] Ընդ., 1795, էջ 188—192։ — Հ. Գարեգին Զ. իւր Հայկական հին Դպրութիւն (Վենետիկ, 1886) աշխատասիրութեան մէջ յիշատակած է այս գործքը՝ "տեղ մը, կը յիշատակուի, յետին դարուց նորագոյն յիշատակագիր մը", եւ այլն ըսելով (Համտ. էջ 278, 446, 485 եւ այլն)։ Այս ցուցակին մէջ կը յիշուին խնդրոյ նիւթ եղած եւ այսօր կորուսեալ մատենագրութիւններ։ Ցուցակագիրն Հ. Զամչեանի Պատմութենէն չէ առած այս ցուցակը։

մինչեւ զենոն կայսր որպէս վկայէ Թովմաս արծրունեաց պատմագիրք, բայց այժմ զերիս հատորս միայն տեսանեմք:

4 Կորիւն Թարգմանիչ որէ պատմութիւն Սրբոյն Մեսրոպայ Հայրապետին:

5 Խոսրով Թարգմանիչ որէ պատմութիւն Սբյն Սահակայ Հայրապետին:

6 Եղիշէ վարդապետ որէ պատմութիւն Սրբոց Ղեւոնդեանց, եւ Վարդանանց:

7 Ղազար Փարպեցի ճարտասան պատմագիրք՝ 'ի մահուանէ Սրբոյն Սահակայ մինչի Զենոնի կայսերն:

8 Բիւզանդ որ զեղեալ իրս պատմէ՝ Հայոց աշխարհիս, իբր զմնացորդս Նախկին պատմագրաց, հատորս վեց:

9 Զենոբ պատմագիրք որէ պատմութիւնն Տարօնայ, Սուրբ Կարապետին, եւ յաղթութիւնք իշխանացն տարօնայ որ առ Խոսրով պարսից արքայն:

10 Հերակլ յեւսեբիոսէ եպիսկոպոսէ՝ ասացեալ ասկս պատերազմացն Հերակլի եւ Խոսրովու, եւ այլ բանք պիտանիք:

11 Անանիայ շիրակացին սկիզբ արարեալ յադամայ համառօտ գաւազանաւ իջանէ՝ մինչեւ 'ի ժամանակս Անաստասայ Կաթուղիկոսին:

12 Ղեւոնդ պատմագիրք որէ պատմութիւն անօրէն ազգի չարի:

13 Շապուհ պատմութի՜ որէ գիրք Սբյն Սմբատայ ստրատելատին. եւ այլ սուրբ նահատակացն թուին հայոց ԳՃԲ:

14 Յովհաննէս Կաթուղիկոս ազգական սրբոյն Մաշտոցի սկսեալ յադամայ մինչեւ 'ի թիւն ԳՃԿ 'ի կատարումն սմբատայ թագաւորին:

15 Մովսէս կօշան կտուեցի որէ 3 հատոր աղուանից պատմութի՜:

16 Ուխտանէս որէ պատմութիւն բաժանման վրաց եւ հայոց:

17 Թովմաս պատմագիր որէ Բ հատոր պատմութի՜ արծրունեաց սկսեալ 'ի Նոյէ մինչեւ 'ի կաթուղիկոսութիւնն ախթամարայ:

18 Ստեփանոս տարոնեցի որ եւ կոչի ասողիկ Գ հատոր, սկսեալ Յաբրահամէ մինչեւ 'ի մահն Գրիգորի Նարեկացւոյն 'ի ՌՃԾԲ թուականին:

19 Արիստակէս լուստրովարդացի սկսեալ 'ի

ԴՃԾԲ թուականին մինչև ԵՃԼ թուին ողբերգական դիմօք։

20 Յոհան կոզեռն արարար 'ի ժամանակս իւր զոր ինչ եղեւ։

21 Յոհան տարօնեցին՝ որէ պատմութիւն բագրատունեաց։

22 Սարկաւագ վարդապետն սուրբն Յոհաննէս արար յեկեղեցական պատմագիրք։

23 Մատթէոս ուռահեցի պատմութիւն աւերման աշխարհիս հայոց՝ սկսեալ 'ի ԴՃԼ թուէն մինչև ՋՃ թուականն։

24 Սամուէլ երէց արար զքնիկոն գաւազանագիրքն։

25 Մխիթար անեցի որէ պատմութիւնն Անւոյ քաղաքին, եւ այլ ինչ բանք պիտանիք։

26 Ներսէս շնորհալւոյն որք վիպասանական վասն նախնեացն եւ վասն առմանն ուրհայոյ, եւ երուսաղէմի։

27 Վահրամայ որդւոյ տիգրանայ, եւ որք զկնի բանից Սրբոյն Ներսեսի՝ 'ի նոյն ոճս առեալ սակս դանն առուբենեանց։

28 Սմբատ պատմագիրքն եւս վն թագաւորութեա ռուբեննեանց։

29 Մխիթար գօշն արար պատմութին պիտանի սակս հեւուածողաց։

30 Յոհաննէս վանականն որ ինչ 'ի ժամանակս իւրոյ եղեալէր սակս թաթարացն։

31 Կիրակոս պատմագիրք՝ եւս վասն ազգին թաթարաց եւ այլոց պիտանեաց բանից։

32 Գրիգոր պատմագիրք, եւս վասն թաթարաց՝ մինչեւ 'ի ժամանակս Կոստանդնու մեծին կաթուղիկոսին։

33 Վարդան վարդապետն սկսեալ յադամայ մինչեւ ԸՃԺԵ թուին։

34 Ստեփաննոս սիւնեցին՝ որէ պատմութիւն, եւ կոչի տաթեւու կոնդակ։

35 Մխիթար այրի վանեցի՝ համառօտ գաւազանաւ մինչև ԸՃԿ թուին։

36 Թովմաս մեծօփեցի՝ աշակերտ Սրբոյն Գրիգորի տաթեւացւոյն երկու հատոր պատմութի վն թամուր կաղին, եւ չարախաղաց նորին, եւ միւսն վասն նորոգութեան կաթուղիկութեանց Սրբոյ Էջմիածնին։

37 Առաքել Դավրէժեցին՝ պատմութիւն պարսից թագաւորաց եւ գերութեանն Հայոց, եւ վարք կաթողիկոսացն։

38 Զաքէոս պատմագիրք երկու հատոր, սկսեալ 'ի բանիցն զկնի առաքելի պատմագրին, մինչի ՌՃԾ թիւն։

39 Տէր Յովսէփ Ջուղայեցւոյն պատմագիրք՝ որ կոչի քնիկոն, յաղամայ մինչի 'ի ՌԲՃ թիւն, յորս գոն զանազան ասութիւնք 'ի վերայ ածպյնոց արանց. եւ պատմութիւնք Հայոց իշխանաց եւ թագաւորաց. եւ վն ա͞մ անցիցն անցելոց զոր տեսողացն է յայտնի։

40 Խաչատուր Վարդապետէ պատմագիրք՝ վասն բռնակալութեցն պարսից, եւ թագաւորացն նեստողաց. եւ վասն ժառանգութեցն Հայոց, եւ նահանգաց նոցին, այլեւ գետոց, եւ լերանց Բ հատորս արարեալէ՝ վասն անցելոցն, եւ ներկայիցն, զոր ունի պարաւանդեալս յինքեան, զբազում եւ զզանազան պատմութիւնս։

41 Յակոբ Շամիրեանէ Ջուղաեցւոյ՝ պատմագիրք յորջորակ կոչեցեալ, յորս գոն պատմութիւնք, յաղամայ մինչեւ 'ի ՌՃՄԻԱ թիւն,, վասն հնայից թագաւորաց, եւ իշխանաց, եւ մանաւանդ վասն ժառանգութեանցն Հայոց, եւ բնակութեց նոցայ, աշխարհագրութիք, լերանց եւ դաշտաց՝, եւ գետոց։... Եւ զինչ առացից սակս պատմութեցն այնոքիկ որք 'ի մերմէ բանասիրաց թարգմանեցելք գոն յալոց լեզուաց 'ի մեր լեզուս։

1 Յովսէփոս 'ի յունաց լեզուէ եղեւ թարգմանեցեալ, սկսեալ յետ Մակաբայեցւոց մինչի 'ի ԽԹ ամ Քի, վն կործանման հրէից եւ քակման տաճարին, ԻԸ հատորք։

2 Երանոսի հետեւողի առաքելոցն, 'ի յունաց լեզուէ սակս առաքելոցն գործոց, եւ վասն բանից հերձուածողացն։

3 Եւսեբի պատմագիրք եկլէսիաստիկոյ՝ Գ հատոր. առաջին սկսեալ յաղամայ մինչեւ 'ի Քն. երկրորդն 'ի Քէ մինչեւ 'ի մեծն կոստանդիանոս, եւ երրորդն վարք Ս͞րն Կոստանդիանոսի թագաւորին, գիրքս այս թարգմանեցեցեալ եղեւ 'ի յունական լեզուէ։

4 Աթանաս Հայրապետն զվարս միանձանց, եւ խոստովանութիւն զուղղափառաց թարգմանեցեալէ 'ի Ղպտոց լեզուէ։

5 Եպիփան Կիպրացի՝ Բ գիրք 'ի յունաց լեզուէ՝ Ա պատմութի Նախահարց, եւ մարգարէից, եւ Բ բացայայտութիւն բանից՝ ութսուն հերձուածողաց, որք երեւեցան մինչեւ 'ի ժամանակս իւր։

6 Արեւելեան վկայիցն պատմութիւնք՝ զոր թարգմանեցաւ սրբոյն Յաբրհամու խոստովանողէ մինչ բանդարկեալ կայր 'ի պարսիկս սակս խոստովանութեան Սրբոյ հաւատոյ 'ի պարսից լեզուէ։

7 Սոկրատ սկսեալ 'ի կոստանդիանոսէ մինչեւ ցմահն Թէոդոսի փոքու հատորս է եւ զայս եւս յունաց լեզուէ թարգմանեցաւ զոր համառօտեցաւ վասն խնդրոյ Ներսեհի իշխանին 'ի ժամանակս Կաթուղիկոսութեան Անաստասայ, եւ այժմ զերկուսն միայն երեւի զոր ասեն մեծ սոկրատ, եւ փոքր սոկրատ, զայս է գիրքն եւս 'ի թարգմանչացն եղեւ թարգմանեցեալ։

8 Պատմութիւնք Սրբոյն Յոհաննու Ոսկեբերանին այսինքն վարքն եւ կեանքն նորին 'ի ծննդնէ մինչեւ 'ի մահն, 'ի Սրբոյն Գրիգորէ վկայասիրէ թարգմանեցեալ եղեւ 'ի յունաց լեզուէ։

9 Պատմագիրք Սբ Ժողովոյն Եփեսոսի. եւ Քաղկեդոնինա եւ ամ թուղթք, որպէս որ 'ի նոսա ընթերցան՝ եւ թարգմանեալ եղեւ. 'ի լատինացւոց լեզուէ ձեռամբ Գէորգեայ կոստանդնու պօլսեցւոյ 'ի ժամանակս ՌՃԿ թուականութեանն հայոց։

10 Պատմութիւն Սրբոց Հայրապետացն, եւ վկայից որ այժմ ճառընտիր կոչի այլ եւ այլ լեզուէ թարգմանեալ եղեւ 'ի ձեռն բազմաց բանասիրաց, իսկ յետոյ Սբ Հայրն Սողոմոն՝ մատենգրեց հաւաքելով 'ի մի տուփ եւ անուանեց տօնական որէ յայսմ աւուրք։

11 Հարցումն Գրիգորի Պապուն Հռոմայ՝ որէ Դ հատոր պատմութի միանձանց թարգմանեցել եղեւ ձեռամբ Ներսէսի լամբրօնացւոյ։

12 Միխայէլ պատմագիրք յասորոց՝ թարգմանեալ եղեւ՝ հրամանաւ Կոստանդի մեծի Կաթուղիկոսի։

13 Վիրք պատմութիւնն եղեւ թարգմանեցեալ 'ի վրաց յազգամայ մինչեւ 'ի ՉՃ թիւն հայոց։

14 Գաւապանագիրք լատինացւոց՝ որք են պատմութիւք յունաց եւ լատինացւոց կայսերաց 'ի ժամանակս ռուբէննեան։

15 Վէմ գայթակղութեանն Բ հատոր, առաջին պատմէ զպատառումն եկեղեցեաց արեւելականի, եւ

արեւմտականի, եւ երկրորդն պատմէ զխաւարութիւն փափիցն ընդ Թագաւորացն գալլիացւոց. եւ այլոցն եւրոպէականաց, ԽԳ գլխով, եւ Է յօդուածովք բաժանեցեալ 'ի յունական լեզուէ։

16 Պատմութիւնք Սինէացւոց թարգմանեալ 'ի Մարգարէ Շահրիմանցւոյ նոր Ջուղայու, լեզուէ յանկլիականէ 'ի հայս ԻԴ գլխով որպիսութիւն քաղաքաց, վարուց նոցա, եւ պետութեանց կառավարմանց նոցա, ելից եւ մտից բնական օրինաց, եւ քաղաքական աւանդութեց նոցա, եւ բնաւորութեանց. եւ կայսերականանցն պերճութեանց. 'ի ՌՄԽԲ թուին հայոց։

17 Պատմագիրք Նադիր շահին թարգմանեալէ ի Պօղոսէ միրզայեան համիթեցւոյ 'ի յանգլիացւոց լեզուէ 'ի հայս։

18 Պատմագիրք ինչ՝ Չամչեանց Միքայէլէ Պօլսեցւոյ, յադամայ մինչեւ 'ի ՌՄԼԵ թիւն գիրք երեք, եւ 6 հատոր, զոր ճշմարտութիւնն յայտնէ բազում տեղիս։

Բայց որովհետեւ գիրն յազգիս մերոյ իբր սեագոյլ երեւի, ոմն պատմագիրն տեսակ համաթուի, վասն որոյ զոման զանյայտս յիշել մարթ վարկայ՝ վասն ծանօթութեանց եւ խնդրոց ոմանց։

Ազդարարի 1796 տարին չենք տեսած, բայց Արժ. Տ. Յ. Մկըրեանի ամբողջական օրինակէն կ'իմանանք, որ այս տարին՝ միայն երկու ամսաթերթ հրատարակուած է, այն է Ովդան եւ Նիրհան ամիսները, որ է մեր Յունուար եւ Փետրուար։ Ուրեմն Ազդարար 1794—6 միայն 18 ամսաթերթ ունեցած է։ Կ'երեւայ թէ ծերունի խմբագիրն այս միջոցին վախճանած է, վասն զի այս ժամանակէն ետեւ իր տպարանէն գիրք չէ հրատարակուած։

Կրնանք իրաւամբ Ազդարարը Հնդկահայոց գործին անուանել. վասն զի գրեթէ ամէն տե-

որի մէջ կան ազգային տեղական լուր,[1] Ամուսնութեան, մահու եւ ծննդեան տեղեկութիւններ,[2] եւ որ զարմանալին է՝ կան ազգային վաճառականներու ծանուցումներ (annonces),[3] ոմանք գրաբար եւ ոմանք աշխարհաբար։ Թէեւ թերթին լեզուն գրաբար է, սակայն կան նաեւ քանի մը աշխարհաբար թղթակցութիւններ եւ յօդուածներ։[4] Ճաշակ մը տալու համար յառաջ կը բերենք կտոր մը.[5]

«Շատ ժամանակայ ես ազգարարն կարդալով ցանկամանի էս էլ մին բան գրեմ, բան չի գտաման, էս անհասարակ պատահմունքն արժան համարեցի գրել, եւ իմ ցանկութիւնն կատարել խնդրեմ եթէ ժամանակ ունենաս՝ տաս վերակացուացն որ սրբագրին, եւ գրոց լեզուաւ գրեն, թէ ոչ՝ էսպէս տպիր հասարակութիւնն իմանայ ում գրածնայ՝ կնէրի աշխարհաբար գրելէս, վասն որ իմ կենօք մին սաղմոսից էլ ոչինչ յաւել չեմ կարդացել, եւ էս էլ ողջ իմ մտկի հնարածն չի, • թէ ոչ էս էլ կզարմանի իմ գիտութեան վերայ։»

Տէր Յար. Շմաւօնեան խմբագրելու մէջ ընդունակութիւն կը ցուցընէ. զոր օրինակ՝ Ղզլար քաղաքին ստորագրութիւնը գրողին կը պատաս-

[1] Այսպէս՝ 1794 էջ 181, 183, 1795 էջ 48, 49, 80, 82, 94—5, 151, 211, 258, 455, 503։

[2] Այսպէս՝ 1794 էջ 91, 137, 149, 1795 էջ 40, 103, 152, 221, 314, 442, 495, 503, 551, 664։

[3] Այսպէս՝ 1794 էջ 47, 89, 133, 139, 1795 էջ 48, 86, 146, 150, 210, 213, 269, 325, 381, 425, 442, 455, 490, 546, 602, 606, 661։

[4] Այսպէս՝ 1794 էջ 184, 1795 էջ 23, 36, 83—4, 203—4, 602, 606, 661։

[5] 1794, էջ 184։ Նոյնպէս աշխարհաբար՝ 1795 էջ 23, 36, 83—4, 203—4, 602, 606, 661։

խանէ.[1] “ Յուսամք զի ներեսցէ մեզ գրողն պատմութեան եւ ուպխութեան ըզլար քաղաքին զի թէ եւ եգիտ զայն զհաճութիւն վերակացուածն այլ որով հետեւ զկարգ խօսից ազդարարիս այժմ չէ 'ի վերա քաղաքաց վասն այնորիկ պահեցաք զայն այսուհետեւ եթէ հանդիպեսցի ժամանակ հարմար տպելոց եմք եւ զայն:„ Նոյնպէս հրատարակութեան համար ըրկուած թարգմանութեան մը համար կ'ըսէ.[2] “ Զմասն թարգմանութեանդ տեսի, եւ հաւանեցայ, եւ ցուցի երիտասարդաց ընկերակցաց քոց որք խնդացին միաբան, որոյ վասն զայս քեզ ծանուցանել փութամ: Նախ որով հետեւ իբրեւ պատմութիւն է թարգմանութիւնդ, եւ այսօր ազդարարն մեր ունի երկուս պատմութիւնս աւարտելոյ՝ արտաքոյ է մերոց սահմանադրութեանց կրկին մուծանել այնպիսի բանք: երկրորդ որով հետեւ դեռ չէ աւարտեալ զթարգմանութիւնդ, կասկածին վերակացուք ազդարարին, քանզի մինչ ոչ տեսանիցեն զկատարած իրի իմիք՝ ոչ ձեռնարկել առաջադրեցին իսկզբանէ: Երրորդ հարկաւորէ զգիրն բովանդակ առաջի մեր լինիլն, զի բաժանեսցուք չափաւորապէս, զի մի 'ի միում յաւելի լինիցի, եւ 'ի միւսում պակաս, եւ կամ ոչ աւարտիցի յընթացս տարոյն: զայսոսիկ ըստ կարգադրութեան մերոյ:„

---

[1] Անդ, 1794, էջ 76:
[2] Անդ, 1795, էջ 377—8:

Ուրախ ենք որ մեր անդրանիկ լրագիրը այնպէս կանոնաւոր եւ լաւ կը խմբագրուէր։

Էջ 26, ծան. 2ի վերջը յաւել՝ "Ցանկ ընդհանուր գրոց տպագրելոց ի Վենետիկ, 1810„ կը դնէ Ցուրեներ—Բինէն հրատարակեալ 1799—1802։

Էջ 30, տող 12 յաւել՝ Ցիշատակարանը միայն մէկ տարի հրատարակուեցաւ։ "Ցանկ ընդհ. գրոց տպագրելոց ի Վենետիկ, 1810„ էջ 21 կ'ըսէ. "Ցիշատակարան, Ասոր մէջը աշխարհաբառ լեզուաւ կպատմըվին եւրոպիի պատմութիւններ, ու պատերազմունքներ, որ հանդիպեցան Փրէնկիստան 1807 տարւոյն մէջը, տպեալ յամին 1807։„

Էջ 37, ծան. 2, տող 5, 1847 կարդա 1840։

Էջ 46, տող 14, ժաաանակակից կարդա ժամանակակից։

Էջ 51, տող 17, յաւել. Ղ. Պալղազարեան վախճանեցաւ 1878 Մայիս 28ին[1] եւ սոյն ազգային խմբագրին յուղարկաւորութիւնը կատարուեցաւ մեծ փառաւորութեամբ՝ պետական եւ եւրոպական պաշտօնական մարմնոց մասնակցութեամբ։

Տ. Հ. Թ. Սաւալանեան Ղ. Պալղազարեանի

---

[1] Մասիս 1878, Թ. 2135։

յաջորդեց իբրեւ խմբագիր Արշալուսոյ:[1] Այս օրէն սկսաւ Արշալուսոյ եւ Մամուրեան-Մուրատեան կուսակցութեան կռիւները:[2]

Սաւալանեանին յաջորդն եղած կ'երեւայ Գ. Պալդազարեանի որդին:[3]

Էջ 55, տող 1էն յառաջ յաւել՝ Իզմիրի Հայոց ամուսնութեան սովորութիւններն, **1847**, թ. 298:

Էջ 55, տող 5 յաւել՝ Ամսագրատամբ Հայոց եկեղեցւոյն շինութեան հանգամանակութեան շրջաբերականը յամէ 1714, **1851**, 400:

Էջ 55, տող 7, Ն. Շնորհալւոյ հանելուկք, **1857**, 572:

Էջ 55, տող 8 յաւել ի վերջոյ՝ 650:

Ազգային հնութիւն: Ցաղագս Հայոց զՍբ. Աստուածն խաչեցարիւ ասելոյ (ի հին ձեռագրէ) **1861**, թ. 652:

Էջ 55, տող 19, **1887** կարդա՛ **1867**:

„ 61, „ 12, փռածալ կարդա՛ ուռածալ:

Էջ 61, տող 25, «եւ կը շարունակուի այսպէս մինչեւ ցայսօր» ջնջէ եւ յաւել՝ 1889ին եռամսեայ տետրն փոխանակ մի անգամէն հրատարակելու՝ իւրաքանչիւր ամիս 2 թերթ եռ-

---

[1] Մասիս 1878, թ. 2151:

[2] Մասիս 1879, թ. 2235: Արեւելեան Մամուլ, 1878, էջ 90, 152, եւն.:

[3] Արձագանք, 1882, էջ 329:

ամսեայ տետրէն կ'ուղարկուէր։ Նոյն տարին Ապրիլէն սկսելով եղաւ ամսաթերթ, իւրաքանչիւր ամսատետրն 2—3 թերթէ բաղկացեալ, եւ այսպէս կը շարունակուի մինչեւ ցայսօր։ 1892ին Բազմավէպ իւր 50ամեայն բոլորեց, եւ թէեւ Յոբելինի պատրաստութիւնք տեսնուեցան, սակայն թերթն ինքնին չտօնեց (Տես Բազմավէպ, 1892 էջ 95, 555)։

*Էջ 76, տող 15* յաւել՝ 1888 էջ 31, 118, 217, 313։

## 1888

Հրատարակութիւնք ազգային տպարանաց յընթացս 1887 տարւոյ. 5։ — Ս. Յակոբ Մծբնայ. 8։ - Քննադատութիւն Ադոլֆ Բաումգարտների Մ. Խորենացւոյ Պիտոյից գրոց վրայ. 20, 203, 289, 323։ — Աստուածաշունչ գիրք. 97, 193, 1889. 104, 134։ — Արճէշ գետ, քաղաք եւ եկեղեցի ի Ռումենիա. 211։ — Առաջին դարադարձ կամ 100ամեակ Մխիթարեան տպագրատան. 329։

## 1889

Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքն, Ներածութիւն, էջ 6։ — Եզնիկ եւ իւր երկասիրութիւնն. 14, 108, 199, 313, 385։ — Տեսութիւն տառադարձութեան խնդրոյն եւ Հայերէն Նշանագրոց վրայ. 21, 97, 129, 161։ — Թէոդոսիոյ Նորաշէն ջրմուղին բացման առթիւ. 43, 113, 181։ — Հին քնար. Տաղ ի յարութիւն Տեառն. 110։ Ի սուրբ խաչն. 143։ Ի Սբ. Աստուածածին. 171։ Տաղ ի Ս. Հոգին. 234։ Տաղ փոխման Աստուածածնին. 235։ — Լուծումն բանաքաղութեան Կորեան կամ Ագաթանգեղոսի, հանդերձ վաւերաբանութեամբ ընդարձակ պատմութեան Ս. Մեսրովբայ. 193, 225։ — Նախկին ազգային սովորութիւնք Հարսանեաց. 282։ — Ճանապարհորդութիւն ի Մեծն Մասիս. 257, 361. — Կենդանիք Կիլիկիոյ աշխարհին. 265։ — Տն. Ներսիսի

## 1890



## 1891

## 1892



## 1893

*Էջ 83, տող 8* ընկե– կարդա՝ ընկե–

*Էջ 88, վերջին տողը* յաւել՝ Աշխատէէ մեր ձեռքն անցած Թուրքերէն յառաջ կը բերենք հետեւեալները՝ Գրագիտութիւն Նոր Ջուղայոյ **1845** էջ 13, 30, 64, 94։ Նորութիւնք ի հնութեանց (ձեռագիր Պիւրղ. Աղեքս.. Գիրք պարապմանց) էջ 116, 127։

*Էջ 95, ծան. 1* Յաւել՝ Այս Յաւելուածն, որչափ գիտենք, երկու անգամ. միայն հրատարակեցաւ։ Դիրքն Հայաստանի չափ է. վրան կը կարդանք՝ "Առաջին տարի. վեցամսեայ կրօնական յաւելուած Հայաստան լրագրոյն. 1846ի Յուլիս 1էն մինչեւ 1847ի Յունվար 1ը։„ Կը բովանդակէր Եւրոպայի եւ Ամերիկայի մէջ հանդիպած դէպքեր, կրօնական խրատեր եւ Լուտերի դէմ գրութիւններ։

*Էջ 100, տող 21* յաւել իբրեւ ծան. 2. Արդէն 1846ին Նոյ. 24 գրեթէ նոյն դիրքով "Եւրոպա, շաբաթական լրեր„ անուամբ թերթ մը հրատարակեց Վիեննայի Մխիթարեան Միաբանութիւնը, իբր "Թիւ 1, 1. Տարի„ որուն բովանդակութիւնը բուն Եւրոպայի նման էր։ Կ'երեւայ թէ այս թերթն հրապարակ չէ ելած, վասն զի նոյնին շարուածքին վերջին մասերը "փորձի համար„ հրատարակուած Եւրոպային գործածուած է։

*Էջ 109, տող 5* անհրաժեշտ կարդա՝ անհրաժեշտ։

*Էջ 109, տող 18* «անաւանդ կարդա՛ ժամանակաւանդ։

*Էջ 119, տող 8* յաւել՝ Ցիշատակարանաց օգուտը, **1852**, թ. 60, 61։ Հին տարեգրութիւն (1712—) թ. 68—74։

*Էջ 125, տող 20* 1889 կարդա 1893։
*„ 128, „ 16* յաւել՝ 1892ի սկիզբը Մասիս երեք շաբաթն անգամ մը սկսաւ հրատարակուիլ խմբագրապետութեամբ Գր. Ջոհրապի, 16—24 երեսէ բաղկացեալ քառածալ գրիւք։ 1893ի սկիզբն սկսաւ ամէն շաբաթ հրատարակուիլ՝ մերթ ընդ մերթ տալով նաեւ նշանաւոր անձնաւորութեանց պատկերները։ Մասիս՝ այս շրջանին մէջ կ'ուզէ "գլխաւորապէս գրական զարգացման„ հետամուտ ըլլալ։ Ցանկալի էր որ այնպիսի նիւթեր ալ տրուէին, որ ընթերցողը միայն անցողակի հաճութենէ աւելի բան մը շահէր։

*Էջ 128, տող 33* յաւել՝ Եղիա Տէմիրճիպաշեան. 1892, էջ 11։ — Ագամեան բանաստեղծ. 29։ — Բիւզանդ Քէչեան. 38։ — Յակոբ Գուրգէն. 52։ — Մեր վանքերը. 77, 109. 173։ — Արեւմտեան աշխարհին ընթացքը դարուս մէջ. 193, 208, 227։ — Ա. Արփիարեան. 226։ — Տր. Գաբրիէլ Սեւեան. 242։ — Թ. Թէրզեան. 260։ — Մեղուն Պարոնեանի խմբագրութեան օրով. 275։ — Ծանօթութիւններ Ֆիզիքա Պօղոսի կեանքին վրայ. 288։ — Քանի մը հայ բառերու վրայ. 1893, 21։ — Թատերգութիւնը մեր մէջ. 36։ — Օդեան Խոճասարեան. 55։ — Յովս. Եուսուֆեան. 104։

*Էջ 142, տող 2* տողէ. Արփի Արարատեանի վերջին թիւը *Հրատարակուած է ի 1 փետր. 1856։[1]

*Էջ 149, տող 20* յաւել՝ Պոլսոյ կամ Տաճկաստանի աշխարհաբառին մէջ Նի., Նիք, եւ Նին մասնիկներուն վրայ, **1862**, թ. 13։ — Մի մասնական անունին սխալ եւ ուղիղ գործածութիւնը, Անդ։

Գր. Մագիստրոսի Յաղագս խաչանշան գաւազանին զոր ընծայեաց Տն. Պետրոսի Հայոց կթղկսի. **1863**, թ. 21—2։ — Պատմութիւն Թագաւորաց Օսմանցւոց շարագրեալ ոտանաւորաւ (ի Հին ձեռագրէ). Անդ։

Ճանապարհորդութիւն ի Հայս **1864**, էջ 359, **1865**, թ. 2։

Խրիմու Հայոց պատմութիւն, **1865**, թ. 6, 7։

*Էջ 157, տող 14*, 1871 կարդա՛ 1874։
„ „ „ *17*, 1855 „ 1856։
„ „ *ծան. 1* յաւել՝ Ճանիկ Արամեան տպարանապետը փոքրիկ լրագրոյ 1860 թ. 1ի մէջ կը յայտարարէր թէ ինք մերժած է Արեւելքի 15դ թուոյն տպագրութիւնը՝ գրութեան խիստ կերպին պատճառաւ։

*Էջ 158, տող 9* յաւել՝ Մեղու 1861ին Սեպտ.ի սկիզբը Բարձրագոյն Դրան հրամանաւ

[1] Մեղու, 1862, թ. 30.

խափանուեցաւ,[1] բայց երկու ամիս ետքը վերստին սկսաւ շարունակուիլ։[2]

Էջ 158, տող 11, "Ես թէեւ յետոյ... եղաւ ապրիլ։" Այս տողերը գրած ժամանակ ասկէ աւելի տեղեկութիւն չունէինք Մեղու-ի այս շրջանին վրայ։ Այնուհետեւ մեր ձեռքն անցաւ քանի մը թիւ Մեղու-ի նոր շրջանէն, ասկէ եւ վերջերս Մասիս մէջ (1892, թ. 3972) այս մասին գրուածներէն ամբողջական տեղեկութիւններ ստացանք։

Յ. Գ. Սրվանձեան 1870ին Սեպտ. 12ին իւր Մեղու-ն վերստին սկսաւ հրատարակել ի տպարանի Տ. Կ. Ասլանեանի, միածալ դրիւք (2 թուղթ), իբր եռօրեայ թերթ, շաբաթն երկու անգամ լոյս տեսնելով։ Կ'երեւայ թէ քիչ մ'ետքը հրատարակութիւնն ընդհատած է. վասն զի մեր ձեռքն անցած 1872 Յունիս 3 (թ. 87) թիւն տակաւին "Ա. Տարին" կը ցուցընէ։ Այս Ա. Տարւոյ վերջը՝ 1872 Նոյ. 4ին Մեղու-ն "Երկրորդ շրջան" սկսաւ, որուն կը ստորագրէին "Խմբագիր-Տնօրէն Յ. Յ. Պարոնեան, Տէր լրագրոյ Յ. Գ. Սրվանձեան," ի տպարանի Սամուէլ Ղ. Պարտիզպանեան եւ ընկ.։ Մեղու-ն այսպէս մինչեւ 1874ի սկիզբը հրատարակուեցաւ Յ. Յ. Պարոնեանի խմբագրութեամբ։ Այս միջոցին թերթն արդէն դադրած պիտի ըլլայ, վասն զի

[1] Արշալոյս Արարատեան, 1861, թ. 657։
[2] Մասիս, 1861, թ. 508։

Յ. Գ. Սրվանձեան 1874 Ապր. 22ին վախճանած էր (43 տարեկան)[1] եւ Յ. Յ. Պարոնեան 1874ի սկիզբն իւր սեպհական Թատրոն լրագիրը սկսած էր հրատարակել:

Մեղու-ի 1872—4 տարիներն իւրաքանչիւր թերթին մէջ կը գրուէր վիճատիպ ծաղրապատկեր մը: Մեղու-ն Յ. Յ. Պարոնեանի խմբագրութեամբ իւր պայծառութեան զենիթն հասաւ. խմբագիրն ազգային վարչութեան, եկեղեցականաց՝ նաեւ յանուանէ ոմանց, Հայ հասարակութեան եւ լրագիրներու ընթացքը, եւ այլն խայթեց ու խծբծեց այնպիսի գեղեցիկ ճաշակաւ, որ Մեղու-ն իւր խայթոցովն հանդերձ ընթերցանութեան իբրեւ քաղցր նիւթ ամենուն ձեռքը կը շրջէր:

Էջ 159, տող 6 յա-ել՝ Մեղու-ի հին տարիներու նիւթերէն կը յիշատակենք՝ Վանեցւոց հանելուկ, **1856**, Թ. 2: — Շինական Հայոց կեանք ի Հյստ. **1865** Թ. 259—270:

Էջ 165, ծան. 1 ընկերսիրական հարդ-՝ ընկերասիրական:

Էջ 184, տ. 6 փնօգուտ կարդա՝ անօգուտ:

Էջ 190, տող 2 1866 Մայիսին կարդա՝ 1865 Հոկտ.ին:

Էջ 190, տող 15 ուղղող կարդա՝ ուղող:

---

[1] Մասիս, 1874, Թ. 1532 (ուղղէ 1523):

# ՔԱՆԻ ՄԸ ՉՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ԼՐԱԳԻՐՆԵՐ

Ի վերջոյ կը յիշատակենք, բաց ի գործոյս մէջ յիշուածներէն, քանի մը թերթերու անուններ, որոնք թէեւ հրատարակուելի էին, բայց չհրատարակուեցան եւ կամ իբրեւ ձեռագիր հրատարակուեցան։

1. Սուրհանդակ։ — Վիկտոր Լանկլուա,[1] անշուշտ Փոքրիկ լրագրոյ խմբագիր Ա. Մուրատեանէ լսելով՝ կ՚աւանդէ թէ 1848ին ի Նիկոմիդիա Սուրհանդակ անուամբ ձեռագիր թերթ մը հրատարակուած է քիչ ժամանակ։

2. Հայաստան։ — Նոյն անձը նոյն տեղ կասկածելով կ՚աւանդէ՝ թէ 1848ին ի Տրապիզոն ձեռագիր թերթ մը հրատարակուած ըլլայ, Հայաստան անուամբ։

3. Բանբեր Պարտիզակեան։ — Լանկլուա նոյն տեղ կը գրէ, թէ 1848ին ի Պարտիզակ՝ ոմն Մկըրեան Բանբեր Պարտիզակեան անուամբ ձեռագիր թերթ մը հրատարակած է։

---

[1] »Revue de l'Orient«, 1863, April-Mai.

4. **Թանգարան հայկազեան**, "Ամսագիր ազգային, պատմական, բանասիրական եւ բարոյական գիտելեաց,, որ պիտի խօսէր ազգային հնութեանց եւ մատենագրութեանց վրայ, պիտի հրատարակուէր ի Տրապիզոն Աբէլ Վ. Մխիթարեանցի ձեռօք 1857ի սկիզբը:[1] Հրատարակութեանս գաղափարը Աբէլ Վ.ի հետ բաւական շրջելէն ետեւ ի Կ. Պոլիս, Էջմիածին եւ աստի ի Դաւրէժ, վերջնոյն մէջ սկսաւ արմատ արձակել: 1860 Մարտ 22ին նոյն քաղաքը վիմատիպ յայտարարութիւն մը հրատարակեցաւ, որուն մէջ նոյն Աբէլ Վ.ն, որ այսատեն Ատրպատականի Եպիսկոպոս կարգեալ էր, կը յայտնէր թէ ի վաղուց հրատարակելի ամսաթերթին անունն այսուհետեւ կը կոչէ **Թանգարան Հայոց աշխարհին**, եւ թերթը պիտի նուիրուի գրեթէ ամբողջովին հայկական հնութեանց:[2] Սակայն որչափ մեր քննութիւնք մեզի կը ցուցնեն, այս թերթը չկրցաւ երբեք լոյս տեսնել:

5. **Ցոյց** կիսամսեայ հանդէս պիտի հրատարակուէր ի Կ. Պոլիս 1859ի կէսերը ի ձեռն Մկրտիչ Պէշիկթաշլեանի, Կարապետ Գարագաշեանի եւ Սրապիոն Հէքիմեանի: Սոյն հրատակուելի թերթն ալ իւր նմաններուն նիւթերը կը խոստանար տալ. բաժանորդագինը 160 ղրշ.

---

[1] **Յայտարարութիւնը տես Մասիս, 1857 թ. 258:**
[2] **Արշալոյս Արարատեան, 1860 թ. 627:**

էր։[1] Սակայն 200 բաժանորդ կանխաւ գտնելու յոյսն ի դերեւ ելլելով՝ չկրցաւ հրատարակուիլ։

6. Հրեշտակն Հայոց։ — 1859ին Գալֆայեան Ամբրոսիոս եւ Խորէն Վ.ք, 1858ի վերջը Մասեաց Աղաւնի թերթը դադրեցընելէն ետեւ, հրատարակեցին թէ նոյն տարւոյ Օգոստոսին Հրեշտակն Հայոց անուամբ պատկերազարդ երկշաբաթաթերթ մը պիտի հրատարակեն ի Փարիզ, որուն բաժանորդագին դրուած էր 30 Ֆր.։[2] Այս թերթը լոյս չկրցաւ տեսնել, եւ կանխաւ վճարուած բաժանորդագինք Փարիզի Հայկազեան վարժարանին պարտատեարց յանձնուեցան։[3] Իսկ Մասեաց Աղաւնին փոխադրուեցաւ ի Թէոդոսիա, ուր շարունակուեցաւ 1860էն սկսեալ։

7. Ուսումնասէր։ — 1859ին Հոկտ.ին պիտի հրատարակուէր ի Զմիւռնիա Մեսրոպեան Վարժարանի յառաջադէմ աշակերտաց ձեռօք՝ Ուսումնասէր անուամբ ամսաթերթ մը, 1 մէճիտ բաժանորդագրութեամբ։ Այս ալ, որ 150 բաժանորդ գտնելու ըլլար պիտի սկսէր հրատարակուիլ, ստիպեցաւ թերթին Ցայտարարութիւնը տպելով շատանալ։[4]

---

[1] Մասիս, 1859, թ. 373։
[2] Արշալոյս Արարատեան, 1859, թ. 602։
[3] Անդ, 1859, թ. 606։
[4] Անդ, 1859, թ. 606։

Չենք կրնար Վ. Լանկլուայի հետ լրագրաց կարգին մէջ առնուլ Ոսկան Տէր-Գէորգեան Յովհաննիսեան Երեւանցւոյ 1855—8ին ի Մոսկուա հրատարակած Նոր Քնար Հայաստանի անուամբ հրատարակած ազգային ժողովրդական երգերու ժողովածոյքն, որ պարբերաբար թերթ թերթ կը հրատարակուէր։



## ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑՈՒՑԱԿ

# ՑԱՆԿ ԸՍՏ ՔԱՂԱՔԱՑ

# ԱՅԲՈՒԲԵՆԱԿԱՆ ՑՈՒՑԱԿ

(Խաչանիշք [†] չեն հրատարակուած:)

---

